

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ


2

ՓԵՏՐՎԱՐ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՄՈՍԿՎԱՅԻ ՀԱՍՏՈՑԱՇԻՆԱՐԱՐՆԵՐԻ ՀԵՏ

*ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովն այցելեց Մոսկվայի Սերգո Օրջոնիկիձեի անվան հաստոցաշինական գործարանը։ Ընկեր Յու. Վ. Անդրոպովը եղավ ձեռնարկության արտադրամասերում, ծանոթացավ գործարանի արտադրանքին։ Բրիգադներում և տեղամասերում Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը զրուցեց բանվորների ու վարպետների հետ, հետաքրքրվեց նրանց աշխատանքի, ուսման ու հանգստի կազմակերպմամբ։*

*Մեխանիկական հավաքման արտադրամասում Յու. Վ. Անդրոպովը հետաքրքրվեց, թե ինչպես է կադրերի գործը։*

*Գործարանի դիրեկտոր Ն. Ս. Չիկիրևը պատասխանեց, որ այդ բանում լուրջ պրոբլեմ կա։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Ինչպիսի՞։*

**Ն. Ս. Չիկիրև:** *Պակասում են փականագործները, էլեկտրամոնտաժողները, երիտասարդները քիչ են գալիս։ Դա ոչ միայն Մոսկվայի, այլև մյուս քաղաքների պրոբլեմն է։ Գործարանում դժվարություններ կան հաստոցայինների հավաքագրման հարցում։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Իսկ ինչպիսի՞ն է հաստոցայինների վաստակը։*

**Ն. Ս. Չիկիրև:** *Վաստակը կարգին է։*

*Յու. Վ. Անդրոպովը դիմում է ռանդող բանվոր Ս. Ա. Կորոլյովին՝ վաղո՞ւց եք աշխատում։*

**Ս. Ա. Կորոլյով:** *Յոթ տարի։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Եվ ամբողջ ժամանակ հաստոցի մո՞տ։*

**Ս. Ա. Կորոլյով:** *Ամբողջ ժամանակ։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Իսկ ձեր վաստակն ինչպիսի՞ն է։*

**Ս. Ա. Կորոլյով:** *Նորմալ։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Այնուամենայնիվ։*

**Ս. Ա. Կորոլյով:** *250 ռուբլու հասնում է։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Իսկ փականագործն ավելի շա՞տ է ստանում։*

**Ս. Ա. Կորոլյով:** *Ո՛չ, մոտավորապես նույնքան։*

*Հաջորդ արտադրամասում խոսք բացվեց գործարանի վերակառուցման մասին, ձեռնարկության մի քանի արտադրանքների մասին։ Յու. Վ. Անդրոպովը հետաքրքրվեց համաշխարհային շուկայում հաստոցների մրցունակությամբ, թե որ երկրներին են դրանք վաճառվում։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Ձեր գործարանը ինչպիսի՞ տեխնիկական օգնություն է ցույց տալիս սոցիալիստական երկրների ձեռնարկություններին։*

**Ն. Ս. Չիկիրև:** *Մենք մեր գործարանի արտադրանքը մատակարարում ենք ՏՓԽ-ի անդամ երկրներին։ Փորձի ուսումնասիրման համար մեզ մոտ են գալիս սոցիալիստական երկրների մասնագետներ, բանվորներ։ Իրականացվում են ուղղակի կապեր։ Այսպես, մեզ մոտ են գալիս չեխոսլովակյան բարեկամները։ Մենք էլ լինում ենք նրանց մոտ։*

*Յու. Վ. Անդրոպովը դիմում է ավտոմատ հաստոցների կարգաբերող Բ. Ա. Շունինին՝ դուք վաղո՞ւց եք այս գործարանում աշխատում։*

**Բ. Ա. Շունին:** *Քսան տարի։*

**Յու. Վ. Անդրոպով:** *Իսկ այս գծի վրա՞։*

**Բ. Ա. Շունին:** *Վեց տարի։*

Յու. Վ. Անդրոպով: Իսկ շա՞տ ժամանակ է հարկավոր գիծը յուրացնելու համար։

Բ. Ա. Շունին: Միշտ հարկ է լինում յուրացնել նորը։

Յու. Վ. Անդրոպով: Դա դժվա՞ր է։

Բ. Ա. Շունին: Դժվար է, բայց պետք է յուրացնել։

Խոսակցության մեջ է մտնում արտադրության վետերան, կարգաբերող Մ. Ֆ. Սկրիպկինը.— Յուրի Վլադիմիրովիչ, երբ յուրացնում ես, աշխատելը դժվար չէ։

Յու. Վ. Անդրոպով: Բայց չէ՞ որ դրանից հետո էլ ինչ-որ նոր բան կտան։

Մ. Ֆ. Սկրիպկին: Դա էլ կյուրացնենք, այդպիսին է մեր պաշտոնը։

Յու. Վ. Անդրոպով: Որպես գաղտնիք՝ մի հարց։ Որքա՞ն եք դուք ստանում․

Մ. Ֆ. Սկրիպկին: Բավականաչափ։

Յու. Վ. Անդրոպով: Իսկ ձեր ընտանի՞քն ինչպիսին է։

Մ. Ֆ. Սկրիպկին: Մենք երկուսով ենք։

Անցնելով այն հաստոցի կողքով, որի մոտ կանգնած է մի երիտասարդ բանվոր, Ն. Ս. Չիկիրևը պարզաբանում է. «Իսկ սա իմ որդին է։ Ավարտել է ինստիտուտը և որոշել է աշխատել հաստոցի մոտ»։

Յու. Վ. Անդրոպով: Իսկ ո՞ր ինստիտուտն եք ավարտել։

Վ. Ն. Չիկիրև: Հաստոցագործիքաշինական։ Մինչև ինստիտուտն աշխատում էի այս գործարանում։ Դպրոցից անմիջապես հետո եկա այստեղ։ Մենք ընտանեկան գերդաստան ենք, չէ՞ որ մայրս էլ այս գործարանում է աշխատում։

Յու. Վ. Անդրոպով: Ինչո՞ւ եք վճռել աշխատել հաստոցի մոտ։

Վ. Ն. Չիկիրև: Հաստոցների ստեղծման պրոցեսը ավելի լավ իմանալու համար հարկավոր է անմիջականորեն աշխատել դրանց վրա։

Յու. Վ. Անդրոպովին է մոտենում գործարանի վետերան, շաղափող բանվորուհի Վ. Պ. Չայկան։

Վ. Պ. Չայկա: Գործարանում աշխատում եմ քառասուներկուերորդ տարին։ Թոշակի անցա, լավ ճանապարհեցին։ Տանը նույնպես ինձ մոտ ամեն ինչ լավ էր։ Բայց տանը մնամ, ի՞նչ պետք է անեմ։ Ավելի լավ է աշխատանքի մեջ, կոլեկտիվում։ Այստեղ ինձ գնահատում են։ Շատ ջերմ խոսքեր են ասում։ Ես գործարանում եմ 1942 թվականից, տասնհինգամյա աղջիկ էի, որ եկա։ Հիշում եմ, այն ժամանակ ինձ լավ աշխատանքի համար մի փոքրիկ խոճկորով պարգևատրեցին։ Գործարանում կաշխատեմ՝ քանի ուժերս ներում են։

***

Ապա աշխատանքային ընդմիջման ժամանակ գործարանի նիստերի դահլիճում ընկեր Յու. Վ. Անդրոպովը հանդիպում ունեցավ արտադրամասերի և գործարանային վարչության ներկայացուցիչների՝ բանվորների, բրիգադավարների, տեխնիկների, ինժեներների, ձեռնարկության կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ղեկավարների հետ։

Հանդիպումը բացեց գործարանի կուսկոմիտեի քարտուղար Վ. Ի. Կուբրինը։ Գործարանի պատմության, սոցիալիստական մրցության ընթացքի մասին, ձեռնարկության կոլեկտիվի կողմից ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումների կենսագործման մասին, տեխնիկատնտեսական ցուցանիշների և հաստոցաշինության հեռանկարների մասին պատմեց գործարանի դիրեկտոր Ն. Ս. Չիկիրևը։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումից հետո, հայտարարեց նա, գործարանի կոլեկտիվն ավելի խորամուխ եղավ կարգապահության պրոբլեմներում։ Մեր գործարանը, Մոսկվայի մյուս ձեռնարկությունների հետ մեկտեղ, հանդես եկավ աշխատանքի կազմակերպումը բարելավելու, աշխատանքային և արտադրական կարգապահությունը բարձրացնելու նախաձեռնությամբ։ Որոշում է ընդունված աշխատաժամանակի կորուստները կրճատելու հաշվին 1983 թվականին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել առնվազն մեկուկես-երկու տոկոսով։ Կարծում եմ՝ այն աշխատանքը, որ մենք այժմ կատարում ենք աշխատանքային կարգապահության ամրապնդման նպատակով,



իսկապես շատ կարևոր է։ Մենք տեսնում ենք մեր թերությունները, գիտենք, թե ինչպես պետք է դրանց դեմ պայքարել։

Մենք ի վիճակի ենք լուծելու այն խնդիրները, որոնք առաջադրվեցին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում։ Սահմանված լարված պլանները հաջողությամբ կատարելու համար ձեռնարկության կոլեկտիվն այս տարի լուրջ սոցիալիստական պարտավորություններ է ստանձնել։ Դրանք քննարկվել են կոլեկտիվներում, ընդհանուր ժողովում։ Մենք պարտավորվել ենք ընթացիկ տարվա պլանը կատարել մինչև դեկտեմբերի 27-ը։

Ապա ներկաներին դիմեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը։

Թանկագին ընկերնե՛ր։ Խորին շնորհակալություն ձեզ ջերմ հանդիպման համար։ Ես ձեր այդ վերաբերմունքը ընկալում եմ որպես ապագայի կանխավճար և կջանամ աշխատել այնպես, որպեսզի արդարացնեմ ձեր վստահությունը։ Բնական է, որ դա ես վերագրում եմ ոչ թե անձամբ ինձ, այլ Կենտրոնական կոմիտեին և քաղբյուրոյին։ Շնորհակալություն ձեզ դրա համար։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից ձեզ երախտագիտություն հայտնել այն բանի համար, որ դուք Մոսկվայի մյուս կոլեկտիվների հետ միասին պաշտպանեցիք Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան պլենումի որոշումները։ Ուրախալի է, որ պլենումի որոշումները ջերմ արձագանք են գտնում ամբողջ երկրում, բոլոր աշխատավորական կոլեկտիվներում։ Ուրեմն այն, ինչի մասին խոսվեց պլենումում, իսկապես շոշափել է մարդկանց շահերը։ Մենք զգում ենք, թե սովետական բանվոր դասակարգն ինչպիսի միահամուռ պաշտպանություն է ցույց տալիս կուսակցության որոշումներին, որոնք նպատակամղված են երկրի էկոնոմիկայի հետագա զարգացմանը։

Ձեր հրաշալի կոլեկտիվը ապացուցեց, որ նա քաղաքի կուսակցական կազմակերպության լավ հենարանն է, և որ կուսակցության քաղաքային կոմիտեն և կուսակցության Կենտրոնական կոմիտեն կարող են նրա վրա հույս դնել։

Ընկերնե՛ր։ Այստեղ արդեն խոսեցին ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի մեծ նշանակության մասին։ Դա որոշվում է ո՛չ միայն նրանով, որ պլենումում նախանշվեցին մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ տարվա ուղիները, առաջ քաշվեցին մեր շինարարության, մեր արտադրության մասշտաբների հետ կապված մեծ խնդիրներ։

Իսկ այդ արտադրությունը մեզանում հիրավի վիթխարի է։ Աշխարհում ոչ մի երկիր, օրինակ, այդքան պողպատ, նավթ և այլ արտադրանք չի տալիս։ Պլենումի որոշումները կարևոր են նաև այն պատճառով, որ դրանք հաշվի են առնում մի շարք դժվարություններ, որոնց մենք հանդիպում ենք և դեռ էլի կարող ենք հանդիպել այս տարվա պլանն իրականացնելիս։

Տեղ-տեղ, օրինակ, ձայներ են լսվում, որ ահա, իբր, մեզ պակաս են տալիս մետաղը, չի բավականացնում էլեկտրաէներգիան։ Սա հարկավոր է ճշտել։ Բայց մենք ելնում ենք նաև այն բանից, որ կոմունիստները, ձեռնարկությունների ղեկավարները, բոլոր աշխատավորական կոլեկտիվները, մասնավորապես նաև ձեր կոլեկտիվը, կգտնեն ներքին ռեզերվներ ապահովելու համար ռեսուրսների բոլոր տեսակների ըստ ամենայնի խնայողություն։

Ինչպես հիշում եք, պլենումում սուր կերպով դրվեց այն հարցը, որ մեր տնտեսական գործունեության մի շարք կարևորագույն բնագավառներ ետ են մնում հնգամյակով նախատեսված ցուցանիշներից։ Ասվեց նաև այն մասին, որ աշխատանքի արտադրողականությունն աճում է այնպիսի տեմպերով, որոնք այժմ մեզ բավարարել չեն կարող։ Ըստ երևույթին, դուք ինքներդ էլ զգում եք, որ էկոնոմիկայի ասպարեզում մեր գործերը այնպես լավ չեն գնում, ինչպես կցանկանայինք։

Խոսքն ահա թե ինչի մասին է։ Այն, ինչ մենք արտադրում ենք, հաճախ մեզ վրա շատ թանկ է նստում։ Կան նյութական, ֆինանսական միջոցների զգալի գերածախսումներ, չափից ավելի են աշխատանքային ծախսումները։ Եվ դրա հետևանքը լինում է այն, որ անհամամասնություն է գոյանում արտադրության աճի և բնակչության դրամական եկամուտների աճի միջև։

Ահա անհամամասնության աղբյուրներից մեկը: Ձեզ բոլորիդ ծանոթ է «պլանը ճշգրտել» արտահայտությունը: Ճիշտն ասած, ինձ չի վիճակվել լսել, որ այդպիսի ճշգրտումը կատարվի պլանային առաջադրանքն ավելացնելու իմաստով: Եթե ասում են հարկավոր է «ճշգրտել», ապա նշանակում է, խոսքը վերաբերում է նվազեցմանը: (Ծիծաղ դահլիճում): Դժվար չէ պատկերացնել, թե ինչի է դա հանգեցնում: Արտադրանքի թողարկումը պակասում է, իսկ աշխատավարձը մնում է նախկինը: Ավելին, իջեցված պլանի կատարման համար հաճախ նույնիսկ պարգև-հավելավճար են տալիս: Եթե դա փոխադրենք համապետական մասշտաբի, ստացվում է խզում խանութներում եղած ապրանքային զանգվածի և բնակչության մոտ եղած փողի միջև:

Աշխարհում, ինչպես ասում են, հրաշքներ չեն լինում: Դուք ինքներդ հասկանում եք, որ պետությունը կարող է տալ ճիշտ այնքան ապրանք, որքան արտադրվել է: Աշխատավարձի աճը, եթե նա ապահովված չէ հարկավոր, լավ ապրանքներով, եթե, վերջապես, կաղում է սպասարկումների ոլորտը, նյութական բարեկեցության ռեալ բարձրացում տալ չի կարող:

Հարց է ծագում. իսկ ո՞րն է ելքը այդպիսի դրությունից:

Կարելի է, իհարկե, ընթանալ գների բարձրացման ուղիով: Բայց մեզ համար այդպիսի ուղին, որպես գլխավոր ուղի, պիտանի չէ: Թեև, պետք է ասել, մեզանում գների ասպարեզում կան որոշակի տարակերպություններ, անհամապատասխանություններ, և մենք ստիպված ենք դրանք վերացնել:

Իսկ ի՞նչ է մնում: Մեզ համար գլխավոր ուղին արտադրության արդյունավետության բարձրացումն է: Այն ամենը, ինչ մենք պատրաստում և արտադրում ենք, հարկավոր է պատրաստել և արտադրել ըստ հնարավորին նվազագույն ծախսումներով, բարձր որակով, արագ, լավ: Հարկավոր է ավելի շատ ապրանքներ արտադրել, որպեսզի վաճառասեղանները դատարկ չլինեն: Ես պատկերավոր եմ ասում: Դուք կարող եք ասել, որ ձեր հաստոցները խանութ չեն գնում: Բայց, վերջիվերջո, ձեր արտադրությունն էլ նպաստում է այն ապրանքների թողարկմանը, որոնք գնում են առևտրի ցանց:

Պլենումում ասվեց, որ ընթացիկ տարին հնգամյակի առանցքային տարին է: Պետք է կատարել այն ամենը, ինչ մենք, ուղղակի ասած, չենք արել առաջին երկու տարում, և աշխատել լրացնել բաց թողածը, պայմաններ ստեղծել հնգամյակի վերջին երկու տարում նորմալ աշխատանքի համար:

Կարևոր է բարելավել աշխատանքի որակը, արագացնել դրա տեմպը, էժանացնել արտադրանքի արտադրությունը: Ահա թե ինչ անհետաձգելի խնդիր է ծառացել մեր առաջ:

Որտե՞ղ է, Լենինի խոսքերով ասած, հենց այն օղակը, որից պետք է բռնել ամբողջ շղթան դուրս քաշելու համար: Իսկ շղթան մեծ է, ծանր: Ու թեև չի կարելի ամեն ինչ հանգեցնել կարգապահության, այդուհանդերձ, ընկերնե՛ր, պետք է սկսել հենց դրանից:

Կենտվիճվարչությունը տեղեկանք է տվել, որ մենք միլիոնավոր մարդ-ժամեր ենք կորցնում արտադրությունից բացակայելու, ծխելադադարների, գործալքումների պատճառով, ոմանք էլ անտարբեր են գործի նկատմամբ:

Մենք այժմ պետք է ամեն ինչ անենք, որ մեզ մոտ ամեն մեկը, կրկնում եմ, ամեն մեկը կատարի իր նորման, իր արտադրական առաջադրանքը: Այս պահանջը այնքան էլ մեծ պահանջ չէ:

Ահա մենք ունենք առաջավորներ: Փառք ու պատիվ նրանց: Դրանք առաջամարտիկներն են, փարոսները, դեպի որոնք կողմնորոշվում ենք մենք: Բայց միմիայն առաջավորների ջանքերով մենք չենք կարող լուծել խնդիրը: Հարկավոր է, որ յուրաքանչյուր ոք ամեն օր կատարի սահմանված առաջադրանքը: Այդ դեպքում մենք կկարողանանք լուծել այն խնդիրը, որի մասին ես ասացի: Լուծել բոլորով միասին, ամբողջ աշխատավոր ժողովրդով:

Ուստի ձեզ եմ ուղղում մի խնդրանք՝ տեսնել, թե ինչ կարելի է անել, որ ամեն ոք կատարի առաջադրանքը: Եթե հարկ կա օգնել ոմանց, ապա օգնեցեք:

Ինչո՞ւ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում այդքան սրությամբ դրվեց աշխատանքային կարգապահության հարցը:

Նախ և առաջ դա կյանքի պահանջն է: Քանի որ առանց աշխատանքային,



պլանային, պետական պատշաճ կարգապահության մենք չենք կարող արագ
առաջ ընթանալ: Կարգ հաստատելը, հիրավի, որևէ կապիտալ ներդրում չի
պահանջում, մինչդեռ հսկայական արդյունք է տալիս: Գործալիքը, խոտանա-
բարը, անբանը ոչ այնքան իրեն է վնասում, որքան կոլեկտիվին, ողջ հասա-
րակությանը:

Ուզում եմ հատկապես շեշտել, որ երբ մենք խոսում ենք կարգապահու-
թյան մասին, նկատի ունենք ամբողջ աշխատանքային արտադրական շղթան:
Եվ, իհարկե, մեր բոլոր ջանքերը ապարդյուն կլինեն, եթե կարգապահության
համար ծավալված պայքարը մակերեսային լինի, մանրացվի, ինչ-որ մեկը
ուշացել է հինգ րոպե, մյուսը հաճախացրել է ծխելադադարները: Իհարկե, դրա
համար չի կարելի գովել: Անհրաժեշտ է կարգ հաստատել ամենուրեք, որտեղ
կորչում են աշխատանքային րոպեները:

Խոսքը արտադրական կարգապահության բոլոր, այդ թվում և տեխնոլո-
գիական, մատակարարման և մյուս կողմերին լրջորեն վերաբերվելու մասին
է: Հարկավոր է, որ կարգապահության բարձրացման արդյունավետությունը
իրեն զգալ տա մեր արտադրության բոլոր օղակներում: Մեզ հարկավոր է գի-
տակցական, բանվորական կարգապահություն, այնպիսին, որն առաջ մղեր
արտադրությունը: Մեզ հարկավոր է կարգապահության համար մղվող պայ-
քարը հագեցնել մեծ բովանդակությամբ, այն շաղկապել անմիջականորեն ար-
տադրական առաջադրանքների կատարման հետ, այդ ժամանակ չի լինի, այս-
պես ասած, դատարկ հնչյուն: Այդ դեպքում կկատարվի այն, ինչ նախատեսել
է կուսակցության Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան պլենումը:

Այնուհետև Յու. Վ. Անդրոպովն անդրադարձավ միջազգային իրադրության
մի քանի հրատապ հարցերի: Դուք գիտեք, ասաց նա, որ կուսակցության XXVI
համագումարում Լ. Ի. Բրեժնևը զեկուցման մեջ շեշտեց, որ իրադրությունը
շիկանում է, որ պատերազմի վտանգը մեծանում է: Մեր կուսակցությունը,
սովետական պետությունը ամեն ինչ անում են այդ սպառնալիքը վանելու,
խաղաղությունը պաշտպանելու համար:

Դժվար չէ հասկանալ՝ որքան շատ են մեր հաջողությունները, այնքան
ամուր է մեր էկոնոմիկան, այնքան լավ են գործերը մեր ժողովրդական տըն-
տեսության մեջ, այնքան ամուր կլինեն մեր միջազգային դիրքերը, այնքան
կայուն կլինի երկրագնդի խաղաղությունը:

Ցանկանում եմ ձեզ մաղթել աշխատանքային հաջողություններ ի բարօ-
րություն մեր հայրենիքի և վստահություն հայտնել, որ դուք պատվով կկա-
տարեք ձեր պարտքը: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Եթե դուք որևէ հարց ունեք ինձ տալու, խնդրեմ, տվեք: Եվ մեկ էլ ձե-
զանից կցանկանայի լսել, թե ինչն է, որ այնպես չի արվում կամ այնքան էլ
լավ չի արվում կարգապահություն հաստատելու գործում, թե դեռ էլի ինչ
պետք է անել արտադրությունն առաջ մղելու համար:

Խոսք է վերցնում հավաքման արտադրամասի պետ Կ. Ի. Մեշչանկինը:
Նա պատմում է արտադրամասի աշխատանքի, թողարկվող արտադրանքի մա-
սին: Մեզ մեծ պլան են տվել: Բայց մենք կաշխատենք այն կատարել: Խար-
կովի «Մուրճ ու մանգաղ» գործարանին գծեր ենք մատակարարելու «Դոն—
1500» կոմբայնի շարժիչի համար:

Յու. Վ. Անդրոպով: Դա, ի դեպ ասած, շատ պետքական մեքենա է, որին
սպասում է ամբողջ երկիրը:

Կ. Ի. Մեշչանկին: Բոլոր ուժերը կգործադրենք մեր խնդիրը կատարելու
համար:

Մենք կուսժողով անցկացրինք նոյեմբերյան պլենումի առիթով: Մեր բան-
վորական կոլեկտիվը յուրովի ընդունեց նրա որոշումները:

Յու. Վ. Անդրոպով: Այսինքն՝ ինչպե՞ս յուրովի:

Կ. Ի. Մեշչանկին: Նախ և առաջ յուրաքանչյուրը նորովի զգաց իր պա-
տասխանատվությունը գործի համար, կարգապահության համար: Այնպես
որ այդ առումով պլենումն արտահայտեց նաև մեր զգացումները, տրամա-
դրությունները: Մենք սպասում էինք այդ որոշումներին: Մենք այսուհետև էլ
կբարձրացնենք պատասխանատվության, գործարարության զգացումը, հաս-

տատակամորեն կձերբազատվենք թերություններից։ Արտադրամասի կուսակցական ժողովը հանձնարարեց մշակել կոնկրետ առաջարկություններ մեր ողջ կոլեկտիվի աշխատանքի բարելավման վերաբերյալ։ Ներկայումս այդ առաջարկությունները մշակված են և ներդրվում են արտադրամասի ամենօրյա կյանքում։

Ելույթ է ունենում հավաքող փականագործ, սոցիալիստական աշխատանքի հերոս Վ. Գ. Կոմարովը: Աշխատում եմ եզակի տեխնիկայի հավաքման արտադրամասում։ Ավտոմատ գծեր, բարդագույն հաստոցներ, ծրագրային կառավարման հաստոցներ են պատրաստվում մեր գործարանի բանվորների ձեռքերով։ Այսօր մեզ մոտ տեղի ունեցած խոսակցությունը պետքական, լավ խոսակցություն էր։ Որպես հետևություն կասեմ. մենք հիմա պարտավոր ենք աշխատել այնպես, որ ոչ ոք մեր փոխարեն չամաչի, որ այն պլանները, որ նախատեսել են կուսակցության XXVI համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և նոյեմբերյան պլենումները, ոչ թե պարզապես կատարենք, այլ կատարենք սրտանց, գերակատարենք։ Կհասնենք, ինչպես Դուք, Յուրի Վլադիմիրովիչ, ասացիք, միայն բարձրորակ արտադրանքի թողարկման։ Ես արտադրամասի կուսակցական կազմակերպության քարտուղարն եմ։ Կոմունիստների անունից կասեմ. կարգապահությունը, ինչպես Դուք իրավացիորեն նշեցիք, միայն ուշացման րոպեների հաշվումը չէ։

Յու. Վ. Անդրոպով: Այո՛, բանը չպետք է հանգեցնել միայն դրան։

Վ. Գ. Կոմարով: Մենք մեր ժողովում հաստատ որոշում ընդունեցինք՝ արտադրամասում անհանդուրժողության մթնոլորտ ստեղծել ընդհանրապես բոլոր խախտողների նկատմամբ։ Եվ, ընդսմին, գլխավոր խնդիրը մնում է՝ ջանքերը կենտրոնացնել այն առաջարկությունների իրականացման համար, որոնց նպատակն է մեծացնել աշխատանքի արտադրողականությունը, կրճատել աշխատաժամանակի կորուստները, արտադրական կորուստները։ Հարկավոր է նաև ամեն ինչ անել կոլեկտիվի համար։ Այնպիսի պայմաններ ստեղծել, որ երբ աշխատանքի գաս, աշխատանքը քեզ ուրախացնի, գոհացնի։ Ուրախացնի այն, ինչ արել ես այսօր։ Ահա մի հասարակ օրինակ. ինձ մոտ աշխատում էր մի երիտասարդ բանվոր՝ Միխայիլ Ստեպանենկովը։ Մենք միասին մի հաստոց էինք պատրաստում։ Եվ ինձ համար հետաքրքրական էր տեսնել, թե նա ինչ աշխույժ հետաքրքրությամբ էր նայում հավաքված ու բանող հաստոցին։ Ես նույնիսկ զարմացել էի։ Իսկ տղան մոտեցավ հաստոցին ու ասաց. «Տեսե՞ք, աշխատում է»։ Ինձ համար շատ հաճելի է նաև, որ ինձ հետ արտադրամասում աշխատում են մեր գործի այնպիսի հմուտ գիտակներ, ինչպիսիք են՝ Ֆյոդոր Կուզմիչ Բուխարևը, Ալեքսեյ Ֆյոդորովիչ Շումիլկինը։ Լավ է, որ մեզանում հենց այդպիսի մարդիկ են դաստիարակում երիտասարդ բանվորներին։ Ինչպես մենք դաստիարակենք մեր հերթափոխին, այնպես էլ նրանք կաշխատեն։ Ինչ որ պատվաստենք նրանց, այն էլ նրանք հետո կվերադարձնեն հարազատ գործարանին։

Խոսք է վերցնում հարդարման աշխատանքների արտադրամասի պետ Տ. Ա. Կոմարովան: Մեր արտադրամասում աշխատողների կեսից ավելին կադրային բանվորներ են, ասաց նա, իսկ մնացածները՝ երիտասարդներ։ Ուստի երիտասարդ բանվորներին դաստիարակելու, պրոֆեսիոնալ հմտություններ սովորեցնելու հարցը մեզ մոտ շատ սուր է դրված։ Այդ հարցին մենք մեծ ուշադրություն ենք դարձնում։ Օրինակ, բրիգադներն այնպես են կազմված, որ դրանցից յուրաքանչյուրում կան երիտասարդ բանվորներ և կան վարպետ դաստիարակներ։ Բրիգադները գլխավորում են կոմունիստները։ Արտադրամասում հիմնականում կանայք են աշխատում։ Տղամարդիկ շատ քիչ են։

Յու. Վ. Անդրոպով: Իսկ ինչ է, դուք նրանց չե՞ք թողնում արտադրամաս։

Տ. Ա. Կոմարովա: Գիտեք ինչ, տղամարդիկ այնքան էլ չեն ուզում գալ մեզ մոտ աշխատելու։

Յու. Վ. Անդրոպով: Ինչո՞ւ։

Տ. Ա. Կոմարովա: Գալիս են և գնում։ Նրանց թվում է, թե մեզ մոտ շատ ծանր է, քանի որ արտադրությունը վնասակար է, և նրանք իրենց խնայում են։ Եվ ահա, կանանց հետ, իհարկե, երբեմն աշխատելը բարդ է։ Բայց կան



նաև մեծ պլյուսներ։ Ահա, օրինակի համար, մեզ մոտ հազվադեպ բացառությամբ չկան ուշացումներ, գործալքումներ։ Մեզ մոտ ուրիշ թերացում կա։ Դեռ մեծ են ներհերթափոխային կորուստները։ Եվ ահա մենք այժմ դրանց դեմ շատ լրջորեն ենք պայքարում։

Յու. Վ. Անդրոպով: Իսկ ինչի՞ց են դրանք առաջանում։

Տ. Ա. Կոմարովա: Տարբեր բաներից։ Պատահում է, որ ստացվում են ոչ այնքան լավորակ լաքեր ու ներկեր։ Իսկ դա շատ է դժվարացնում աշխատանքը։ Մենք երբեմն ստիպված ենք գործը նորից անել սոսկ այն պատճառով, որ օգտագործում ենք անորակ նյութեր։ Պատահում է, որ ժամանակին չենք ստանում դետալը, այնքան էլ լավորակ չէ ձուլվածքը։ Դա նույնպես մեզ ստիպում է ավելորդ աշխատանք կատարել։ Կարծում եմ, որ մենք այս տարի այդ չարիքից կազատվենք, մանավանդ որ լաքերի ու ներկերի արդյունաբերությունը իբրև թե բարելավելու է իր արտադրանքի որակը, համենայն դեպս, մեզ այդպես են հայտարարում։ Մենք ունենք նաև մի այսպիսի պրոբլեմ. փոքր մեքենայացումը։ Մեզ մոտ կան հղկող մեքենաներ, բայց դրանք կշռում են երկու կիլոգրամ և աշխատելիս այնպես են թրթռում, որ մարդն ամբողջովին ցնցվում է։

Յու. Վ. Անդրոպով: Իսկ ո՞վ է այդ մեքենաները պատրաստում։

Ն. Ս. Զիկիրև: Շինարարական և ճանապարհային մեքենաների մինիստրությունը։

Տ. Ա. Կոմարովա: Այն ամենը, ինչ ես ասացի, մեզ, իհարկե, շատ է ետ պահում և ազդում աշխատանքի արտադրողականության վրա։ Բայց, այնուամենայնիվ, մեր սոցիալիստական պարտավորությունները մենք 1983 թվականին կկատարենք։

Քանի որ մեր արտադրամասը կանանց արտադրամաս է, ուզում եմ մի երկու խոսք ասել սոցիալական հարցերի մասին։ Շատ լավ է, որ բոլոր ցանկացողները հնարավորություն ունեն իրենց երեխաներին տեղավորելու մանկամսուրներում։ Մենք ունենք լավ ճաշարան։ Մենք հնարավորություն ունենք գործարանում գնելու մթերքներ, մի բան, որը նույնպես պակաս կարևոր չէ կնոջ համար։

Յու. Վ. Անդրոպով: Ի միջի այլոց, տղամարդկանց համար նույնպես (ծիծաղ դահլիճում):

Տ. Ա. Կոմարովա: Բայց մեզ համար հատկապես։ Մենք ստանում ենք ուղեգրեր։ Մենք՝ աշխատավորուհիներս, սանատորական ուղեգրերով ապահովված ենք։ Հանգստյան տների ուղեգրերը տրվում են արտոնյալ պայմաններով։ Երեխաներ ունեցող կանայք նույնպես օգտվում են արտոնություններից։

Խոսք է վերցնում արտադրամասի ավագ վարպետ, արտադրամասային կուսակցական կազմակերպության քարտուղար Վ. Ս. Եմելյանովը: Ես գործարանում աշխատում եմ արդեն 23 տարի, ասում է նա։ Գործարան եկա որպես գործիքագործ-փականագործ և ավելի քան 15 տարի աշխատում եմ որպես վարպետ։ Իմ աչքի առջև է աճել տեխնիկական զինվածությունը, բարելավվել թողարկվող արտադրանքի որակը, բարձրացել բանվորների որակավորումը։ Մենք բարդ սարքավորանք ենք թողարկում ավտոմատ գծերի ագրեգատային հաստոցների համար։ Մեր բանվորները պատվով են կատարում այդ առաջադրանքները։ Իհարկե, այդպիսի մեծ գործի ավանգարդում են կոմունիստները։ Այդ բանը, օրինակ, իրենց տեղամասերի մասին կարող են ասել ներտաշող բանվոր Իսակովը, ֆրեզորդ Պոլյակովը, փականագործ Գրեչիշկինը և շատ ու շատ ուրիշներ։

Ամբողջ կոլեկտիվը լավ ընդունեց մեր կուսակցության Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները, ճիշտ է գիտակցում արտադրության, աշխատանքային կարգապահության կազմակերպման նշանակալիությունը։ Մենք հավաստիացնում ենք, որ մեր արտադրամասը և, կարծում եմ, մեր գործարանի ողջ կոլեկտիվը իրենց խնդիրը հաջողությամբ կկատարեն։

Յու. Վ. Անդրոպով: Իսկ կարելի՞ է մի անհամեստ հարց տալ։ Ձեր արտադրամասում շա՞տ կան խախտողներ։

Վ. Ս. Եմելյանով: Հունվարին, կարելի է ասել, այդ հարցում հասանք

*գրոյի։ Իհարկե, աշխատանքային կարգապահության մեջ պետք է դեր խաղան թե՛ մեր օրենքները և թե վարչական տույժերը, բայց, ըստ իս, այստեղ աշխատավորական կոլեկտիվի դերը ամենամեծ նշանակությունն ունի։*

Յու. Վ. Անդրոպով: *Անպայման, ամենամեծ նշանակությունը։*

Վ. Ս. Եմելյանով: *Այժմ մենք արտադրամասում աշխատանքը կազմակերպում ենք բրիգադային մեթոդով։ Շուտով մենք ամբողջ արտադրամասում կանցնենք աշխատանքի այդ ձևին։ Դա մեզ համար մեծ ռեզերվներ կբացի աշխատանքային կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Եվ ընդհանրապես, ավելի լավ է քիչ խոսել, բայց ավելի շատ գործ անել։*

Յու. Վ. Անդրոպով: *Ճիշտ է։ Դա կարևոր է ոչ միայն ձեր գործարանի համար, այլև ամենուրեք։*

*Աշխատանքային ընդմիջման ժամը լրանում է։ Ավարտվում է նաև ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի հանդիպումը մոսկվացի հաստոցաշինարարների հետ։*

*Վերջում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար Վ. Վ. Գրիշինը։*

*Նա հավաստիացրեց, որ կոմունիստները, ամբողջ աշխատավորական Մոսկվան իրենց բոլոր ուժերը կնվիրաբերեն ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումների կատարմանը։ Իսկապես, ասաց նա, հարկավոր է կարգուկանոն հաստատել թե՛ կարգապահության և թե պլանների կատարման հարցում։ Պլենումում առաջադրվեցին հստակ խնդիրներ, թե ինչպես պետք է աշխատել, թե ինչ ուղղությամբ պետք է գործը տանել։*

Յու. Վ. Անդրոպով: *Եվ շնչասպառ չլինել։ Դա երկար ժամանակվա խնդիր է։*

Վ. Վ. Գրիշին: *Եվ այդ բանում վճռական դերը, իհարկե, պետք է պատկանի կոմունիստներին, կուսակցական կազմակերպություններին և ձեր գործարանի կուսակցական կազմակերպությանը, որը պետք է ամենքին պայքարի ոգեշնչի հանուն այդ խնդիրների իրականացման։*

*Յուրի Վլադիմիրովիչը այստեղ խոսեց կարգապահության ամրապնդման մասին։ Իսկապես, դա բազմապլան հարց է։ Եվ ո՛չ միայն հարկավոր է ժամանակին ներկայանալ աշխատանքի ու ժամանակին տուն գնալ, թեև դա էլ շատ կարևոր է։*

*Կարգապահության ամրապնդման շատ կարևոր բաղկացուցիչ մասն է արտադրության լավ պայմանների ստեղծումը, որպեսզի այն հստակորեն պլանավորված լինի, ապահովված լինի նյութատեխնիկական մատակարարումը, կարգի բերված լինեն սարքավորումները։ Հարկավոր է ամրապնդել թե՛ արտադրական կարգապահությունը, թե՛ պլանային կարգապահությունը։ Այստեղ ճիշտ էին ասում, որ վճռական դերը պատկանում է կոլեկտիվին։ Երբ կոլեկտիվում հասարակական կարծիք ստեղծվի աշխատանքային կարգապահության խախտման յուրաքանչյուր դեպքի շուրջը, դա կլինի ամենաուժեղ միջոցը, ավելի ուժեղ, քան որևէ այլ միջոց։*

Յու. Վ. Անդրոպով: *Մի քանի խոսք այն կապակցությամբ, ինչի մասին այժմ խոսեց ընկեր Գրիշինը։ Կկամենայի, որ ընկերները ճիշտ հասկանան, որ կարգապահության ամրապնդման հարցը վերաբերում է ո՛չ միայն բանվորներին, ինժեներատեխնիկական աշխատողներին։ Դա վերաբերում է ամենքին, մինիստրներից սկսած։*

*Վերջում ընկ. Յու. Վ. Անդրոպովը հաստոցաշինարարներին մի անգամ ևս շնորհակալություն հայտնեց նրանց լավ գործերի և սրտագին հանդիպման համար։ Նա նրանց մաղթեց քաջառողջություն, հաջողություններ արտադրության մեջ, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի առաջադրած խնդիրների լուծման գործում։*

# ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՊՐԱՎԴԱՅԻ» ԹՂԹԱԿՑԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ: Դուք ինչպե՞ս եք վերաբերվում «Եվրոպայի ժողովուրդներին» ուղղված ԱՄՆ-ի պրեզիդենտի դիմումին, որով նա առաջարկել է, որ ՍՍՀՄ-ը և Միացյալ Նահանգները ամերիկյան պայմաններով համաձայնագիր ստորագրեն միջին հեռավորության ցամաքային բազավորման հրթիռները վերացնելու մասին:

ՊԱՏԱՍԽԱՆ: Նախ և առաջ պետք է ամենայն որոշակիությամբ ասեմ, որ պրեզիդենտ Ռ. Ռեյգանի առաջարկության մեջ ոչ մի նոր բան չկա: Խոսու-
քը, և դա անմիջապես նկատել են աշխարհի բոլոր ինֆորմացիոն գործակա-
լությունները, վերաբերում է դարձյալ այն նույն «զրոյական տարբերակին»:
Որ դա Սովետական Միության համար կանխահայտորեն անընդունելի է,
այժմ արդեն ընդհանուր ճանաչում է գտել: Եվ իրոք, կարելի՞ է արդյոք լըր-
ջորեն խոսել մի առաջարկության մասին, որի համաձայն Սովետական Միու-
թյունը պետք է միակողմանի կարգով ոչնչացներ իր միջին հեռավորության
բոլոր հրթիռները, իսկ ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի գծով նրա դաշնակիցները պահ-
պանեին իրենց ունեցած այդ կարգի միջուկային միջոցները:

ԱՄՆ-ի հենց նման ոչ ռեալիստական դիրքավորումն է, և դա քաջ հայտնի է, որ կասեցնում է առաջընթացը Ժնևի բանակցություններում: Այն, որ ԱՄՆ-ի պրեզիդենտը այժմ նորից է հավաստել այդ դիրքավորումը, վկայում է մի բան. Միացյալ Նահանգները չեն ցանկանում որոնել Սովետական Միության հետ փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածություն և դրանով իսկ միտումնավոր կերպով Ժնևի բանակցությունները անհաջողության են մատնում:

Ես արդեն ասել եմ, որ ՍՍՀՄ-ը միակողմանի զինաթափման չի դիմի: Եվ եթե բանը հասնի Եվրոպայում ամերիկյան նոր հրթիռների տեղաբաշխմանը, ապա մենք դրան կպատասխանենք պատշաճ կերպով: Բայց դա մեր ընտրությունը չէր լինի:

Սովետական Միությունը այլ ուղու կողմնակից է: Ամենից լավ է, և մենք դա առաջարկում ենք, առհասարակ Եվրոպայի գոտում չունենալ ոչ միջին հեռավորության, ոչ տակտիկական միջուկային զենք:

Քանի որ ԱՄՆ-ը դրան չի համաձայնում, մենք պատրաստ ենք նաև այնպիսի լուծման, որի դեպքում Սովետական Միությունը չէր ունենա ավելի շատ հրթիռ, քան դրանք արդեն այժմ կան Եվրոպայում՝ ՆԱՏՕ-ի կողմում: Միաժամանակ պետք է պայմանավորվածություն ձեռք բերվի երկուստեք կրճատելու և հավասար մակարդակների հասցնելու նաև միջին հեռավորության միջուկային զենք կրող ինքնաթիռների քանակը: Այդպիսով կլինեն թե՛

հրթիռների և թե ինքնաթիռների լրիվ հավասարություն, ընդ որում հավասարություն անհամեմատ ավելի ցածր մակարդակով, քան այժմ է:

Սովետական Միությունը պատրաստ է ստորագրել այդպիսի համաձայնագիր: Արդյոք ԱՄՆ-ի պրեզիդենտը պատրա՞ստ է ստորագրել նման համաձայնագիր, որը հիմնված լինի հավասարության ու միատեսակ անվտանգության սկզբունքի վրա:

ՀԱՐՑ: ԱՄՆ-ի պրեզիդենտն առաջարկում է ձեզ հետ հանդիպում ունենալ այնպիսի համաձայնագիր ստորագրելու համար, որի մասին նա խոսում է: Ի՞նչ կարելի է ասել այդ առթիվ:

ՊԱՏԱՍԽԱՆ: Մենք եղել և մնում ենք այն կարծիքին, որ բարձր մակարդակի հանդիպումները առանձնահատուկ նշանակություն ունեն բարդ պրոբլեմների լուծման համար: Դա որոշում է մեր լուրջ մոտեցումը դրանց նկատմամբ:

Մեզ համար դա քաղաքական կամ պրոպագանդիստական խաղի հարց չէ: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարների հանդիպումը, որը նպատակ ունենար գտնել հրատապ պրոբլեմների փոխադարձաբար ընդունելի լուծումներ, զարգացնել մեր երկրների հարաբերությունները, օգտակար կլիներ նաև Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների համար, Եվրոպայի ու ողջ աշխարհի համար:

Իսկ երբ ԱՄՆ-ի պրեզիդենտը հանդիպումը պայմանավորում է նրանով, որ Սովետական Միությունը համաձայնի Եվրոպայում միջուկային սպառազինությունների պրոբլեմի ԱՄՆ-ի կողմից առաջարկվող բացահայտորեն անընդունելի լուծմանը, ապա դա բնավ էլ չի վկայում, թե ամերիկյան ղեկավարությունը լրջորեն է մոտենում այդ ամբողջ հարցին: Դրա համար կարելի է միայն ափսոսալ:

ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՖՈՐՄԱՑԻԱՅԻ ԾԱԳՄԱՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՍԱԿԱՆ-ՄԵԹՈԴԱԲԱՆԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Ց. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

*ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ հուշակեց ոչ միայն արմատական սոցիալական պրոբլեմների, այլև հին հասարակարգի ծնած ու իր սրությանը հասցրած ազգային հարցի լուծումը: Ժողովրդական զանգվածների սոցիալական ու ազգային ճնշման վերացման շնորհիվ պատմական կարճ ժամանակամիջոցում ստեղծվեց միասնական բազմազգ պետություն՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը: Այդ Միությունը դարձավ Հոկտեմբերյան հեղափոխության պատմական կոչման՝ կոմունիստական ֆորմացիայի ստեղծումն իրականացնելու հզոր միջոցը: ՍՍՀՄ 60-ամյա գոյության ընթացքում մենք կտրել անցել ենք կոմունիզմի առաջին փուլը, այժմ տեղի է ունենում դրա հետագա կատարելագործումը և աստիճանական անցումը կոմունիզմին: «Մենք ստեղծեցինք հզոր պետություն,— ՍՍՀՄ 60-ամյակին նվիրված զեկուցման մեջ նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը,— Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որի կազմավորումը եղավ ոչ միայն խոշոր քայլ սոցիալիզմի զարգացման գործում, այլև համաշխարհային պատմության ընթացքի կարևորագույն բեկումնային պահերից մեկը»:*

*Մարդկության պատմության մեջ առաջին անգամ նոր, ամենապրոգրեսիվ հասարակությունը ծագեց ոչ թե տարերայնորեն, այլ օբյեկտիվ օրենքների և սուբյեկտիվ գործոնների (կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ և սոցիալիստական պետության կողմից պլանաչափորեն կառավարվող ողջ բանվոր դասակարգի, աշխատավորական զանգվածների գիտակցական գործունեության) հարաճուն վճռական դերի խոր իմացության հիման վրա:*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը համաշխարհային պատմության զարգացման մեջ ոչ միայն բացեց նոր դարաշրջան՝ կապիտալիզմից կոմունիզմին անցնելու դարաշրջանը, այլև ստեղծեց էությամբ ինտերնացիոնալ, կառուցվածքով բազմազգ, ձևով սովետական ֆեդերատիվ պրոլետարիատի դիկտատուրա, որը, ինչպես հանճարեղ կերպով կանխատեսել էին մարքսիզմ-լենինիզմի դասականները, դարձավ հասարակության սոցիալիստական վերափոխման գլխավոր միջոցը:*

*Հասարակական զարգացման մեջ բոլոր այս սկզբունքորեն նոր երևույթների հետևանքով աշխարհը բաժանվեց սոցիալ-տնտեսական երկու հակադիր՝ կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների: Այս երկու հակադիր սիստեմների միջև պայքարը, հակակայությունն ու մրցակցությունը դարձան կոմունիստական ֆորմացիայի լինելիության համաշխարհային օրենքի առաջացման ու ներգործության արտահայտությունը:*

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության նախապատրաստումն ու իրականացումը, ինչպես նաև աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության կազմավորումը կյանքի կոչեցին առհասարակ հասարակական զարգացման, մասնավորապես կոմունիստական ֆորմացիայի ստեղծման նոր օրինաչափություններ։

Վ. Ի. Լենինը, ստեղծագործաբար զարգացնելով ապագա հասարակության ստեղծման վերաբերյալ Մարքսի և Էնգելսի կանխատեսումները, առաջին անգամ բացահայտեց կոմունիստական ֆորմացիայի լինելիության համաշխարհային օրենքը, որի բովանդակությունը բնորոշում են երեք հիմնական տարրեր։

Նախ, տարբեր ժամանակներում համաշխարհային սոցիալիստական հեղափոխության հաղթանակը սկզբում մի քանի կամ նույնիսկ մեկ, առանձին վերցրած կապիտալիստական երկրում։ Ինչպես և կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, Մեծ Հոկտեմբերը սկզբնավորեց համաշխարհային սոցիալիստական հեղափոխության հաղթանակը, որի վերջնական նպատակը ողջ աշխարհի կոմունիստական հիմունքներով վերափոխումն է։

Երկրորդ, աշխարհի անխուսափելի պառակտումը սոցիալ-տնտեսական երկու հակադիր՝ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների, որոնց միջև հակակայությունը, մրցակցությունն ու պայքարը բնորոշում են կապիտալիզմից սոցիալիզմին ու կոմունիզմին անցման ողջ դարաշրջանի բովանդակությունը։ Լիովին արդարացավ Լենինի այն կանխատեսումը, թե Հոկտեմբերից հետո համաշխարհային զարգացումը բնորոշվում է «երկու եղանակների, երկու ֆորմացիաների, երկու՝ կոմունիստական և կապիտալիստական տնտեսությունների» պայքարով (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 42, էջ 91)։

Երրորդ, իմպերիալիստական և գաղութային կեղեքման շղթայից աստիճանաբար նոր օղակների անջատումը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումը, սոցիալիստական համագործակցության երկրների անշեղ ամրապնդումը, սոցիալիստական կողմնորոշման երկրների ավելացումը։

Կոմունիստական ֆորմացիայի առաջացման համաշխարհային օրենքը հասարակական զարգացման բոլոր ոլորտներում տարբեր ձևերով է դրսևորվում։

Տնտեսական մարզում գործում են երկու իրարամերժ միտումներ։ Մի կողմից՝ փոխշահավետ և իրավահավասար տնտեսական կապեր և գործնական համագործակցություն, մյուս կողմից՝ առևտրական հարաբերությունները դադարեցնելու, բոյկոտներ հայտարարելու, ամեն կարգի պատժամիջոցներ կիրառելու և այլնի ձգտում։ Այս բանում հատկապես համառում են ամերիկյան իմպերիալիզմի ամենաագրեսիվ շրջանները։ ՍՍՀՄ-ը և սոցիալիզմի մյուս երկրները հենվում են ողջ արդի հասարակական կյանքի ինտերնացիոնալացման օբյեկտիվ օրենքի վրա, վստահ իրենց ապագային անշեղորեն ընդլայնում են փոխշահավետ տնտեսական և առևտրական կապերը։

Այլ, երկակի քաղաքականություն են վարում կապիտալիստական պետությունները։ Սովետական պետության ստեղծման առաջին իսկ օրվանից նրանք ձգտում էին ամեն հնարավոր և անհնարին միջոցներով, այդ թվում և սովի միջոցով խեղդել սոցիալիզմի առաջացումը։ Այնուհետև նրանցից շատերն աստիճանաբար անցան գործնական, փոխշահավետ կապերի հաստատման։ Այդ երկակի վերաբերմունքը, որը բխում է կապիտալիզմի բուն էությունից, մշտապես շարունակվում է, սակայն տարբեր ժամանակաշրջաններում և տարբեր երկրներում տիրապետող է դառնում մերթ ռեալիստական գործնական, մերթ արկածախնդրային ռազմաշունչ, ագրեսիվ միտումը։ Սոցիալիստական երկրների, առաջին հերթին ՍՍՀՄ-ի նկատմամբ կապիտալիստական երկրների այս երկու միտումները գործում են նաև սոցիալ-քաղաքական, կուլտուրական ոլորտներում, ինչպես նաև ռազմական մարզում։ Ժողովուրդների կյանքի համար խիստ կարևոր ռազմական մարզում ՍՍՀՄ-ն իր ծննդյան սկզբից ևեթ հետևողականորեն անցկացնում է խաղաղ գոյակցության քաղաքականություն, խաղաղության, լարվածության թուլացման և զինաթափման հաստատուն քաղաքականություն, որը, Լենինի խոսքերով ասած, սոցիալիզմի իդեալն է։ Նոր ֆորմացիայի ստեղծարար բնույթից բխող այս քաղաքականության բարձրագույն արտահայտությունն է առաջինը միջուկային զենք չգործադրելու վե-



րաբերյալ ՍՍՀՄ-ի միակողմանիորեն ստանձնած պարտավորությունը։ Դա նոր աշխարհի անպարտելի ուժի և լավատեսության վկայությունն է։

Ինչ վերաբերում է կապիտալիզմին, ապա նրա մշտական ուղեկիցն է պատերազմը, որից նա ոչ մի կերպ չի ուզում հրաժարվել նույնիսկ այն ժամանակ, երբ միանգամայն ակնհայտ է ջերմամիջուկային կործանման վտանգը։ Այդպիսին է իմպերիալիզմի անփոփոխ բնույթը։ Բայց անկասելիորեն փոփոխվում է աշխարհը, որը, բազմաթիվ հին ու նոր դիալեկտիկական հակասություններ ու դժվարություններ հաղթահարելով, ընթանում է սոցիալական պրոգրեսի ուղիով, որը խարսխված է կոմունիստական ֆորմացիայի լինելիության համաշխարհային օրենքի վրա։ Դրա էությունն այն է, որ անխուսափելի է կապիտալիզմի հեղափոխական վերափոխումը սոցիալիզմի և սրա աստիճանական անցումը կոմունիզմի։ Այդ օրենքը համաշխարհային է ոչ միայն այն պատճառով, որ արտահայտում է միջազգային բանվոր դասակարգի արմատական շահերն ու նպատակները, ինտերնացիոնալ բնույթ ունի, այլև այն պատճառով, որ իր ներգործունությամբ ճանգեցնում է կոմունիզմի լիակատար հաղթանակին մեր ողջ մոլորակի վրա, մի բան, որը չկարողացավ իրագործել ոչ մի նախորդ ֆորմացիա։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի և ՍՍՀՄ-ի կազմավորման շնորհիվ սովետական ժողովուրդը դարձավ կոմունիստական ֆորմացիայի հաստատման առաջամարտիկ։

Ընդհանուր օրինաչափությունները դասակարգելիս մարքսիզմ-լենինիզմն առաջին պլան է մղում քաղաքական օրինաչափությունները, որովհետև սրանք, լինելով բուրժուազիայի դեմ համաշխարհային պրոլետարիատի և առհասարակ շահագործողների դեմ շահագործվող ժողովրդական զանգվածների համընդհանուր դասակարգային պայքարի արտահայտությունը, սկսվում են ավելի շուտ և ներազդում են տնտեսական, սոցիալական ու կուլտուրական հեղափոխությունների վրա։ Ընդհանուր քաղաքական օրինաչափությունների միջուկը կոմունիստական հեղափոխական կուսակցության ղեկավարությամբ հին շահագործողական պետական ապարատի ջարդումն ու նոր, իր բնույթով սոցիալիստական պետության ստեղծման իրականացումն է։ Դա առաջին գլխավոր հարցն է ամեն մի սոցիալիստական հեղափոխության, որը կարող է տեղի ունենալ տարբեր՝ ոչ խաղաղ և խաղաղ ձևերով, ելնելով կոնկրետ պատմական պայմաններից։

Պատմության մեջ առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունը՝ Հոկտեմբերյան հեղափոխությունը, մեր երկրում կատարվեց զինված ապստամբության ձևով, որը տապալեց բուրժուազիայի և կալվածատերերի իշխանությունը և հաստատեց բանվորների ու գյուղացիների սովետների իշխանություն։ Այս օրինաչափության տրամաբանական արդյունքը եղավ ՍՍՀ Միության կազմավորումը։ Սոցիալիստական ընկերակցության մի շարք երկրներում, միանգամայն այլ պատմական պայմաններում հին պետական ապարատի ջարդումը և նորի ստեղծումը տեղի ունեցավ խաղաղ ձևով, առանց զինված ապստամբության, քաղաքացիական պատերազմի ու ինտերվենցիայի։

Հին հասարակարգից նորին, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու այս գլխավոր ընդհանուր օրինաչափությունը շրջանցելու բոլոր տեսակի փորձերը հաջողության չեն հանգեցրել։ Այդ է վկայում այն սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների փորձը, որոնք բազմիցս և երկար տարիներ, պառլամենտական ուղիով իշխանության հասնելով, անձեռնմխելի էին թողնում գոյություն ունեցող բուրժուական պետական ապարատը։

Թե ինչպիսի ողբերգական հետևանքների է հասցնում պետության մասին մարքսիզմի ուսմունքում գլխավորը մոռացության տալը, վկայում է Չիլիի ժողովրդական միասնության ճակատի փորձը։ Բացարձակապես օրինական, դեմոկրատական ճանապարհով անցնելով իշխանության գլուխ, Ալիենդեի կառավարությունը չցանկացավ նույնիսկ նվազագույն չափով ջարդել հին, փտած պետական ապարատը, նախ և առաջ ռեակցիոն գեներալներից զտել բանակը, որը ներքին և արտաքին հակահեղափոխության, առաջին հերթին ԱՄՆ-ի իմպերիալիզմի, օգնությամբ արյունալի ֆաշիստական հեղաշրջում կատարեց։

Բայց այս փորձը ևս սովորեցնում է անհրաժեշտ դասեր քաղել հաղթական Մեծ Հոկտեմբերի պրակտիկայից մեր երկրում, որտեղ առաջին անգամ ընդհանուր օրինաչափությունները քաղաքական ոլորտում իրականացվեցին, Լենինի խոսքերով ասած, հաղթական երթով ամբողջ երկրով մեկ՝ սկսած մայրաքաղաքից և վերջացրած Ռուսաստանի հեռավոր ծայրամասերով։ Դա նշանակում է, որ կարճ ժամանակամիջոցում երկրում ամենուրեք հաստատվեց բանվորների և գյուղացիների իշխանությունը՝ սովետների ձևով։

Տնտեսական ոլորտում կոմունիստական ֆորմացիայի առաջացման ընդհանուր օրինաչափություններն իրականացվում են առավել երկարատև ժամանակաշրջանում։ Դա սկսվում է ֆաբրիկաների, գործարանների, բանկերի, հողի և շատ խոշոր կապիտալիստական ձեռնարկությունների ազգայնացումով և վերջանում արտադրության բոլոր հիմնական միջոցների լրիվ հանրայնացմամբ, արդյունաբերության մեջ հանրային սոցիալիստական սեփականություն ստեղծելով և դրա հետագա որակապես նոր փուլի զարգացմամբ՝ ողջ երկրի սոցիալիստական ինդուստրացմամբ։ Սոցիալիստական ինդուստրիայի որակապես նոր բնույթը ցույց է տալիս կոմունիստական ֆորմացիայի առաջացման մեջ կարևոր տարբերիչ առանձնահատկությունը՝ ի տարբերություն կապիտալիստականի. ինչպես հայտնի է, կապիտալիստական ֆորմացիան սկսեց առաջանալ թեթև, հատկապես տեքստիլ, արդյունաբերության առավել զարգացման օրենքին համապատասխան, երբ անմիջական փոխհատույցը մի խումբ բուրժուական շահագործողների համար առավելագույն շահույթ էր ապահովում։ Կապիտալիզմի դասական երկրում՝ Անգլիայում, բուրժուազիայի և պրոլետարիատի առաջացման պատմությունը համոզիչ կերպով հաստատում է կապիտալիստական ֆորմացիայի ծագման այդ օրինաչափությունը։

Կոմունիստական ֆորմացիայի առաջացումը հնարավոր դարձավ Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից և աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության՝ ՍՍՀՄ-ի կազմավորումից հետո՝ ծանր արդյունաբերության առավել զարգացման օրենքին համապատասխան, որն անմիջականորեն պայմանավորված է նոր հասարակարգի հիմնական օրենքի ձևավորմամբ ու ներգործությամբ։ Այդ օրենքը ենթադրում է առկայությունն անընդհատ և հաստատուն զարգացող այնպիսի հանրային արտադրության, որն ի վիճակի է ապահովելու կոմունիստական ֆորմացիայի գլխավոր նպատակի՝ ողջ ժողովրդի բարեկեցության բարձրացման և յուրաքանչյուր անհատի համակողմանի զարգացման իրականացումը։

Գիտական կոմունիզմի այս հիմնարար դրույթին լիովին համապատասխան՝ մեր երկրում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանն սկսվեց ինդուստրացման քաղաքականության իրականացումից՝ ծանր արդյունաբերության առավել զարգացումով։ Սոցիալիզմի կառուցման այս ընդհանուր օրինաչափության իրագործումը տեղի էր ունենում բացառիկ ծանր կոնկրետ պատմական՝ կապիտալիստական շրջապատման իրադրությունում, առանց դրսից որևէ նյութական օգնության, ՍՍՀՄ-ի դեմ պատերազմի մշտական սպառնալիքի առկայությամբ։ Երկրի ինդուստրացման իրականացման գլխավոր աղբյուրը գյուղատնտեսությունն էր։ Ապահովելով սոցիալիզմի կառուցման այդ առաջին խնդրի լուծումը, մեր կուսակցությունն այնուհետև արդյունաբերության օգնությամբ կատարեց գյուղատնտեսության կոլեկտիվացման վիթխարի ծրագիրը։

Արդի պայմաններում այդ խնդիրներից առանձնահատուկ նշանակություն ունի ՍՄԿԿ XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի առաջադրած պարենային ծրագրի իրականացումը, որը զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կուսակցության տնտեսական ստրատեգիայի բաղկացուցիչ մասն է։

Մեր գաղափարական հակառակորդները ճգնում են պարենային ծրագիրը ներկայացնել որպես ՍՍՀՄ-ի գյուղատնտեսության ճգնաժամի արտահայտություն։ Նման պնդումները վկայում են հակակոմունիզմի գաղափարախոսների ու քաղաքագետների սահմանափակությունն ու հոգևոր սնանկությունը, նրանց անկարողությունը՝ հասկանալու ակունքները ինչպես մեր պատմական հաջո-



ղությունների, այնպես էլ աճի դժվարությունների, որոնք պայմանավորված են սոցիալիզմի դիալեկտիկական ու հակամարտ հակասությունների և ամենից առաջ՝ արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև հակասության ներգործությամբ։ Անցման շրջանի պայմաններում այս հակասությունը հաղթահարվեց կոլեկտիվացման միջոցով, իսկ արդի պայմաններում հաղթահարվում է ագրոարդյունաբերական կոմպլեքսի համակողմանի զարգացմամբ։

Ինչպես հայտնի է, ինդուստրացումից հետո ամենադժվարին խնդիրը, հատկապես մեր երկրում, որտեղ գերակշռում էր գյուղացիությունը, գյուղատնտեսության կոլեկտիվացումն էր։ Սակայն այդ խնդիրը ևս հաջողությամբ լուծվեց՝ մեր կուսակցության կողմից լենինյան կոոպերատիվ ծրագրի հետևողական իրականացման շնորհիվ։

Քաղաքական ոլորտում ընդհանուր օրինաչափությունների կենսագործումը դարձավ սոցիալիստական վերափոխման հիմնական լծակը ողջ էկոնոմիկայում, որը ոչ միայն ամրապնդեց քաղաքական վերնաշենքը, այլև դարձավ արմատական սոցիալական վերափոխումների հիմքը։ Իսկ այս մարզում ընդհանուր օրինաչափությունները դրսևորվում են նախ և առաջ շահագործողական դասակարգերի վերացումով, աշխատավոր դասակարգերի միջև արմատական տարբերությունների հաղթահարումով, նոր մտավորականության միասնական խավի ստեղծումով՝ բանվոր դասակարգի առաջատար դերի պահպանման և ուժեղացման պայմաններում։

Արմատական սոցիալ-դասակարգային վերափոխումներ իրականացնելիս տեղի է ունենում դարավոր ազգային հարցի լուծումը, հաստատվում է ժողովուրդների իսկական իրավահավասարություն և բարեկամություն, օրինաչափորեն ընթանում է ազգերի ծաղկման ու մերձեցման դիալեկտիկական պրոցեսը։ Հասարակության սոցիալիստական վերափոխման ընդհանուր օրինաչափությունների եզրափակիչ տարրը կուլտուրական հեղափոխությունն է, որն սկսվում է ողջ բնակչության անգրագիտության լրիվ վերացումով և պսակվում հասարակության հոգևոր կյանքի տեսական հիմքը հանդիսացող մարքս-լենինյան գաղափարախոսության լիակատար տիրապետության հաստատումով։

Սոցիալիզմի թշնամիները՝ բուրժուազիայի գաղափարախոսներից ու քաղաքագետներից սկսած մինչև ամեն երանգի ռեֆորմիստներն ու ռևիզիոնիստները, հատկապես վերջին տարիներին, կատաղի հարձակվում են գործում սոցիալիզմի ինտերնացիոնալ բնույթի վրա, կոմունիստական ֆորմացիայի լինելության համընդհանուր օրինաչափությունների օբյեկտիվության վրա։

Այս առումով, որպես սոցիալիզմի տարբեր մոդելների վերաբերյալ տխրահռչակ հակագիտական ըմբռնման վերջին խոսք, բնորոշ է, այսպես կոչված, «եվրոկոմունիզմը»։ Հետաքրքրական է նշել, որ «եվրոմարքսիզմի» և «եվրոկոմունիզմի» վերաբերյալ վարկածները մեջտեղ նետեցին մասսայական ինֆորմացիայի բուրժուական միջոցները։

Դեռևս կապիտալիզմի օրոք, սոցիալիզմի օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալների առաջացման ժամանակաշրջանում մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները գիտական կոմունիզմի տեսությունն ստեղծելիս առաջնակարգ ուշադրություն նվիրեցին ոչ միայն ընդդեմ բուրժուազիայի պրոլետարիատի դասակարգային պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի մշակմանը, այլև ազգային հարցին՝ իր բոլոր ասպեկտներով։ Կապիտալիզմի ճիշտ իմացության և այն հեղափոխականորեն սոցիալիզմի վերափոխելու հիմնական որոշիչ սկզբունքը դասակարգային մոտեցումն է։ Ինչպես հայտնի է, դասակարգերը կապիտալիզմի և սոցիալիզմի պայմաններում գոյություն չունեն ազգից՝ մարդկանց օբյեկտիվորեն առկա անխուսափելի հանրությունից, դուրս։ Այդ իսկ պատճառով բանվոր դասակարգի պատմական միսիայի իրականացումը պահանջում է դասակարգայինի և ազգայինի դիալեկտիկական զուգակցում։ Այն տեղի է ունենում լենինիզմի տեսական հիմքի վրա, որը պահանջում է պայքարել ընդդեմ «մանր-ազգային նեղմտության, ներփակվածության, կղզիացման դեմ, հանուն ամբողջի և ընդհանրականի հաշվառման, հանուն մասնավորի շահերն ընդհանուրի շահերին ենթարկելու» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 30, էջ 56)։

Լենինյան կուսակցության ողջ պատմությունը, աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության կազմավորումը վկայում են կոմունիստական ֆորմացիայի նախապատրաստման ու առաջացման ընթացքում դասակարգայինի և ազգայինի դիալեկտիկական զուգակցման ճշտության և բարդության մասին։

Ինչպես հայտնի է, կուսակցության կազմակերպման սկզբնավորման շրջանից Լենինը պայքարում էր հանուն միասնական, ինտերնացիոնալ, իր դասակարգային հիմքով պրոլետարական կուսակցության ստեղծման, որն ընդունակ լիներ միավորել «բոլոր ազգերի բանվորներին, անշեղորեն պայքարելով թե՛ «իր» և թե օտար բուրժուական նացիոնալիզմի դեմ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 24, էջ 153)։ Մերժելով բանվոր դասակարգի կուսակցության կազմակերպման ազգային սկզբունքը, Վ. Ի. Լենինը միևնույն ժամանակ պահանջում էր ապահովել «յուրաքանչյուր տվյալ ազգության սոցիալ-դեմոկրատական պրոլետարիատի բոլոր կուսակցական շահերի ու կարիքների բավարարումը» (ԵԼԺ, հ. 12, էջ 279)։

Հետևողական պրոլետարական ինտերնացիոնալիզմից ամեն կարգի խոտորումների դեմ անզիջում պայքարից հետո ստեղծվեց նոր տիպի կուսակցություն՝ իր գաղափարախոսությամբ ու քաղաքականության ինտերնացիոնալ, կազմով բազմազգ և հիրավի դեմոկրատական կառուցվածքով, հիմնված դեմոկրատական ցենտրալիզմի փորձված սկզբունքի վրա։ Լենինյան կուսակցության ստեղծման փորձն օգնեց Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո լուծելու դասակարգային և ազգային շահերի դիալեկտիկական զուգակցման հիման վրա պատմության մեջ առաջին բազմազգ սոցիալիստական պետության կազմավորման նոր բարդ հարցը։

«Կոնֆեդերացիայի» և «ավտոնոմիզացիայի» վերաբերյալ սխալ ըմբռնումների մեթոդաբանական հիմքը երկրագնդի մեկ վեցերորդ մասը զբաղեցնող բազմազգ երկրում նոր տիպի պետության՝ պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծման գործում դասակարգայինի և ազգայինի դիալեկտիկայի հարաբերակցության ոչ ճիշտ գիտակցումն էր։ Միայն մեր դարաշրջանի մեծագույն դիալեկտիկ Վ. Ի. Լենինն էր, որը դեռևս նախքան հեղափոխությունը խորապես մշակել էր ընդհանուրի և առանձինի, ամբողջի և մասի, ինտերնացիոնալի և ազգայինի դիալեկտիկան, որը Մեծ հոկտեմբերի ծնունդ հանդիսացող նոր, սոցիալիստական պետության կազմավորման սկզբունքների ու ձևերի վերաբերյալ հարցին տվեց միակ ճիշտ պատասխանը։

Բանվոր դասակարգի ընդհանուր, ինտերնացիոնալ խնդիրները պահանջում էին ստեղծել միասնական, դեմոկրատական ցենտրալիզմի վրա հիմնված պետություն։ Ազգերի յուրահատուկ շահերը կյանքի կոչեցին սովետական պետության կազմակերպման ֆեդերատիվ ձևը։ ՌՍՖՍՀ-ի կազմակերպման փորձը ցույց տվեց ազգային հարցի լենինյան լուծման ճշտությունը նաև ողջ երկրի մասշտաբով։

Սոցիալիստական շինարարության ընդհանուր խնդիրները լուծելիս, բոլշևիկյան կուսակցությունը համակողմանիորեն հաշվի էր առնում մեր հսկայական երկրի ազգային ու ռեգիոնալ առանձնահատկությունները։ Հաճախ մամուլում մինչհեղափոխական Ռուսաստանն անվանում են նահապետական երկիր։ Դա սխալ է։ Իրականում այնտեղ ներկայացված էին գրեթե բոլոր մինչսոցիալիստական տնտեսական կացութաձևերը՝ նահապետականից մինչև բարձր աստիճանի կենտրոնացված կապիտալիստական արտադրությունը, և մարդկանց հանրության բոլոր ձևերը՝ տոհմերն ու ցեղերը, ազգություններն ու ազգերը։ Մեծ հոկտեմբերից հետո մեր երկիրը վերածվեց հսկայական սոցիալական լաբորատորիայի, որտեղ պատմության մեջ առաջին անգամ կիրառվում և ստուգվում էին ոչ միայն ընդհանուր օրինաչափությունները, այլև հասարակության սոցիալիստական վերափոխման առանձնահատկությունները։ Դրանք դրսևորվում էին հասարակության բոլոր ոլորտներում՝ պետական շինարարությունում, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում։ Ամենուրեք բոլշևիկների կուսակցությունը մեծագույն ուշադրություն էր ցուցաբերում բոլոր ժողովուրդների ազգային շահերի ու զգացմունքների նկատմամբ, անհաշտ



պայքար էր մղում բուրժուական նացիոնալիզմի, շովինիզմի և ազգային նիհիլիզմի ամեն մի դրսևորման դեմ։

Բավական է ասել, որ մեր կուսակցության գրեթե բոլոր համագումարներում, բոլոր ժողովուրդների, հանրապետությունների, ամբողջությամբ վերցրած ողջ երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի խնդիրների հետ միաժամանակ մշտապես քննարկվել են նացիոնալիզմի և շովինիզմի վերապրուկների բոլոր դրսևորումների դեմ պայքարի հարցերը։

Լենինյան այս ավանդույթը մենք տեսնում ենք նաև զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ հիմնականում լուծված է սովետական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման խնդիրը, ապահովված է բոլոր ազգերի ու ազգությունների իրավական ու փաստացի հավասարությունը և ավարտված մարդկանց նոր պատմական հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորումը, որը դիալեկտիկորեն զուգակցում է սոցիալականի և ինտերնացիոնալի միասնությունը։ Եվ մեր երկրի սոցիալական պրոգրեսի այս բարձր մակարդակում էլ ՍՄԿԿ XXVI համագումարը մեծ ուշադրություն նվիրեց ազգային հարաբերությունների հետագա զարգացմանը, առաջացած պրոբլեմները ժամանակին լուծելուն, մասնավորապես ազգային հանրապետությունների բազմազգ կազմի հետագա աճի կապակցությամբ կուսակցական ու պետական մարմիններում բոլոր ազգերի պատշաճ ներկայացուցչության ապահովմանը։

Ինչպես հայտնի է, առհասարակ կադրերի, հատկապես ղեկավարների ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը վճռական նշանակություն ունի յուրաքանչյուր հանրապետության և ողջ երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման համար։

Սովետական ժողովուրդը, լինելով առաջին կոմունիզմ կառուցողը, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում ընդհանուրի ու առանձնահատուկի, ամբողջի և մասի, ինտերնացիոնալի և ազգայինի զուգակցման իր մեծահարուստ փորձով հաստատում և հարստացնում է մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների կանխատեսումը կոմունիստական ֆորմացիայի նյութական, սոցիալական ու հոգևոր հիմքերի ստեղծման ուղիների վերաբերյալ։

Ընդհանուր հիմնական խնդիրը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, բոլոր սովետական հանրապետությունները լուծում են համատեղ ջանքերով։ Յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկայի զարգացումը ողջ երկրի ընդհանուր միութենական ժողովրդատնտեսական կոմպլեքսի անհրաժեշտ օղակն է։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր հանրապետության նյութական պոտենցիալի մեծացումը նախ և առաջ ենթարկված է ընդհանուր պետական շահերին։ Յուրացնելով Հեռավոր Արևելքի և Հյուսիսի վառելիքաէներգետիկ ու հումքային պաշարները, կազմակերպելով նավթի հանույթը Տյումենի դաժան պայմաններում, արարելով դարի հոյակերտ կառույց ԲԱՄ-ը, անցկացնելով ոռոգիչ ջրանցքներ Միջին Ասիայի անապատներում, յուրացնելով Ղազախստանի խոպան հողերը, զարգացնելով ոչ սևահողային գոտին, վեր խոյացնելով էլեկտրական հզորություններ Կիրգիզիայում, բազմապատկելով Անդրկովկասի և Մերձբալթիկայի հանրապետությունների տնտեսական հզորությունը, բոլոր ազգությունների սովետական մարդիկ ստեղծում են կոմունիստական հասարակության նյութական հիմքերը։ Մենք երբեք չպետք է մոռանանք Մարքսի այն միտքը, թե աշխատանքը բնության հետ միասին ամեն մի հասարակության հիմքն է։ Այստեղից հետևում է, որ յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկան ՍՍՀ Միության էկոնոմիկայի հետ ընդհանուր գծերով հանդերձ ունի նաև իր անկրկնելի, ազգային-յուրահատուկ առանձնահատկությունները։ Այս ընդհանուր գծերն ու առանձնահատկությունները հաշվի առնելով էլ տեղի է ունենում ողջ երկրի ներդաշնակ զարգացումը։ «Ավելի ու ավելի սերտորեն են միահյուսվում հանրապետությունների շահերը,— ասաց Յու. Վ. Անդրոպովը,— ավելի ու ավելի բեղմնավոր են դառնում փոխօգնությունը, փոխադարձ կապերը, որոնք միասնական հունով են տանում Սովետական Միության ազգերի և ազգությունների ստեղծարար ջանքերը։ Մեր երկրում սոցիալիստական ազգերից յուրաքանչյուրի համակողմանի զարգա-

ցումը օրինաչափորեն տանում է դեպի նրանց ավելի սերտ մերձեցում։

Ընդհանուրի և մասնակիի, ինտերնացիոնալի և ազգայինի զուգակցումը հատկապես ցցուն կերպով դրսևորվում է միասնական սովետական կուլտուրայի զարգացման մարզում, կուլտուրա, որը բովանդակությամբ սոցիալիստական է, ազգային ձևով բազմազան, ոգով և վերջնական նպատակին՝ կոմունիզմին ընթանալու մայրուղիով՝ ինտերնացիոնալ։ Այս բազմակողմանի պրոցեսի հիմքում ընկած է ազգերի ծաղկման ու մերձեցման դիալեկտիկան, որն զգալիորեն ավելի երկարատև ժամանակաշրջան կզբաղեցնի, քան դասակարգերի ու սոցիալական խմբերի մերձեցումը։ Եթե սովետական հասարակարգի բոլոր դասակարգերի ու հասարակական խմբերի մերձեցումը գլխավորում և հիմնականում կհանգեցնի հասարակության անդասակարգ կառուցվածքի ստեղծմանը հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում, ապա բոլոր սոցիալիստական ազգերի մերձեցումը, նրանց միաձուլումը տեղի կունենա հեռավոր կոմունիստական ապագայում։ Ազգությունները, որոնք դասակարգերից զգալիորեն ուշ են առաջացել, իրենց հերթին կմիավորվեն միասնական մարդկային ցեղի մեջ զգալիորեն ավելի ուշ, միայն համաշխարհային մասշտաբով կոմունիզմի հաղթության պայմաններում։ Այս ճանապարհին դեռևս տեղի կունենա սոցիալիստական ազգերի վերաճում կոմունիստականի։ Ազգերի զարգացման ու մերձեցման այս յուրահատուկ առանձնահատկությունը պահանջում է բացառիկ ուշադիր ու հոգատար վերաբերմունք ազգային հարաբերությունների զարգացման պրոբլեմի նկատմամբ։

Լենինյան այս դրույթը կարևոր, հարաճուն նշանակություն ունի սոցիալիզմի բոլոր թշնամիների, հակակոմունիզմի գաղափարախոսների ու քաղաքագետների և ռեֆորմիզմի ու ռևիզիոնիզմի բոլոր տարատեսակների դեմ պայքարի գործում։

Բանն այն է, որ եթե սովետական իշխանության առաջին տարիներին և սոցիալիզմի հիմքերի կառուցման ողջ ժամանակաշրջանում մեր թշնամիները գլխավորապես իրենց հույսը դնում էին շահագործողական դասակարգերի մնացորդների վրա, ապա այժմ հակակոմունիզմի գաղափարախոսները, զրկվելով մեր հասարակությունում այդ սոցիալական հենարանից՝ փոխել են իրենց տակտիկան, սկսել են կողմնորոշվել դեպի նացիոնալիզմը, ճգնելով ստի և մոլորեցման ամեն տեսակի մեթոդներով սովետական մարդկանց որոշ մասի մոտ նացիոնալիստական նախապաշարումներ բորբոքել, աղավաղված ձևով ներկայացնել սովետական պետության ազգային քաղաքականությունը։ Այս առումով հատկապես մեծ ճիգեր է գործադրում ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռեյգանի ներկայիս օգնական Ռիչարդ Փայպսը, որը երկար ժամանակ մասնագիտանում է Սովետական Միությունում ազգերի պրոբլեմով։ Սովետական հասարակությունում ամեն մի նորն ու պրոգրեսիվը իմպերիալիզմի գաղափարախոսներն ու քաղաքագետները ներկայացնում են աղավաղված ձևով։ Այսպես, սովետական բազմազգ ժողովրդի գոյացումը, որպես մարդկանց նոր պատմական հանրություն, նրանք ներկայացնում են իբրև բոլոր սովետական ժողովուրդների բռնի միաձուլում մեկ միասնական «ռուս-սլավոնական տիպի» ազգի մեջ։ Ռուսաց լեզվի վերածումն ազգամիջյան հաղորդակցման լեզվի նրանք ներկայացնում են իբրև «ռուսականացման» քաղաքականության իրականացում։ Միջին Ասիայի, Ղազախստանի և ցարական Ռուսաստանի նախկին գաղութային ծայրամասերի ժողովուրդների հսկայական թռիչքը դարավոր հետամնացությունից դեպի ժամանակակից սոցիալական պրոգրեսը բուրժուական սովետագետները ներկայացնում են իբրև ազգերի համահարթում, նրանց ինքնատիպ կուլտուրայի ոչնչացում, նրանց յուրահատուկ հատկանիշների վերացում։

Սովետագետների բոլոր այս և ուրիշ տակտիկական հնարանքների ստրատեգիական նպատակն է ոչ միայն նացիոնալիստական նախապաշարումներ բորբոքել մեր երկրում, այլև, որ գլխավորն է, աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության փորձը կեղծված ձևով ներկայացնել արդի մարդկությանը, որը բաղկացած է մոտավորապես 2.000 ազգերից ու ազգություններից, որոնց 90 տոկոսն ապրում է համապատասխան զանազան բազմազգ և բազմացեղ պետություններում։

(Շարունակելի)

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

**Կ. Ֆ. ՇԵՐԵՄԵՏ**
ՍՍՀՄ ԳԱ պետության և իրավունքի ինստիտուտի դիրեկտորի տեղակալ, իրավաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նշեց սովետական քաղաքական սիստեմի հետագա զարգացման գլխավոր ուղղությունները տևական ժամանակաշրջանի համար։ Նրա որոշումներում և նյութերում արտացոլվեցին հասուն սոցիալիզմի պայմաններում սոցիալիստական պետականության և դեմոկրատիայի կատարելագործման հիմնարար հարցերը։ Այդ պրոցեսը սովետական հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման մի մասն է և անխզելիորեն կապված է սոցիալիստական էկոնոմիկայի առաջընթացի, տասնմեկերորդ հնգամյակի և 80-ական թվականների հրատապ ժողովրդատնտեսական պրոբլեմների լուծման հետ։

Համագումարի ընդունած մեր երկրի տնտեսական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական խնդիրները խոշոր փուլ են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Կուսակցության տնտեսական ստրատեգիայի բարձրագույն նպատակն է «Ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը, անհատի համակողմանի զարգացման լավագույն պայմանների ստեղծումը՝ ամբողջ հանրային արտադրության արդյունավետության հետագա բարձրացման, աշխատանքի արտադրողականության մեծացման, սովետական մարդկանց սոցիալական և աշխատանքային ակտիվության աճի հիման վրա» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 219)։ Այդ նպատակին հասնելուն համապատասխան կիրականացվի նաև հասարակության հետագա սոցիալական առաջընթացը։ Միայն էկոնոմիկայի վերելքի հիման վրա կարելի է ապահովել ժողովրդի բարեկեցության աճը, սոցիալիստական ապրելակերպի, հասարակական հարաբերությունների ամբողջ սիստեմի զարգացումը։ Ամբողջությամբ վերցրած այդ գործոնները կազմում են սոցիալիստական պետականության և դեմոկրատիայի կատարելագործման սոցիալ-տնտեսական նախադրյալները։

Սովետական հասարակության սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման արդի փուլի վառ արտահայտությունը հանդիսացավ ՍՍՀՄ նոր սահմանադրության, միութենական ու ինքնավար հանրապետությունների նոր սահմանադրությունների ընդունումը։ ՍՍՀՄ նոր սահմանադրությունը սովետական ժողովրդի կյանքում, սովետական պետության ողջ պատմության մեջ կարևորագույն իրադարձություններից մեկն է։ Նոր հիմնական օրենքի նշանակությունը բարձր գնահատվեց ՍՄԿԿ XXVI համագումարում. «Սովետական հասարակության տնտեսական, սոցիալական ու հոգևոր կյանքում կատարված առավել էական փոփոխությունները, համաժողովրդական պետության խոր դեմոկրատիզմը խտացված արտահայտություն են գտել ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ» (Նույն տեղը, էջ 104)։ Կուսակցությունը պետական և հասարակական մարմիններին, ողջ սովետական ժողովրդին կողմնորոշում է անշեղ

տական իշխանության մարմինների գործունեության ակտիվացմանը։ Իշխանության սոցիալիստական ներկայացուցչական մարմինները սկզբունքորեն տարբերվում են բուրժուական պետությունների ցանկացած պառլամենտական հաստատություններից։ Սովետները աշխատող կորպորացիաներ են։ Սովետական նոր սահմանադրությունները ամրապնդեցին սովետների այդ հատկությունները։ Այդ սկզբունքն առավել ընդհանուր արտահայտություն է գտել ՍՍՀՄ սահմանադրության 93-րդ հոդվածում, ուր նախատեսված է, որ սովետները «ընդունում են որոշումներ, ապահովում դրանց կատարումը, իրականացնում որոշումների կենսագործման վերահսկողությունը»։ «Սովետները աշխատող կորպորացիաներ են» սկզբունքը հետևողականորեն կիրառվել է գերագույն սովետների աշխատակարգերում, մշտական հանձնաժողովների վերաբերյալ կանոնադրություններում, «ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ստատուսի մասին» օրենքում։

Սովետական նոր սահմանադրությունները խթանեցին գերագույն սովետների ակտիվ օրենսդրական գործունեությունը։ Երկրի մասշտաբով այդ ծավալուն օրենսդրական աշխատանքի արդյունքը եղան մի քանի հարյուր նոր կամ լրացուցիչ և փոփոխված օրենքներն ու այլ օրենսդրական ակտերը։ Նոր սահմանադրությունների հետ միասին այդ ակտերը արտացոլում են հասուն սոցիալիստական հասարակության իրավական սիստեմի զարգացման առավել էական միտումները։ Գերագույն սովետների ակտիվ օրենսդրական գործունեությունը բնավ չի նսեմացրել նրանց դերը պետական ղեկավարման, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության կառավարման, օրենքների կատարմանը վերահսկելու ոլորտներում։ Նոր սահմանադրությունների ընդունումից հետո անցած տարիները բնութագրվում են տնտեսական և սոցիալական զարգացման ղեկավարման բնագավառներում գերագույն սովետների բարձր ակտիվությամբ։

Միութենական հանրապետությունների գերագույն սովետներում տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների ընդունումը նույնպես ուղեկցվում է նախապատրաստական մեծ աշխատանքով, պլանային և բյուջետային ցուցանիշների համակողմանի ուսումնասիրմամբ, մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքի վերլուծմամբ, նրանց գործունեության մեջ եղած թերությունների բացահայտմամբ, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվներն ու հնարավորությունները գտնելով։ Գերագույն սովետներն ու նախագահությունները իրականացնում են սիստեմատիկ վերահսկողություն պետական պլանների ու սոցիալական զարգացման և պետական բյուջեների կատարման ընթացքի վրա։ Այդ հարցերը քննարկվում են գերագույն սովետների սեսիաներում, գերագույն սովետների նախագահությունների նիստերում, մշտական հանձնաժողովներում։ Գերագույն սովետներն ավելի հաճախակի են դիմում էկոնոմիկայի զանազան կոնկրետ տեղամասերին, ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի վիճակին, բնակչության սոցիալ-կուլտուրական և կոմունալ-կենցաղային սպասարկման առումով մինիստրությունների և գերատեսչությունների աշխատանքին։

Գերագույն սովետների օրենսդրական գործունեությունը կազմակերպելու, օրենսդրությունները, կառավարումը և վերահսկումը միավորելու գործում էապես մեծացել է գերագույն սովետների նախագահությունների դերը։ Դա, առաջին հերթին, վերաբերում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը, որը համակողմանիորեն քննարկում և հավանություն է տալիս Գերագույն սովետի հերթական սեսիաների օրակարգերի և աշխատակարգերի վերաբերյալ առաջարկություններին, քննության է առնում մշտական հանձնաժողովների՝ Գերագույն սովետների քննարկմանը ներկայացվող նախագծերը, ապահովում է պալատների մշտական հանձնաժողովների աշխատանքի կոորդինացումը։ Նախագահությունը պարբերաբար քննարկում է հանձնաժողովների ներկայացրած հարցերը, նրանց հանձնարարականները և վերջիններս ուղարկում է ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդ, մյուս պետական մարմիններ՝ քննարկելու և անհրաժեշտ միջոցներ ձեռք առնելու համար։

ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրները պահանջում են Գե-



րագույն սովետների՝ որպես աշխատող կորպորացիաների, հետագա կատարելագործում, որոնք ակտիվ, նորմաստեղծ գործունեությունը միավորում են պետական կառավարման իրականացման հետ։ Դա համապատասխանում է Գերագույն սովետների՝ պետական իշխանության բարձրագույն ներկայացուցչական մարմինների բնույթին, որոնք օժտված են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարությունը ղեկավարելու, պետության բոլոր մյուս մարմինների գործունեությանը ուղղություն տալու բոլոր անհրաժեշտ լիազորություններով։

ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանեց նաև պետական իշխանության տեղական մարմինների հետագա զարգացումը։ ՍՍՀՄ 1977 թվականի սահմանադրությունը և միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրությունները էապես ընդլայնեցին իշխանության այդ մարմինների ֆունկցիաներն ու լիազորությունները։ Սովետական սահմանադրության մեջ առաջին անգամ սահմանվեց տեղական սովետների խնդիրն այն մասին, որ նրանք «ապահովում են տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացումը իրենց տերիտորիայում» (ՍՍՀՄ սահմանդրության 147-րդ հոդվածը և միութենական հանրապետությունների սահմանադրությունների համապատասխան հոդվածները)։ Դա նշանակում է իշխանության տեղական մարմինների ֆունկցիաների և լիազորությունների զարգացման սկզբունքորեն նոր աստիճան։ Տեղական սովետները տերիտորիալ ղեկավարման մարմիններ են, որոնք իրականացնում են տերիտորիալ կառավարման և պլանավորման շատ ֆունկցիաներ։ Տեղական սովետների տերիտորիաներում տնտեսության կոմպլեքսային զարգացումը հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման ուղղություններից մեկն է։ Դա հենվում է համապատասխան տերիտորիայի բնական հարստությունների ողջ կոմպլեքսի, նրա տնտեսական պոտենցիալի, աշխատանքային ռեսուրսների և այլնի օգտագործման վրա։ Խոսքը ոչ միայն արտադրության նյութական պահանջմունքների, այլև քաղաքացիների սոցիալական պահանջմունքների, բնակչության սոցիալ-կուլտուրական սպասարկման ներդաշնակ զարգացման մասին է։ Նոր սահմանադրություններով հստակորեն սահմանված են ձեռնարկությունների, հիմնարկությունների և վերադաս ենթակայության կազմակերպությունների գործունեությունը տեղական սովետների կողմից կոորդինացնելու և վերահսկելու ոլորտները՝ կապված իրենց ենթակայության ներքո գտնվող տերիտորիաներում տնտեսական և սոցիալական կոմպլեքս զարգացման խնդրի հետ։ Դա օրենսդրության պահպանումն է, հողօգտագործումը, բնության պահպանությունը, շինարարությունը, աշխատանքային ռեսուրսների օգտագործումը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, բնակչության սոցիալ-կուլտուրական, կենցաղային և այլ սպասարկումը (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 147)։

Համագումարի ընդունած տնտեսական և սոցիալական զարգացման ծավալուն ծրագիրը՝ տևական ժամանակաշրջանի համար բոլոր սովետների աշխատանքի ծրագիր է։ Հենց սովետները՝ ժողովրդական իշխանության մարմինները, որոնց վերահսկմանը ենթակա են ու հաշվետու բոլոր մյուս պետական մարմինները, գտնվում են ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների իրականացման նպատակով կատարվող ողջ հսկայական աշխատանքի կենտրոնում։ «Միլիոնավոր դեպուտատներ, լայն ակտիվը կազմում են այն մեծ, ստեղծագործական ուժը, որը պետք է ըստ ամենայնի օգտագործել։ Է՛լ ավելի պետք է ակտիվանա սովետների մասնակցությունը պլանների կազմման և դրանց կատարման, սովետական օրենքների անշեղ կիրառման նկատմամբ վերահսկողությունն իրականացնելու գործին։ Նրանք կոչված են ուժեղացնելու իրենց ներգործությունը հանրային արտադրության զարգացման վրա, ավելի մեծ ուշադրություն նվիրելու բնակչության համար ապրանքների թողարկման ավելացմանը, ժողովրդական կրթության, առողջապահության, բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարության, առևտրի, կենցաղային սպասարկման և հասարակական սննդի զարգացմանը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութեր, էջ 328—329)։ Արդ ժողովրդական դեպուտատների սովետների զարգացումը

պայմանավորվում է այն ուղղություններով, որոնք սահմանեց ՍՄԿԿ XXVI համագումարը։ Միջոցներ ձեռնարկվեցին էկոնոմիկայի ու սոցիալական զարգացման, բնակչության սպասարկման ոլորտի ղեկավարման գործում սովետների իրավունքները ընդլայնելու նպատակով։ 1981 թ. մարտի 19-ին ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին «Տնտեսական շինարարության մեջ ժողովրդական դեպուտատների սովետների դերի հետագա բարձրացման մասին» որոշումը։ Այն տեղական սովետների ազդեցության նոր հնարավորություններ է ապահովում ոչ ենթակա ձեռնարկությունների, կազմակերպությունների ու հիմնարկությունների վրա՝ հօգուտ կոմպլեքսային զարգացման խնդիրների լուծման։

Պետական կառավարումը սովետական սոցիալիստական պետականության հիմնական տարրերից մեկն է և հսկայական դեր է խաղում տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության բազմաբնույթ խնդիրների լուծման գործում։ Այն ուղղված է տնտեսական, սոցիալական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում կոմունիստական կուսակցության և սովետական պետության քաղաքականության պրակտիկ իրականացմանը, տնտեսական և սոցիալական զարգացման պլանների, սովետական օրենքների ու մյուս ակտերի կատարման կազմակերպմանը, սովետական քաղաքացիների սոցիալ-տնտեսական իրավունքների կիրառման ապահովմանը։ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները վերաբերում են պետական կառավարման ամբողջ ոլորտին, նրա գործունեության բոլոր մակարդակներին, ձևերին ու մեթոդներին, կազմակերպական կառուցվածքներին։ Ընդսմին գլխավոր ուշադրություն նվիրվեց կենտրոնական հարցին՝ ժողովրդական տնտեսության կառավարմանը։ «Ժողովրդական տնտեսության ղեկավարումը կուսակցության և պետության ողջ գործունեության առանցքն է։ Չէ՞ որ հենց էկոնոմիկայի բնագավառում է դրվում սոցիալական խնդիրների լուծման, երկրի պաշտպանունակության ամրապնդման հիմքը, ակտիվ արտաքին քաղաքականության հիմքը։ Հենց այստեղ են ստեղծվում դեպի կոմունիզմ սովետական հասարակության հաջող առաջընթացի անհրաժեշտ նախադրյալները» (Նույն տեղը, էջ 50)։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը մշակեցին միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա նրա ներգործության ուժեղացման նպատակով, որն արտացոլվել է համապատասխան որոշումներում։ Միջոցներ են ձեռնարկված պլանային աշխատանքը բարելավելու, տնտեսական հաշվարկը ամրապնդելու, նյութական և բարոյական խթանումն ուժեղացնելու համար։

ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանեց ժողովրդական տնտեսության պետական կառավարման կատարելագործման ստրատեգիական նպատակները։ Դրանք վերաբերում են էկոնոմիկան զարգացման գերազանցապես ինտենսիվ ուղու վրա փոխադրելն ապահովելուն։ Դա նշանակում է արտադրության արդյունքների ավելի մեծացում, քան նրա վրա կատարված ծախսումներն են, որպեսզի արտադրության մեջ համեմատաբար քիչ ռեսուրսներ ներգրավելով հնարավոր լինի ստանալ մեծ արդյունք։ Ուստի կառավարման ձևերը, կառավարման կազմակերպական կառուցվածքները պետք է համապատասխանեցվեն այդ խնդիրների հետ։ Հենց էկոնոմիկայի ինտենսիվացմանը, նրա արդյունավետության բարձրացմանը պետք է ենթարկվեն պլանավորումը, գիտատեխնիկական և կառուցվածքային քաղաքականությունը։

Սոցիալիստական էկոնոմիկայի պայմաններում կառավարման գործում կենտրոնական օղակը պլանավորումն է։ Խնդիրն այն է, որպեսզի մեծացվի պլանավորման դերը, որակական նոր աստիճանի բարձրացվի ողջ պլանային աշխատանքը։ Խոսքն ամենից առաջ ժողովրդական տնտեսության կառավարման համակարգում բուն պլանների նշանակությունը կարևորելու մասին է։ Չէ՞ որ պլանները կուսակցության տնտեսական քաղաքականության կենսագործման, կոմունիստական շինարարության սոցիալական խնդիրները հետևողականորեն լուծելու գլխավոր գործիքն են։



Տնտեսական և սոցիալական պրոբլեմների լուծման գործում սկզբունքային նշանակություն ունի ժողովրդական տնտեսության փոխկապակցված ճյուղերի պլանավորման և երկրի շրջանների նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը, որը հանգեցնում է ՍՍՀՄ պետպլանի՝ որպես կենտրոնական պլանային մարմնի, դերի մեծացմանը։ Այն պետք է ուշադրությունը կենտրոնացնի հեռանկարային հարցերի, միջճյուղային օպտիմալ կապերի, ճյուղերի և շրջանների զարգացման գործում առաջնային որոշման, ժողովրդատնտեսական համամասնությունների կատարելագործման, գիտատեխնիկական հայտնագործությունների ու մշակումների իրականացման վրա։

ՍՄԿԿ XXVI համագումարը առանձնահատուկ նշանակություն վերապահեց ճյուղային և տերիտորիալ կառավարման զուգակցմանը։ Դա նպաստում է ռեսուրսների կոմպլեքսային օգտագործմանը, արդյունավետ տնտեսավարմանը, սովետական մարդկանց աշխատանքի և կենցաղի հետագա բարելավմանը։ Կառավարման տերիտորիալ սկզբունքը, ուժեղացնելով տերիտորիալ պլանավորումը, ազդեցություն է գործում նաև բուն ճյուղային կառավարման կազմակերպման վրա։ Այժմ ճյուղի զարգացման ընթացիկ և հեռանկարային պլանները կազմվում են նաև տերիտորիալ առումով։ Տերիտորիալ սկզբունքը կառավարման համակարգի վերին մակարդակներում դրսևորվում է որպես ճյուղերի կառավարման ինտեգրացիայի, պլանավորման ու կառավարման գործում հանրապետական և տեղական մարմինների դերի մեծացման, ինչպես նաև որոշակի տերիտորիաների շրջանակներում մի քանի արտադրություններ համալիրների մեջ միավորելու, այսինքն՝ տերիտորիալ-արտադրական համալիրների և արդյունաբերական հանգույցների ձևավորման գործոն, հատկապես նոր յուրացվող շրջաններում։

Հատուկ պրոբլեմ է ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման կազմակերպումը, որի գլխավոր խնդիրը երկիրը պարենով և գյուղատնտեսական հումքով հուսալիորեն ապահովելն է։ Դրա համար անհրաժեշտ է ապահովել միասնական պլանավորումը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի համամասնական և հաշվեկշռված զարգացումը։ Գյուղատնտեսության կառավարման գործում կիրականացվի միջոցառումների համակարգ, որի նպատակն է պլանավորման, արտադրության տնտեսական և գյուղատնտեսական մթերքների մթերման խթանման բարելավումը, տնտեսական հաշվարկի ամրապնդումը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումն ու գյուղատնտեսական արտադրության շահութաբերության բարձրացումը։ Պետք է ամրապնդվեն գյուղատնտեսության կապերը ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի հետ։ Գյուղատնտեսության կառավարման կատարելագործման նպատակով կատարվող աշխատանքը արտահայտվում է նաև պետական-կոոպերատիվ, միջկոլտնտեսային և կոլտնտեսային-սովխոզային միավորումներն ու ագրոարդյունաբերական կազմակերպությունները զարգացնելու մեջ։ Գյուղատնտեսական արտադրության կառավարման խնդիրներից մեկը կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքի տնտեսական պայմանների հետագա կատարելագործումն է։

Կառավարման բոլոր մարմինների գործունեությունը պետք է նպատակամղվի հումքի և էներգիայի արտադրական պոտենցիալի առավել լրիվ օգտագործմանը։ Հարկ է նաև հիշել աշխատանքային ռեսուրսների նկատմամբ խնայողական վերաբերմունքի մասին։ Չէ որ տասնմեկերորդ հնգամյակում աշխատունակ տարիքի բնակչության թվի աճը, տասներորդ հնգամյակի համեմատությամբ, զգալիորեն պակաս է լինելու։ Այդ պակասը կարող է փոխհատուցվել միայն աշխատանքի արտադրողականության լրացուցիչ աճով, որը պետական կառավարման բոլոր մակարդակների մարմիններից կպահանջի աշխատանքի կազմակերպման բարելավմանը միտող հետագա ջանքեր։

Կուսակցության առաջադրած խնդիրների լույսի ներքո ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման վճռական գործոններից մեկը գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է, առանց որի անհնար է էկոնոմիկայի փոխադրումը ինտենսիվ զարգացման ուղու վրա։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում, արտադրության

հետ գիտության սերտ ինտեգրացումը արդի դարաշրջանի հրամայական պահանջն է։ Ուստի ժողովրդական տնտեսությունն անհրաժեշտ գիտական մշակումներով ապահովելու, դրանք ներդնելու նպատակով գիտական հաստատությունների աշխատանքը պետք է դառնա կառավարման մեխանիզմի անքակտելի մասը։

Սոցիալիստական արտադրության, ինչպես նաև ամբողջ ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման ողջ պրոցեսը, նրա բոլոր ուղիներն ու միջոցները կառավարման գործում անիմաստ են՝ առանց աշխատավորների նախաձեռնության և ստեղծագործական ակտիվության։ Աշխատավորական կոլեկտիվների դերի մեծացումը կառավարման և պլանավորման, կադրերի պատրաստման հարցերի լուծման, աշխատավորության աշխատանքի և կենցաղի բարելավման, աշխատանքային կարգապահության ամրապնդման ու աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման գործում նշանակում է արտադրության կառավարմանը աշխատավորների մասնակցության այնպիսի դեմոկրատական ձևերի զարգացում, ինչպիսիք են կոլեկտիվների ընդհանուր ժողովները, մշտական գործող արտադրական խորհրդակցությունները, սոցիալիստական մրցությունը։ Արդյունավետ սոցիալիստական տնտեսավարումը աներևակայելի է առանց կոլեկտիվի վրա հենվելու, առանց գործի նկատմամբ իրոք հոգատար վերաբերմունք, տնտեսական կուլտուրա դաստիարակելու, առանց յուրաքանչյուրի աշխատանքի բարձր որակի։ Դա պահանջում է հստակ կազմակերպվածություն, անհամատեղելի է թափթփվածության, կարգապահության խախտումների հետ։ Իր հերթին, տնտեսական մեխանիզմի կատարելագործման խնդիրները կառավարչական կադրերին նոր պահանջներ են ներկայացնում։ Դրանք վերաբերում են գործունեության բուն բովանդակությանը, մեթոդներին ու ոճին, կառավարչական կադրերի հոգեբանության վերակառուցմանը։ Պահանջվող իրազեկությունը, գաղափարաքաղաքական մտահորիզոնի ընդլայնումը, մարդկանց հետ աշխատելու հմտությունը պետք է զուգակցվեն գործարարության, հեռանկարը տեսնելու ունակության, եռանդի ու հաստատակամության զարգացման հետ։ Կյանքը պահանջում է մշակել աշխատանքի այնպիսի ոճ, որում կատարողականությունը, կարգապահությունը օրգանապես ներդաշնակվեն համարձակ նախաձեռնության և ձեռներեցության հետ։

Խոսելով այս հարցերի կարևորության մասին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում շեշտեց. «Անհրաժեշտ է բարձրացնել բուն աշխատավոր մասսաների ակտիվությունը։ Դա այսօր կուսակցական կոմիտեների, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների կարևորագույն խնդիրն է։ Կուսակցության գաղափարները, պլանները, կոչերը, ինչպես հայտնի է, նյութական ուժ են դառնում, երբ տիրապետում են մասսաներին։ Այժմ հատկապես կարևոր է ու հարկավոր, որպեսզի յուրաքանչյուր աշխատավոր հասկանա, որ պլանի կատարումը կախված է նաև իր աշխատանքային ներդրումից, որ ամենքը լավ հասկանան այն պարզ ճշմարտությունը, թե որքան մենք լավ աշխատենք, այնքան լավ կապրենք։ Ինչպես շեշտել է Լենինը, «որքան լայն է մեր պլանների, մեր արտադրական խնդիրների մասշտաբը, այնքան ավելի շատ պիտի լինեն մարդիկ, որոնց միլիոններով պետք է ներգրավել այդ խնդիրների լուծմանն ինքնուրույն կերպով մասնակցելու համար»։

Իսկ դա նշանակում է, որ անհրաժեշտ է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացում՝ դրա ամենալայն իմաստով, այսինքն՝ աշխատավոր մասսաների ավելի ու ավելի ակտիվ մասնակցություն պետական ու հասարակական գործերի կառավարմանը»։

---

# ԱՌՕՐԵԱԿԱՆ ԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ԻՄԱՑԱԲԱՆԱԿԱՆ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Մ. Ի. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ հատուկ ուշադրություն դարձրեց ողջ կատարվածի իմաստավորմանը, կյանքի նոր երևույթների ընդհանրացմանը, մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացմանը։ Հասարակական հետաքրքրություն ներկայացնող հրատապ հարցերից է մասսայական առօրեական գիտակցության պրոբլեմը։

Մասսայական առօրեական գիտակցության ճանաչողական հնարավորությունների վերլուծության ելակետային դրույթը հավաստումն է այն հանգամանքի, որ դրա բովանդակությունը ձևավորվում է անհատների նյութական ու հոգևոր անմիջական գործունեության հիման վրա։ Չնայած առօրեական գիտակցության բովանդակության առանձին տարրեր ամենևին էլ ոչ միշտ (և նույնիսկ մեծ չափով) ձեռք են բերվում դրա կրողների անձնական փորձով, հաճախ փոխառվում են այլոց, նախորդ սերունդների փորձից (ինչպես և գիտական գիտելիքների ոլորտից), այնուամենայնիվ, դրա բովանդակության ընդլայնումը, հարստացումը միշտ էլ բնորոշվում են ինքնագիտակցության, այսինքն՝ ռեֆլեքսիայի բացակայությամբ։ Դրանով իսկ առօրեական գիտակցությունն սկզբունքորեն տարբերվում է գիտատեսական գիտակցությունից, որի մեջ, ինչպես իրավամբ նշում է ակադեմիկոս Տ. Ի. Օյզերմանը, «ոչ միայն օբյեկտիվ իրականությունը— բնական կամ սոցիալական, այլև դրա արտացոլումը ենթարկվում են վերլուծության, որն անջատում է ոչ ճշմարտից... Ուստի գիտությունն իրենից ներկայացնում է հատուկ տեսակի արտացոլում, որն ուսումնասիրության և ստուգման իր մեթոդների օգնությամբ կազմում է մի յուրահատուկ տեսական ֆիլտր, ինչը, ըստ երևույթին, չի կարելի ասել հասարակական գիտակցության ձևերի մասին, եթե դրանք չեն դառնում հասարակական կեցության ճանաչման յուրահատուկ գիտական ձևեր» (Ойзерман Т. И., Проблемы историко-философских наук. М., 1969, с. 77).

Մասնավորապես, առօրեական գիտակցության շրջանակներում ընթացող մտածողական պրոցեսին բնորոշ է աբստրահման ոչ բարձր աստիճանը, դրա օբյեկտիվ բովանդակության և սուբյեկտիվ զգացման ոչ մասնատվածությունը, ակներևությունը, պատկերավորությունը և, միաժամանակ, սխեմատիզմը։ Իր բովանդակությամբ այն հիմնականում դուրս չի գալիս անհատների ամենօրյա անմիջական գործունեության շահերի շրջանակներից։ Եվ նույնիսկ դրա մեջ գիտական գիտելիքի առանձին տարրեր ներառնելը (մի բան, որը հատկապես բնորոշ է ժամանակակից գիտակցությանը) ենթադրում է դրանց ընկալումը մարդու ամենօրյա փորձի մակարդակով ու համակարգում։

Եվ, այնուամենայնիվ, առօրյական գիտակցությունն ընդգրկում է մարդու առարկայական գործունեության ընթացքում կուտակված պատմական փորձը և դրա համար անհրաժեշտ հմտությունները, որոշակիորեն գործելու կարողությունը։ Այն ընդգրկում է նաև մարդկանց որոշակի սոցիալական հանրության, դասակարգերի, հասարակության սոցիալական խավերի ու ենթախավերի մշակած ավանդույթները, մարդկանց վարքի նորմերն ու չափանիշները, նրանց

գործողության գնահատականները, նրանց պատկերացումը շրջապատող աշխարհի, իրենց իսկ մասին, աշխարհում իրենց տեղի, նյութական ու հոգևոր պահանջմունքների, հետաքրքրությունների մասին և այլն։

Առօրեական գիտակցության որակական բնութագրի ձևավորման համար մեծ դեր ունի հասարակական հարաբերությունների, գիտության, տեխնիկայի, կուլտուրայի զարգացման ընդհանուր մակարդակն ու բնույթը։ Այդ առումով ոչ պակաս կարևոր են նաև բնակչությանը ավելի լայնորեն մասսայական ինֆորմացիա տալու աստիճանը, այդ ինֆորմացիայի բնույթը և բովանդակությունը։ Առօրեական գիտակցության ճանաչողական հնարավորությունները բնորոշվում են մտահորիզոնի որոշակի սահմանափակությամբ, նեղությամբ, որի շրջանակները պայմանավորվում են անհատի անձնական փորձով կամ նրա մերձավոր շրջապատի փորձով։

Նկատենք, որ առօրեական գիտակցության ճանաչողական հնարավորությունների հարաբերական սահմանափակությունը պայմանավորված է մարդկային գործունեության սուբյեկտի ռեալ մակարդակի բազմազանությամբ, սուբյեկտ, որը հանդես է գալիս, մի կողմից, որպես հասարակություն՝ ամբողջությամբ վերցրած, մյուս կողմից՝ եզակի անհատներ, որոնց համար չի պահանջվում գիտելիքների միատեսակ աստիճան նույնիսկ նրանց գործունեության անմիջական առարկայի վերաբերյալ։ Ամենօրյա պրակտիկ գործունեության համար բավական են լոկ որոշակի քանակությամբ դրական գիտելիքներ, որոնցում ամրապնդված են իրերի ու երևույթների սոսկ այն հատկանիշները, որոնց հետ ծանոթանալն անհրաժեշտաբար թելադրված է անհատների կենսական պահանջմունքներով։

Բայց դա ամենևին էլ չի նշանակում, թե էմպիրիկ գիտելիքների մակարդակով չեն կատարվում իրականության ընկալվող երևույթների լուրջ ընդհանրացումներ, իմաստավորումներ։ Իրենց բովանդակալից իմացաբանական կառուցվածքով էմպիրիկ գիտելիքները, չնայած հանդես են գալիս որոշակի ակնառու պատկերացում-սխեմաների տեսքով, այնուամենայնիվ, անհրաժեշտաբար ենթադրում են որոշակի քանակի դատողություններ ու մտահանգումներ, որոնց օգնությամբ էլ ստեղծվում և զարգանում է ողջ էմպիրիկ միտքը։

Ուշադրություն դարձնելով առօրեական գիտակցության տրամաբանական-իմացաբանական առանձնահատկություններին և բնորոշելով դրա ճանաչողական հնարավորությունները, Կանտը խիստ որոշակի նշել է, որ «մարդկային բանականությունը ամենաառօրեական դատողության ժամանակ հեշտությամբ կարող է հասնել ճշտության և օբյեկտիվության բարձր աստիճանի»։ Չի կարելի չհամաձայնել Կանտի այս չափազանց էական եզրակացությանը։ Հազարամյակներ շարունակ մարդու միտքը զարգացել է բացառապես առօրեական գիտակցության շրջանակներում։ Եվ դա հնարավոր է եղել սոսկ այն բանի հետևանքով, որ մարդու դատողության ընդհանրացնող գործունեությունը հնարավոր է նաև իր իսկ սկզբունքների խոր իմաստավորումից անկախ։ Նույնիսկ այժմ, երբ գիտական իմացությունն էական տեղ է գրավում հասարակության կենսագործունեության մեջ, մարդու վարքի հիմնական ոլորտները խարսխվում են բացառապես գիտատեսական գործունեությունից դուրս ստացած գիտելիքների վրա, առօրեական գիտակցության շրջանակներում։ Անհատի նորմալ գործելն այստեղ չի պահանջում շրջապատող աշխարհի վերաբերյալ խոր գիտելիքներ։

Սակայն պրոբլեմի էությունն այն է, որ մարդկային գործունեության ամեն մի ոլորտ, որքան էլ այն պարզ ու տարրական լինի իր կառուցվածքով, միշտ էլ, այնուամենայնիվ, պահանջում է իր գործունեության առարկայի որոշակի ընդհանրացում և իմաստավորում։ Բանն այն է, որ մարդու առարկայական գործունեությունն անհատականությունների հաղորդակցումն է՝ միջնորդավորված հասարակական-պատմական կուլտուրայի առարկաներով։ Իսկ դա ենթադրում է անհատի մտքի որոշակի նահանջ անմիջականորեն նրան տրված առարկայական գործունեության աշխարհից, մտքի որոշակի հարաբերություն այդ աշխարհի՝ որպես իր գործունեության նկատմամբ։ Նշանակում է, մարդու բուն առարկայական գործունեությունն իր էական բնորոշմամբ են-



թադրում է և պահանջում ո՛չ միայն ընկալվող աշխարհի որոշակի ընդհանրացում և իմաստավորում, այլև մարդու ինքնագիտակցական, նրա ճանաչողական ջանքերի մեթոդաբանության նկատմամբ գիտակցական վերաբերմունքի ունակություն։ Միմյանց ճանաչելու բուն փաստի, համատեղ կենսագործունեության անհրաժեշտության մարդու գոյաձևի մեջ է արմատավորված խոր կապը առօրեական գիտակցության և գիտական-տեսական գիտակցության, որոնք որպես բացարձակ հակադրություններ են հանդես գալիս միայն վերացականորեն, իսկ իրականում միշտ մեկն անցնում է մյուսին։

Առօրեական գիտակցության մակարդակով (քանի որ մարդու կենսագործունեությունն իրականացվում է գերազանցապես կենսական առտնին իրադրության շրջանակներում) որպես կանոն ձևավորվում և իմաստավորվում են սոցիալական պրակտիկայի առջև ծառացած այն նոր, կենսականորեն անհրաժեշտ խնդիրները, որոնք պահանջում են անհետաձգելի, բայց և ճիշտ որոշումներ ու լուծումներ։ Մարդու ակտիվ, նպատակամետ գործունեությունը, տվյալ դարաշրջանի սոցիալական պրակտիկայի պահանջներին համապատասխան իրերի ու երևույթների աշխարհի վերափոխումը— չափազանց էական, կենսականորեն անհրաժեշտ այս հարցերը մարդկության բանականության առջև ծագում ու լուծվում են ամենից առաջ առօրեական գիտակցության, էմպիրիկ գիտելիքների մակարդակով։

Հիրավի, աշխատավորական զանգվածների մասնակցության պրակտիկ անհրաժեշտությունը, օրինակ, մեր դարաշրջանի ազգային-ազատագրական հեղափոխություններին՝ բուն մասսաների համար նախապես հանդես է գալիս իբրև սոցիալ-հոգեբանական որոշակի տրամադրվածություն, նրանց կողմից սևեռվում իբրև անհատների մեջ անմիջականորեն ձևավորվող հոգևոր-գործնական վերաբերմունք սոցիալ-քաղաքական իրականության նկատմամբ, այսինքն՝ միայն մասսայական, առօրեական գիտակցության մակարդակով։ Հետևաբար, առօրեական գիտակցության հետաքրքրության առարկան ոչ միայն ամենօրյա կենցաղային պրոբլեմներն են, այլև հասարակական կյանքի ամենաբարդ երևույթները, որոնցում անհնար է կողմնորոշվել առանց մարդկային բանականության վերլուծական ու համադրական գործունեության։ Ուստի գիտատեսական գիտելիքի կարևորության ճանաչումն ամենևին էլ չի նշանակում առօրեական գիտակցության ճանաչողական հնարավորությունների նվազեցում կամ ժխտում, առավել ևս, որ բուն մասսայական գիտակցության շրջանակներում են իրենց արտահայտությունը գտնում ո՛չ միայն մասսաների ամենօրյա կենցաղային հոգսերը, այլև նրանց սոցիալ-քաղաքական իդեալներն ու նպատակները, որոնք երբեմն պահանջում են դրանց ավելի բարձր մակարդակի իմաստավորում, սկզբունքային եզրակացություններ։

Առօրեական գիտակցության մեջ դրոշմված է մասսաների փորձը, կուտակված են պատմական զարգացման ընթացքում մարդկության մշակած դրական գիտելիքները։ Ուստի էմպիրիկ գիտելիքները բովանդակում են խոր միտք, արդյունք են մարդու բանականության կողմից աշխարհի ընդհանրացման ու իմաստավորման, բանականություն, որի շրջանակներում էլ իրականացվում է մարդկանց կենսագործունեությունը և դա, անշուշտ, ունի որոշակի գործնական նշանակություն, չնայած այդ գիտելիքները չեն կրում տրամաբանորեն սիստեմավորված այնպիսի բնույթ, որն առկա է իրականության իմաստավորման գիտատեսական մակարդակում։

Առօրեական գիտակցության ներքին կառուցվածքի այդ բարդությամբ էլ պայմանավորված է այն հանգամանքը, որ տեսական մտքի զարգացման նախորդ փուլի արդյունքները հասարակական կյանքի նկատմամբ նոր հայացքների, սոցիալական նոր տեսությունների, գիտական նոր պատկերացումների, փիլիսոփայական ու սոցիալ-քաղաքական նոր կոնցեպցիաների կազմավորման միակ գաղափարական աղբյուր չեն։

Դարաշրջանի սոցիալ-քաղաքական տեսական միտքը սնող ոչ պակաս կարևոր ու ակտիվ հոգևոր գործոն է հասարակության հոգևոր կյանքի մթնոլորտը, հասարակության գաղափարական խմորումը, այսինքն՝ մասսայական, առօրեական գիտակցության մակարդակով ծագող նոր գաղափարները, նոր

հայացքներն ու պատկերացումները հասարակական կյանքի վերաբերյալ, որոնց բովանդակությունն այսպես թե այնպես արտահայտում է գոյություն ունեցող սոցիալ-քաղաքական իրականության զարգացման ընդհանուր միտումները։

Հասարակական դասակարգերի և սոցիալական մյուս հանրությունների սոցիալական պրակտիկայի հիմնական պահանջմունքների ազդեցությամբ էլ բուն առօրեական գիտակցության մակարդակով ծագում են նախապես նոր գաղափարներ ու պատկերացումներ հասարակական կյանքում կատարվող պրոցեսների մասին։ Չտեսականացված գիտելիքի ձևով իսկ իրականացվում են տվյալ դարաշրջանի, տվյալ հասարակական դասակարգերի, սոցիալական խավերի և հասարակության միջնախավերի սոցիալ-դասակարգային փորձի նախնական ընդհանրացումները, չնայած այդ ողջ մտավոր նյութն այստեղ չի ստանում հետևողական տրամաբանական ձևավորում ու սիստեմավորում։

Առօրեական գիտակցության հոգևոր զինանոցից ամեն մի սոցիալական տեսություն վերցնում է միայն այն գաղափարներն ու պատկերացումները, որոնք ավելի են համապատասխանում հասարակական այն դասակարգերի կամ սոցիալական խավերի սոցիալ-քաղաքական նպատակներին ու գաղափարներին, ում արմատական շահերը կոչված է արտահայտելու տվյալ սոցիալական տեսությունը։ Մասնավորապես, մարքսիզմն անտարբեր չէ այն նոր գաղափարների ու պատկերացումների նկատմամբ, որոնք ծագում են առօրեական գիտակցության մակարդակով։ Մարքսիզմի ստեղծագործական բնույթը որոշող հանգամանքներից մեկի էությունն էլ հենց այն է, որ մարքսիզմն ընդհանրացնում է աշխատավորական զանգվածների հեղափոխական շարժման դրական փորձը, յուրացնում և իմաստավորում մասսայական գիտակցության մակարդակով ծագող և աշխատավորական զանգվածների արմատական շահերն արտահայտող սոցիալ-քաղաքական նոր գաղափարներն ու պատկերացումները։

Առօրեական գիտակցության էական հատկանիշներից է նաև դրա դինամիկության բարձր աստիճանը։ Այս հատկությունը պայմանավորված է նրանով, որ պրակտիկ գործունեության ողջամտությունը, անմիջականորեն արտացոլելով սոցիալական իրականության հարափոփոխ կենսական իրադրություններն ու պրոցեսները, ինքը ևս մշտապես փոփոխվում է։ Այդ իսկ պատճառով մասսայական գիտակցությունն իր գաղափարական բովանդակությամբ շարունակում է մեր օրերում զգալի դեր խաղալ հասարակական կարծիքի ձևավորման գործում։

Մասսայական գիտակցությունը հանդես է գալիս ո՛չ միայն որպես տեսական մտքի հարմարեցման ինչ-որ հանրամատչելի ձև, որն այդ միտքը հասանելի է դարձնում լայն մասսաներին, այլև որպես հոգևոր մթնոլորտ, որի ազդեցությամբ հասարակական տարբեր դասակարգերի ու սոցիալական խավերի գաղափարախոսները ձևավորում են իրենց փիլիսոփայական ու սոցիալ-քաղաքական ըմբռնումները։ Զգալի չափով այս սնուցիչ հողի վրա են ձևավորվում, մասնավորապես, հասարակական զարգացման ընդհանուր միտումների և հեռանկարների մասին արդի ոչ մարքսիստական սոցիալ-քաղաքական շատ ուսմունքներ։ Ուստի այդ սոցիալական տեսությունների սոցիալ-քաղաքական բովանդակության և գաղափարախոսական ուղղվածության բացահայտումը պահանջում է որոշել դրանց գաղափարական հաջորդայնությունը ոչ միայն անցյալի ու ներկայի փիլիսոփայական կամ սոցիալ-քաղաքական որոշակի ուսմունքների, այլև հասարակության սոցիալական այն խավերի հոգևոր-հոգեբանական բնութագրության հետ, որոնց է կողմնորոշվում այդ ըմբռնումը՝ արձագանքի ակնկալիքով։

Դասակարգայնորեն տրոհված սոցիալական կառուցվածքներում մասսայական գիտակցությունը և հասարակական տրամադրությունները, չնայած դրանք ենթակա են հասարակության քաղաքական վերնաշենքի ձեռնածությանը, այնուամենայնիվ իրացվում են տարբեր սոցիալական բազայի վրա։ Յուրաքանչյուր հասարակական դասակարգի կամ հասարակության սոցիալական



խավի սոցիալական պրակտիկայի պահանջմունքները, դրանց սոցիալ-հոգեբանական տրամադրվածությունը իրենց կնիքն են դնում նրանց գիտակցության մեջ ներդրվող նմանակ մտածողության վրա։ Դրանք ծնում են համապատասխան գաղափարներ ու պատկերացումներ, որոնցում արտացոլվում է գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական իրականության նկատմամբ բնակչության այդ խմբերի վերաբերմունքի բնույթը։

Այստեղից էլ ապագա հասարակական կացության սոցիալ-քաղաքական պրոեկցիաների, սխեմաների ու մոդելների՝ արդի կապիտալիզմի երկրներում լայնորեն տարածված ռեալ բազմազանությունը, սխեմաներ ու մոդելներ, որոնք իրենց սոցիալական իմաստով և սոցիալ-քաղաքական բովանդակությամբ սոցիալ-քաղաքական պատրանքների և գաղափարախոսական բնույթի հասարակական նախապաշարումների շրջանակներից այն կողմ չեն անցնում։ Դրանց բազմակիությունը մեծապես պայմանավորված է նրանով, որ դրանք բոլորն էլ կրում են առօրեական գիտակցության, իրականության մինչտեսական գիտակցման ու իմաստավորման մակարդակով ձևավորվող պատկերացումների ու սոցիալական պատրանքների հետ ունեցած իրենց կապի կնիքը։

Առօրեական գիտակցության, դրա բովանդակության որակը բնորոշող էական հատկանիշներից են սկզբունքային էկլեկտիզմը, դրա ներքին կառուցվածքի հակասականությունը, սոցիալական նոր փորձը յուրացնելու և վերամշակելու՝ դրա սահմանափակ ունակությունը, չնայած, ինչպես նշվեց վերևում, այն բավականաչափ շարժունակ է, ենթակա սոցիալական իրականության ամեն մի շատ թե քիչ նշանակալի փոփոխության ազդեցությանը։

Առօրեական գիտակցությունն արտացոլում է հասարակական դասակարգերի սոցիալական փորձը, գոյավորվում այդ դասակարգերի սոցիալական փորձի բազայի վրա։ Ուստի և կասկածից վեր է, որ դասակարգային-հակամարտական հասարակական կառուցվածքների պայմաններում այն միշտ էլ ներառնում է շահագործման ու սոցիալական կեղեքման այլ ձևերի դեմ դասակարգային բողոքի շարժառիթը՝ քննադատական վերաբերմունքը գոյություն ունեցող հասարակարգի նկատմամբ։ Դրա օրինակ կարող են ծառայել մասսայական գիտակցության մակարդակով երևան եկող հակաիմպերիալիստական տրամադրության, բողոքի դրսևորումները, որոնք մեր օրերում բնորոշում են շրջապատող սոցիալական իրականության նկատմամբ արդի կապիտալիստական աշխարհի հասարակայնության ամենալայն խավերի վերաբերմունքը։ Ընդ որում նման տրամադրությունը համակում է հասարակության ամենատարբեր սոցիալական խմբերի ներկայացուցիչների աշխարհընկալումը։

Կեցության՝ սոցիալ-քաղաքական առկա եղանակի նկատմամբ այսպիսի բացասական վերաբերմունքը որոշակի պայմաններում հնարավորություններ է ընձեռում ստեղծելու հակաիմպերիալիստական լայն ճակատ։ Սակայն այդ վերաբերմունքն ինքնին չունի հստակ արտահայտված միտում և պատմական տարբեր իրադրություններում ամենևին էլ միանշանակ չէ իր սոցիալ-քաղաքական հետևանքներով։ Մասսաների առօրեական գիտակցության քննադատական «ոչը» դասակարգային-տրոհված սոցիալական կառուցվածքների պայմաններում և, հատկապես, արդի կապիտալիստական հասարակության մեջ դրսևորում է որոշակի որակ, որը կարելի է նշել որպես գաղափարախոսական յուրատեսակ բազմարժեքայնություն։ Առօրեական գիտակցության շրջանակներում տրամաբանական սիստեմատիկության բացակայությունը, դրանում իրենց բովանդակությամբ տարբեր գաղափարախոսական ֆրագմենտների էկլեկտիկ գոյակցությունը հնարավոր են դարձնում սոցիալ-քաղաքական իրականության նկատմամբ եղած քննադատական վերաբերմունքը միացնել ոչ միայն հետևողական հեղափոխական եզրակացությունների, այլև գաղափարախոսական ձևակերպումների հետ, որոնք կա՛մ ուղղակի նպատակամղված են կապիտալիստական կարգի պահպանմանը, կա՛մ մասսաներին շեղում են սոցիալ-քաղաքական առկա հակասությունների հաղթահարման իրական ուղուց։

XX դարն առավել չափով է ցուցադրում առօրեական գիտակցության այդ գաղափարախոսական բազմարժեքայնության դրամատիկական հետևանքները։ Հակակապիտալիստական տարերային բողոքը, որը չի հենվում հասարակական

զարգացման օրենքների գիտական իմացության վրա, հավասար չափով միանում է թե՛ ձախ-էքստրեմիստական, և թե սոցիալ-ռեֆորմիստական գաղափարախոսական կառուցվածքների հետ։

Սույն հանգամանքը, անշուշտ, պետք է հաշվի առնել մասսաների հեղափոխական կարողությունը գնահատելիս։ Սակայն տվյալ դեպքում, մեզ համար կարևոր է մի այլ բան, այն է՝ վերը նշված արդի կապիտալիստական սոցիալ-քաղաքական իրականության նկատմամբ քննադատական վերաբերմունքի բազմարժեքայնությունը (որը ծնունդ է առօրեական գիտակցության եկլեկտային էկլեկտիզմի), տրամաբանական սիստեմատիկության բացակայությունը դրանում արդի սոցիալիստական ուտոպիաներ ծնող յուրատեսակ հող են, ուտոպիաներ, որ առաջ են քաշվում որպես գիտական սոցիալիզմի հակոտնյաներ։ Եվ օրինաչափ չէր լինի ենթադրել, թե մասսայական, առօրեական գիտակցության մակարդակով ստեղծված այդպիսի գաղափարախոսական ցնորքները ինքնաբերաբար դատապարտված են կործանման։ Հաճախ սոցիալ-քաղաքական պայմանները դրանց համար նախանշում են այլ ճակատագիր։

Հարկ է նշել, որ մասսայական քննադատական այդ տրամադրությունների ենթարկումը գոյություն ունեցող հասարակական կացության պահպանման շահերին ամենևին էլ ոչ միշտ է գաղափարախոսական ներգործության հետևանք։ Այն կարող է դառնալ արդեն մասսայական գիտակցության բովանդակության տրամաբանական կարգավորման ու սիստեմավորման բուն ակտի հետևանք։ Բանն այն է, որ մասսաների առօրեական գիտակցությունը միշտ էլ ներառում է ամենից առաջ տվյալ հասարակության ներսում տիրապետող ավանդական սոցիալական նորմերը, գաղափարախոսական բանաձևումները, սոցիալական պատրանքներն ու նախապաշարումները, որոնց ներքո էլ սիստեմավորման ու տրամաբանական ձևավորման պրոցեսում ի մի է բերվում մասսաների՝ անմիջական փորձի վրա աճող քննադատական վերաբերմունքը գոյություն ունեցող սոցիալ-քաղաքական իրականության նկատմամբ։ Ուստի նախքան այդ քննադատական վերաբերմունքը իր դրական դերը կխաղա մասսաների հեղափոխական պայքարում, պետք է խորտակվի կապերի այն սիստեմը, որը մասսայական գիտակցության մեջ տվյալ քննադատական վերաբերմունքը կմիացնի ավանդական բուրժուական պատրանքների և գաղափարախոսական բանաձևումների հետ։

Յուրաքանչյուր դարաշրջանի ինչպես գիտատեսական, նույնպես և էմպիրիկ գիտելիքների հոգևոր նախադրյալը նախորդ սերունդներից ժառանգած որոշակի մտավոր նյութն է։ Ընդ որում այդ նյութը մարդկանց նոր սերունդն ընկալում է սոցիալական նոր պրակտիկայի հիմնական պահանջմունքների դիտակետից, հասարակական այն դասակարգերի, սոցիալական խավերի և հասարակության ենթախավերի արմատական սոցիալ-տնտեսական ու քաղաքական շահերի դիտակետից, որոնց պրակտիկ գործունեությունը կազմում է պատմական նոր պայմանների հիմնական սոցիալ-քաղաքական բովանդակությունը։

Այստեղ հարկ է նշել, որ հասարակության մեջ նոր ապրելակերպի ու նոր մտածելակերպի արմատավորումը իրենց իսկ մարդկանց կողմից շատ բանով չգիտակցվող օբյեկտիվ պրոցես է։ Որպես կանոն, մարդկանց մեջ պահանջ չի առաջանում կտրուկ կերպով փոխելու իրենց կենսագործունեությունը, մտածելակերպը, առարկայանյութական գործունեության եղանակը։ Բացի դրանից, այն, ինչ դառնում է սովորություն, դժվարությամբ է ենթարկվում մարդու վերահսկողությանը, իսկ երբեմն էլ ամենևին չի ենթարկվում և այդ պատճառով էլ գործում է ինքնաբերաբար։

Սովորության ուժն այստեղ հանդես է գալիս որպես մարդկային գիտակցության շարժման ու զարգացման ողջ մեխանիզմի էական տարր։ Ավանդույթի, սովորության ուժի ազդեցությամբ մարդու գիտակցությունը որոշ ժամանակ գործում է իներցիայով։ Այլ կերպ ասած, նույնիսկ որակապես նոր իմացական մոտեցում, նոր մտածողական եղանակներ պահանջող նոր իրադրություններում, նոր կենսապայմաններում մարդու գիտակցությունն ավանդույթի



ուժի ազդեցությամբ, ընթանալով իներցիայով, շարունակում է կիրառել ճանաչողական կայունացված տրաֆարետներ։ Ենթարկվելով այդ իներցիային, մարդու գիտակցությունն աշխարհի իրերի ու երևույթների վերլուծության նկատմամբ սկզբունքորեն նոր մոտեցում պահանջող պայմաններում ինչ-որ ժամանակ գործում է սովորական, նախորդ սերունդներից ժառանգած եղանակով, ավանդական միջոցների հիման վրա։

Գիտակցության այդ իներցիականության աստիճանը (ընդ որում դա հավասարապես վերաբերում է ինչպես գիտատեսական մտածողությանը, այնպես էլ էմպիրիկ գիտելիքներին) ամենից առաջ պայմանավորված է սոցիալական փոփոխությունները տեմպերով, խորությամբ ու սրությամբ, իրականության իմաստավորման հին ձևերի ու եղանակների և պատմական նոր իրադրության ճանաչման խնդիրների միջև եղած կոնֆլիկտի խորությամբ, և, վերջապես, պայմանավորված է իրականության իմաստավորման հին ձևերը նորերով փոխարինելու գործնական անհրաժեշտության աստիճանով։ Քանի դեռ նոր նյութը, նոր կենսավիճակը մարդկանց չեն պարտադրել մտավոր գործողությունների նոր եղանակ, այսինքն՝ նրանց չեն պարտադրել մտածելու նոր կատեգորիաներով, նոր հասկացություններով, նորովի ընկալելու աշխարհը, մարդկային միտքը կշարժվի ավանդական՝ ճանաչողական նմանակների կուլտուրայով սրբագործված շրջանակներում։

Իներցիականությունն ինքնին, որպես մարդկային գիտակցության շարժման մի հատկանիշ, չի կարելի համարել զուտ բացասական, միշտ և ամենուրեք գիտելիքների առաջընթաց աճն արգելակող գործոն։ Ճիշտ այդպես էլ այն չի կարելի հանգեցնել միայն զուտ անհատի հոգեբանական սովորույթի, այսինքն՝ այն դիտարկել անհատական հոգեբանության մակարդակով։ Այս առնչությամբ նշենք, որ իներցիականությունը գիտելիքների շարժման ու զարգացման բնական՝ մարդկային գիտակցությանը հատուկ եղանակներից մեկն է։ Դրա արմատները գտնվում են, ամենից առաջ, կուլտուրական արժույթների փոխանցման մեջ, որն ապահովում է մարդկային կուլտուրայի նվաճումների պահպանումը նրա պատմական զարգացման ընթացքում։ Իսկ այդ մեխանիզմի գործառնության բուն հնարավորությունը պայմանավորված է նրանով, որ մարդկային գործունեության հաջողության համար այն պետք է մեծապես կրի ստանդարտացված բնույթ։

Մարդկանց համատեղ կենսագործունեությունը պատմական անհրաժեշտությամբ պահանջել է մշակել գործունեության որոշակի ստանդարտներ, աշխատանքային որոշակի հմտություններ ու վարքի նորմեր, որոնք միատեսակ նշանակություն ունենան կոլեկտիվի, հասարակության յուրաքանչյուր անդամի համար։ Այլապես մարդիկ չէին կարողանա համաձայնեցնել իրենց գործողությունները։

Առարկայական-նյութական գործունեության՝ այս եղանակով մշակված աշխատանքային հմտությունները, ստանդարտներն ու նմանակները պատմական անհրաժեշտությամբ փոխանցվում են սերնդե-սերունդ, ամեն անգամ ամրապնդելով նոր, հաջորդ սերնդի գործունեության հիմքը։

Բնականաբար, այս երևույթը միշտ էլ դրոշմվել է մարդկային՝ ինչպես անհատական, այնպես էլ հասարակական գիտակցության մեջ, որոշակիորեն նրան հաղորդելով ստանդարտացված, նմանակված բնույթ։ Գիտելիքի նմանակը մարդկային գիտակցությանը արտաքնապես կցված հատկանիշ չէ։ Այն ներհատուկ է մարդկային գիտակցությանը, դրա անքակտելի տարրն է։ Այս յուրօրինակ առանձնահատկությունն էլ հնարավորություն է ընձեռում մի սերնդից մյուսին փոխանցելու մարդկության մշակած կոլեկտիվ փորձը։

Ուստի գիտակցության նմանակության և իներցիականության պահպանողականության կամ առաջադիմականության վերաբերյալ վերացարկված հարցադրումը ինքնին օրինաչափ չէ։ Դա, ամենից առաջ, մարդկային գիտելիքների գոյության ու զարգացման եղանակներից մեկն է, որը պարունակում է թե՛ դրական հատկանիշներ, թե՛ պահպանողականության տարրեր։ Գործառնական իմաստով գիտելիքի նմանակներն անհատին օգնում են կողմնորոշ-

վելու կյանքի իրադրություններում, որոշակիորեն նպատակամղում են անհատի գործունեությունը, գործողություններն ու վարքը։ Թե՛ գիտելիքների նմանակները, թե՛ այդ հիման վրա գոյավորված մարդկային գիտակցության զարգացման իներցիականությունը, հանդես գալով որպես հասարակության հոգևոր կյանքի ոլորտում պատմական հաջորդականությունն ապահովող որոշակի նախադրյալ, անպայման կատարում են սոցիալական ու իմացաբանական դրական դեր։ Ուստի այն հանգամանքը, որ ամեն մի նորույթ, նախքան ընդհանուրի կողմից ընդունվելը, պետք է ապացուցի իր համապատասխանությունը տվյալ դարաշրջանի գործունեության հիմքում ընկած ելակետային նմանակներին ու արժույթային կողմնորոշումներին, վիթխարի նշանակություն ունի ամբողջական սոցիալական օրգանիզմի, հասարակության նորմալ գործառնության համար։ Որոշակի «նմանակության» պահանջը, որ հասարակությունը ներկայացնում է մարդկային առարկայական գործունեության, հատկապես կուլտուրական ստեղծագործության ամեն մի փաստի, սոցիալական անհրաժեշտ պաշտպանություն է նորը «ստեղծողի» անհատական կամայականությունից, կուլտուրական նիհիլիզմից։

Այդ պայմաններում հասարակության հոգևոր կյանքում, մարդկության հիմնարար կուլտուրական կողմնորոշման մեջ կատարված իսկական հեղափոխական տեղաշարժերը հին կուլտուրայի, հասարակական հին աշխարհայեցողությամբ ընկալվում են որպես հակակուլտուրական գործողություն, որպես կուլտուրայի ճգնաժամ, նրա մահ։ Բնականաբար, իներցիականությունն այստեղ խաղում է մի այնպիսի գործոնի դեր, որը կասեցնում է մարդկային հասարակության զարգացումը։ Բայց երբ կուլտուրական նոր արժույթներն ու կողմնորոշումները բավականաչափ արմատավորվում են ամենօրյա կյանքում, մարդկանց հասարակական գիտակցության մեջ իներցիականությունը կրկին դառնում է զարգացման անհրաժեշտ պայման, կուլտուրական ստեղծագործության ընդհանուր կարևորության չափանիշ։

---



# ԱՆԹԱՓՈՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԲՆՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՅՄԱՆՆ Է

**Ա. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ**
Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

ՈՐՔԱՆ ԱՎԵԼԻ ԼԱՅՆ ու ավելի խորն է ծավալվում գիտատեխնիկական հեղափոխությունը, այնքան ավելի է մեծանում նրա տնտեսական և սոցիալական արդյունքը։ Սակայն այդ պրոցեսն ուղեկցվում է կենսոլորտի վատթարացմամբ՝ օդի, ջրի և հողի աղտոտմամբ, որը բացասաբար է ներգործում մարդկանց առողջության, բույսերի, կենդանիների և միկրոօրգանիզմների կենսագործունեության վրա։ Հսկայական քանակությամբ բազմատեսակ նոր քիմիական նյութերի սինթեզումը, արտադրության մեջ և կենցաղում դրանց ներդրումը, արտադրության անընդհատ աճող թափոններով բնության աղտոտումը, քիմիական պարարտանյութերի և թունաքիմիկատների օգտագործումը հանգեցրել են կենսոլորտի էական փոփոխության։ Այլ կերպ ասած, առկա է հակասությունը մարդու՝ որպես գիտատեխնիկական հեղափոխության սուբյեկտի, գործունեության և նրա հետևանքների միջև։

Ո՞րն է ելքը։ Ինչպե՞ս հաղթահարել այդ հակասությունը։

Այդ հարցը մեթոդաբանական և տեսական առումով քննարկելիս ելակետ է հանդիսանում բնության և բնօգտագործման մասին մարքս-լենինյան ուսմունքը։ Գոթայի ծրագրի քննադատություն նշանավոր աշխատության մեջ, քննադատելով գերմանական բանվորական կուսակցության ծրագրի լասալյան այն դրույթը, թե աշխատանքն է ամեն մի հարստության աղբյուրը, Կ. Մարքսը գրել է. «Բնությունը նույնչափ աղբյուր է սպառողական արժեքների (իսկ չէ որ հենց դրանցից է կազմված նյութական հարստությունը), որչափ և աշխատանքը, որը հենց ինքն էլ լոկ դրսևորումն է բնության ուժերից մեկի՝ մարդկային աշխատանքային ուժի» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, «Հայաստան» հրատ., 1978, էջ 9)։ Այսպիսով, Կ. Մարքսը բնությունը դիտել է որպես հարստության կարևոր աղբյուր։ Այս առումով բնության պահպանության և նրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդիրը հույժ կարևոր է դառնում ողջ մարդկության համար։ Այդ խնդիրը հատկապես հրատապ է արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, երբ էկոլոգիական պրոբլեմները ստացել են գլոբալ բնույթ։

Մարքսիստական-լենինյան քաղաքատնտեսությունը բնությունը դիտում է ոչ միայն որպես սպառողական արժեքների աղբյուր, որպես արտադրության պայման (արտադրական գործոն), այլև այնպիսի օբյեկտ, որի օգտագործումն արտադրության ցանկացած եղանակում պայմանավորված է տիրող արտադրահարաբերությունների բնույթով։

Կապիտալիստական արտադրահարաբերությունները պայմանավորում են բնության հարստությունների օգտագործման գիշատչական մեթոդների ան-

խուսափելիությունը, քանի որ տնտեսավարման լեյտմոտիվը ցանկացած եղանակով գերշահույթ ստանալն է։ Կապիտալիզմի համար բնորոշ են էկոնոմիկայի տարերային զարգացումը, արտադրության անարխիան և մրցակցային պայքարը, որոնք կործանարար ազդեցություն են ունենում բնության վրա։

Մեր օրերում գիտատեխնիկական առաջընթացի բացասական հետևանքները զարգացած կապիտալիստական երկրներում խիստ սուր բնույթ են ստացել։ Ամեն գնով առավել մեծ շահույթ ստանալու ձգտումը, անզուսպ կերպով շահի ետևից ընկնելը հանգեցնում է բնական ռեսուրսների գիշատչական շահագործման և անցյալում չտեսնված մասշտաբներով շրջակա միջավայրի հանցավոր թունավորման։ Շրջակա միջավայրի հետ կապված էկոլոգիայի պահանջների և հանրային պահանջմունքների նկատմամբ անմարդկային վերաբերմունքն ու մշտական քամահրանքը ստեղծել են մարդու առողջության համար վտանգավոր իրավիճակ։

ԱՄՆ-ում ապրում է հողագնդի բնակչության 6 տոկոսը, իսկ 1970-ական թվականների կեսերին նրան բաժին էր ընկնում շրջակա միջավայրի աղտոտման համաշխարհային ծավալի 60 տոկոսը (տե՛ս В. А. Веников, К. К. Зубанов. Энергетика СССР и США: актуальные проблемы. М., с. 26—27)։

Տոկիոյի մի խումբ գիտնականներ, ստուգելով Ճապոնիայի արդյունաբերական կենտրոնների և 13 պրեֆեկտությունների օդի փորձանմուշները, պարզեցին, որ երկրի խոշոր քաղաքներում օդային ավազանի աղտոտումը մետաղփոշով հարյուրապատիկ գերազանցում է թույլատրելի նորմաները։ Մինամատա քաղաքը դարձել է Ճապոնիայի «արդյունաբերական Հիրոսիման», իսկ «Մինամատայի հիվանդություն» տերմինն այժմ լայնորեն օգտագործվում է բժշկության մեջ՝ որպես արդյունաբերական թափոններով մարդկանց թունավորման հոմանիշ։ Հիշյալ քաղաքում քիմկոմբինատի տերերը, արհամարհելով նախազգուշական բոլոր միջոցները, հանցավոր թունավորման գնով հոգ են տարել միայն առավելագույն շահույթների մասին։ Երկար ժամանակ կոմբինատը օվկիանոսն էր թափում սնդիկով և մետաղով հագեցած կեղտաջրեր։ Դա հանգեցրեց հոգեկան ծանր հիվանդությունների և զոհերի։

Միանգամայն այլ է պատկերը սոցիալիզմի օրոք։ Սոցիալիստական հասարակությունում բնության պահպանությունը և նրա ռեսուրսների օգտագործումը կրում են պլանաչափ բնույթ։ Սոցիալիստական արտադրաեղանակի հիմնական տնտեսական օրենքի պահանջներին համապատասխան ամենից առաջ հաշվի են առնվում հասարակության շահերն ու պահանջմունքները։

Արտադրության միջոցների նկատմամբ սոցիալիստական սեփականությունը, որը միավորում է արտադրողներին, նշանակում է, որ հանրային վերարտադրության շարժիչ գործոնը ամբողջ հասարակության, ձեռնարկությունների կոլեկտիվների ու աշխատողների շահերն են, որոնք հաշվի են առնում իրենց գործողությունների ինչպես մոտակա, այնպես և հեռավոր հետևանքները։ Միաժամանակ դա նշանակում է բնական ռեսուրսների պլանաչափ, գիտակցված օգտագործում, որը բացառում է տնտեսավարման տարերային մեթոդները, բնական ռեսուրսների նկատմամբ գիշատչական վերաբերմունքը։

Արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականության, ժողովրդական տնտեսությունը պլանաչափորեն վարելու պայմաններում բնական ռեսուրսները վատնելու, կենսոլորտը վատացնելու սոցիալական պատճառներ չկան։ Սոցիալիզմի առավելությունների շնորհիվ արտաքին միջավայրը ոչ միայն պահպանելու, այլև լավացնելու լիակատար հնարավորություններ կան։ Բայց հնարավորությունը տակավին իրականություն չէ։ Այն իրականություն վերածելու համար պահանջվում է վիթխարի և բազմակողմանի աշխատանք։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո բնության պահպանումն ու նրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը դարձան կոմունիստական կուսակցության և սովետական պետության առաջնակարգ ուշադրության ու հոգատարության առարկա։ Մեր երկրում սահմանված է պետության և քաղաքացիների պատասխանատվությունը շրջակա միջավայրի պահպանման համար։ Այդ հարցերն արտացոլված են ՍՍՀՄ սահմա-



նադրության համապատասխան հոդվածներում։ 18-րդ հոդվածում մասնավորապես ասվում է. «Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից, ՍՍՀՄ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի և նրա ընդերքի, ջրային ռեսուրսների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական հարստությունների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար»։

Սոցիալիստական ընկերակցության պետությունները պլանաչափորեն ծախսումներ են կատարում՝ ուղղված շրջակա միջավայրի պահպանմանը։ Այդ առումով խիստ բնորոշ է Մոսկվայի օրինակը։ Այստեղ ստեղծված են կենսոլորտը փոշուց ու գազից մաքրող ավելի քան 13 հազար կառույցներ և արդյունաբերական կեղտաջրերի մաքրման 14 հազար կայանքներ։ Քաղաքի կենցաղային թափոնները վերամշակվում կամ ոչնչացվում են մասնագիտացված ձեռնարկություններում։ Շուրջ 300 կաթսայատներ վերացվել են, կենսոլորտը աղտոտող 400 ձեռնարկություններ և արտադրամասեր քաղաքի սահմաններից դուրս են բերվել, իսկ շատերն էլ վերակառուցվել են կամ փոխադրվել այնպիսի արտադրանքի թողարկման, որի արտադրությունը չի վնասում շրջակա միջավայրին։ Ծայրամասերից դեպի Մոսկվայի ներքին շրջանները գցված են կանաչ տնկարկների գոտիներ, գործարար կենտրոնն ապահովվում է բնական թթվածնով։ Յուրաքանչյուր բնակչի բաժին է ընկնում շուրջ 20 քառակուսի մետր կանաչ տնկարկ։ Մոսկվայի օդը ամենամաքուրն է աշխարհի ցանկացած խոշոր քաղաքի հետ համեմատած։

Այժմ մեր երկրում բոլոր նոր գործարկվող խոշոր ձեռնարկությունները հագեցած են բարձր արդյունավետ գազամաքրիչ և փոշեորսիչ սարքավորումներով։ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում նշվում է այնպիսի սարքավորումների և մեքենաների թողարկման մասնագիտացված արտադրությունը զարգացնելու կարևորությունը, որոնք անհրաժեշտ են ձեռնարկություններում բարձրարդյունավետ մաքրող կայանքներ ստեղծելու համար։

Կենսոլորտի պահպանման համար հսկայական միջոցներ են ծախսվում ամենաբարդ կառույցների շինարարության վրա։ Այդպիսի շինարարությունը վաթսունական թվականներից դարձել է մասսայական։ Շատ ձեռնարկություններում մաքրիչ կառույցների արժեքն արդեն հասնում է արտադրության հիմնական ֆոնդերի մեկ երրորդին, մի շարք դեպքերում այդ ծախսերը հասնում են ձեռնարկության հիմնական ֆոնդերի արժեքի մինչև 40—50 տոկոսին (օրինակ, Շչոկինոյի քիմիական կոմբինատում)։ Հաճախ պահանջվում է գործարանին կից կառուցել մաքրիչ տնտեսություն, որն իր արժեքով հավասարազոր է կամ նույնիսկ ավելի, քան հիմնական գործարանը։

Այժմ ազգային եկամտի կուտակված մասի կառուցվածքը լուրջ փոփոխություն է կրում։ Եթե անցյալում (մինչև գիտատեխնիկական հեղափոխությունը) կապիտալ ներդրումների ծավալում մաքրիչ կառույցների համար միշտ չէ որ գումար էր նախատեսվում, ապա այժմ այն ունի էական տեսակարար կշիռ և աճի միտում։

Այսպիսով, բնության պահպանության համար մենք խոշոր ծախսումներ ենք կատարում և ստիպված ենք այն շարունակել ավելի մեծ մասշտաբներով համեմատաբար տևական ժամանակաշրջանում։ Բայց արդյոք կարելի՞ է ընդմիշտ հաշտվել գիտատեխնիկական հեղափոխության առաջացրած բացասական երևույթների վնասազերծմանն ուղղված վիթխարի և հարաճուն ծախսերի հետ։ Ո՛չ, չի կարելի։ Չի կարելի հետևյալ երեք պատճառներով։

Առաջին. վերոհիշյալ ծախսերը բնական ռեսուրսների վերարտադրությանն են ուղղում երկրի տնտեսական պոտենցիալի ավելի ու ավելի մեծ մասը։ Բայց պրոբլեմի բարդությունը միայն դրա մեջ չէ։ Բանը նաև նրանում է, որ կենսոլորտի վրա արդյունաբերության վնասակար ազդեցությունը չեզոքացնելու համար հիմնական ֆոնդերի պահանջը գերազանցում է բուն արտադրության աճը. այն աճում է ավելի արագ, քան արտադրանքը և ազգային եկամուտը։ Բացի այդ, ուշադրության է արժանի նաև այն հանգամանքը, որ արտանետվածքների մաքրման մակարդակի բարձրացմանը զուգահեռ ծախսերը, որպես կա-

նոն, մեծանում են երկրաչափական պրոգրեսիայով։ Օրինակ, շաքարի գործարաններում ջրի լրիվ (100 տոկոս) մաքրման համար պետք է 100 անգամ ավելի ծախսել, քան մաքրությունը 30 տոկոսով ապահովելու համար։

Երկրորդ, մաքրիչ կառույցների շինարարության վրա կատարվող հսկայական ծախսերը ոչ միշտ և ոչ ամբողջովին են շրջակա միջավայրը զերծ պահում արտադրության թափոնների վնասակար ներգործությունից։ Այժմ գոյություն ունեցող մաքրիչ կառույցները, որպես կանոն, միայն մասամբ են որսում փոշային միացությունները, ինչպես նաև ծծմբային գազը, փոշին և մյուս թափոնները։ Հետևաբար, մաքրիչ կառույցների վրա կատարվող ծախսերը հարցի լուծման կիսամիջոց են սոսկ։ Սակայն պրոբլեմի սրությունը դրանով ևս չի սահմանափակվում։ Հարկ է նշել, որ շրջակա միջավայր արտանետվող նյութերից մի քանիսը չեն հասցնում կամ ընդհանրապես չեն կարող տարալուծվել, ցրվել կամ յուրացվել։ Դրանք կուտակվելով, փոխում են շրջակա միջավայրը՝ ի վնաս մարդու։ Վտանգավոր է շրջակա միջավայրում ոչ միայն առանձին տարրերի կուտակման աճը, այլև նրա վրա միասին վերցրած մի քանի նյութերի գումարային ներգործությունը։ Տագնապալի է նաև այն պարագան, որ առանձին նյութեր կարող են միմյանց հետ ռեակցիայի մեջ մտնել և ստեղծել անհամեմատ մեծ թունահարություն ունեցող նոր նյութեր։

Երրորդ. արդյունաբերական արտանետվածքները նաև բնական հարստությունների վատնողություն են։ Ամբողջ արդյունաբերական արտադրության վերջնական արդյունքը հումքի նկատմամբ կազմում է փոքր մեծություն. սկզբնական հումքի հիմնական մասը չի օգտագործվում, արդյունաբերությունն այն վերածում է թափոնի, արտանետում է շրջակա միջավայր։ Բնական ռեսուրսները շատ են, բայց դրանց պաշարներն անսպառ չեն։ Առանձնահատուկ ուշադրության է արժանի այն փաստը, որ հումքի սպառումն աճում է նախկինում չտեսնված տեմպերով ու մասշտաբներով. երկրորդ համաշխարհային պատերազմից հետո աշխարհում օգտագործվել է գրեթե այնքան հումք, որքան սպառվել է մարդկության ամբողջ նախորդ պատմության ընթացքում։ Բացի այդ, թափոնների ձևով վիթխարի կորուստների հետ միասին կորցնում ենք նաև զգալի հողատարածություններ, որոնք առանձնացվում են հանքային և ոչ հանքային օգտակար հանածոների արդյունահանման ժամանակ առաջացող արդյունաբերական թափոնների համար։

Նշված պատճառներից ելնելով, պետք է որոնել արդյունաբերության զարգացման և միաժամանակ կենսոլորտի մաքրության պահպանման այնպիսի ուղիներ, որոնք ոչ միայն չէին բացառի մեկը մյուսին, այլև չէին առաջացնի մաքրիչ կառույցների շինարարության վրա աճող հսկայական ծախսեր կատարելու անհրաժեշտություն։ Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում կենսոլորտի պաշտպանության բարդ պրոբլեմի լուծման արմատական ուղին արտադրության սկզբունքորեն նոր՝ թափոններից զերծ տեխնոլոգիային, հումքի կոմպլեքսային օգտագործմանն անցնելն է։

Անթափոն արտադրության, հումքի կոմպլեքսային օգտագործման տեխնոլոգիան գիտատեխնիկական հեղափոխության զարգացման նոր աստիճան է։ Ժամանակակից գիտությունն ու տեխնիկան մեզ հնարավորություն են ընձեռում հաղթահարելու այն հակասությունները, որոնք ծագում են արդյունաբերական արտադրության հնացող մեթոդների և արդյունաբերական թափոնների վնասակար ազդեցությունից բնական միջավայրը ազատելու մեր ձգտման միջև։

Անթափոն տեխնոլոգիան ապագայի արտադրությունն է։ Բայց արդեն հիմա էլ մեզ մոտ կան այդպիսի ձեռնարկություններ, հատկապես սննդի արդյունաբերության համակարգում։ Օրինակ, Ուկրաինական ՍՍՀ ԳԱ տեխնիկական ջերմաֆիկացիայի ինստիտուտում մշակվել և արտադրության մեջ ներդրվել է նոր տեխնոլոգիա, որն ապահովում է պտղահումքի լրիվ օգտագործումը։ Դրա էությունը պտուղներից կամ դրանց մզումներից ավելորդ հեղուկը հեռացնելու և դրանք հումքի սկզբնական հատկությունները առավելագույն չափով պահպանելու պայմաններում մրգափոշու վերածելու մեջ է։ Հայտնի է, որ տարբեր երկրներում արդեն վաղուց պտղամզումները և պտուղների մի



մասը օգտագործում են մրգագլյուկոզային օշարակների արտադրության համար։ ՍՍՀՄ-ում ստեղծված նոր տեխնոլոգիան ավելի արդյունավետ է, որովհետև այն ամբողջովին բացառում է թափոնները, հեշտացնում փոշիների պահելն ու փոխադրելը, ինչպես նաև դրանք պատրաստի արտադրանքի (կոնֆետ, իրիս, մարմելադ, պաստիլներ, վաֆլիներ և այլն) համար օգտագործելը։ Մզումներից ստացվում է պեկտին, որի պահանջը շատ մեծ է։

Արտադրության ընթացքում առաջացող մրգամզումների, ինչպես և շուտ փչացող պտուղների մշակմամբ հնարավորություն է ընձեռվում ստանալու շաքարով ու վիտամիններով հագեցած շուրջ մեկ միլիոն տոննա փոշի, որն օգտագործվում է սննդարդյունաբերության մեջ և բնակչության կողմից։

Հետևաբար, հումքի կոմպլեքսային օգտագործման շնորհիվ հնարավոր է դարձել ոչ միայն զգալիորեն ավելացնել պարենային ռեսուրսները (առանց հողահանդերի և այգեգործների աշխատանքի ծախսումների ընդլայնման), այլև պահպանել շրջակա միջավայրի մաքրությունը։

Սովետական մի խումբ քիմիկոսներ, էներգետիկներ և մեքենաշինարարներ, որոնք արժանացել են պետական մրցանակի, մշակել են ազոտական թթվի արտադրության սկզբունքորեն նոր տեխնոլոգիա, որի շնորհիվ հնարավոր է խուսափել օդ արտանետվող ազոտի շիկագորշ օքսիդից։ Նոր տեխնոլոգիան կիրառվում է Պերվոմայսկի քիմիական կոմբինատում և Ասբեստ քաղաքի ցեմենտի գործարանում, որոնք դարձել են անթափոն ձեռնարկություններ։

Գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ այժմ առկա են հանքամշակման լցակույտերից և նույնիսկ արդյունաբերական ջրերից սկզբնական վերամշակման ժամանակ ուղեկցող բաղադրամասեր ստանալու շատ միջոցներ։ Արդեն գործում են սակավաթափոն և անթափոն արտադրություն ունեցող մի շարք ձեռնարկություններ։ Այսպես, օրինակ, Ուստ-Կամենոգորսկի կապարի-ցինկի գործարանը 20 ուղեկցող բաղադրամասերից կորզում է 17-ը, Չիմքենդինը՝ 15-ից 14-ը, Բալխաշինը՝ գրեթե բոլորը։ Օրենբուրգի գազի հանքավայրը սկսել է տալ ուղեկցող արտադրանք՝ հարյուր հազարավոր տոննա ծծումբ։ Մի շարք դեպքերում արծաթը ստացվում է ոչ թե արծաթի հանքաքարի մշակման ճանապարհով, այլ նրա՝ որպես ուղեկցող տարրի ստացումով։ Կիրովականի քիմիական կոմբինատում նոր տեխնոլոգիայի արմատավորման շնորհիվ ռետուրային գազերի՝ տեխնոլոգիական ցիկլի այդ յուրահատուկ թափոնների արտանետումը մթնոլորտ դադարել է։ Այդ գազերը կրկին մտցվում են տեխնոլոգիական ցիկլի մեջ և ամոնիակի ու կարբամիդի արտադրության համար վերածվել են օգտակար և էժան հումքի։ Միաժամանակ արդեն օդային ավազան չի թափանցում ամենավնասակար արտանետվածքը՝ ածխածնի երկօքսիդը (որը կազմում է կոմբինատի բոլոր վնասակար արտանետվածքների 60 տոկոսը)։ Հետևաբար, տեխնոլոգիան ապահովել է ոչ միայն տնտեսական արդյունավետության աճը, այլև, որ առավել կարևոր է, սոցիալական արդյունքը։

Անթափոն արտադրության օրինակ է Սևանի «էլեկտրապակեմեկուսիչ» գործարանի աշխատանքը։ Նրա հիմնական արտադրանքն անօրգանական պոլիմերային ապակեմանրաթելն է։ Գործարանի տեխնոլոգիական սխեման բաղկացած է հետևյալ արտադրություններից. ոչ հանքային հումք—ապակեհալում, ապակեգնդիկների և ապակեմանրաթելի—սինթետիկ գործվածքների և ապակեպլաստիկ զանգվածների արտադրություն։

Հումքի հիմնական բաղադրամասը տեղական բազալտ քարն է։ Գործարան մտնող սկզբնական ոչ հանքային հումքից ստացվում է բովախառնուրդ, որից ապակեգնդիկներ ստանալու համար այն հալման վառարաններում թրծվում է։ Դրանք, իրենց հերթին, հումք են հանդիսանում ապակեմանրաթել արտադրելու համար։ Գործարանի պատրաստի արտադրանքը (ապակե գործվածքները, ժապավենները, ցանցերը և պլաստիկ ապակե զանգվածները) մատակարարվում է հանրապետության տարբեր ձեռնարկություններին, ինչպես նաև արտահանվում է մի շարք սոցիալիստական երկրներ։ Ռեսուրսների խնայողության, դրանց կրկնակի օգտագործման և շրջակա միջավայրի պահպա-

նության նպատակով գործարանում, տեղական արդյունաբերության հետ կոոպերացման միջոցով մշակվել է այնպիսի տեխնոլոգիա, որի շնորհիվ արժեքավոր երկրորդային հումքից (որը նախկինում իբրև թափոն դեն էր նետվում) այժմ ստանում են մասսայական պահանջարկ ունեցող զանազան իրեր։ Գործարանում ստեղծված է հատուկ արտադրամաս, որտեղ արտադրվում են արդյունաբերության տարբեր ճյուղերում լայնորեն կիրառվող մեկուսիչ նյութեր։ Այդ արտադրամասում տարեկան օգտահանվում են 300 տոննա պինդ թափոններ։

Մեր ժամանակներում ստեղծված են տրանսպորտային միջոցների մի շարք «անվնաս» տեսակներ՝ մետրո, տրոլեյբուս, էլեկտրաքարշեր և այլն։ Տոշափելի են արդյունքները էլեկտրոմոբիլների պատրաստման գործում. դրանց վիճակված է ոչ հեռավոր ապագայում փոխարինել ավտոմոբիլին, որոնք քաղաքների մթնոլորտը թունավորում են արտանետիչ գազերով։

Այժմ ոչ միայն շատ տրանսպորտային միջոցներ (ավտոմեքենաներ, ինքնաթիռներ, մոտոցիկլետներ և այլն), այլև տնտեսական ու կենցաղային օբյեկտներ սպառում են մեծ քանակությամբ թթվածին։ Հարկ է նշել, որ հսկայական չափերով նավթ, գազ, ածուխ և քիմիական վառելիքի այլ տեսակներ այրելով, մարդիկ միաժամանակ այրում են մեծ քանակությամբ թթվածին։ Դա կարող է հանգեցնել լուրջ վտանգի՝ մթնոլորտի ներդաշնակության խախտման։

Հումքի կոմպլեքսային օգտագործման, անթափոն արտադրության տեխնոլոգիայի ձեռնարկությունները հասարակությանը բերում են վիթխարի օգուտ. դա կապիտալ ներդրումների արդյունավետության կտրուկ աճն է և թանկ նստող մաքրիչ կառույցների շինարարության համար կատարվող ծախսումների նույնքան էլ կտրուկ նվազումը։ Զէ որ նույն ձեռնարկությունում հումքի կոմպլեքսային վերամշակումը միշտ ավելի էժան է, քան այդ նույն արտադրանքների ստացումը այլ ձեռնարկություններում։ Իսկ անթափոն տեխնոլոգիան օրակարգից հանում է շրջակա միջավայրը արտադրական ձեռնարկությունների կողմից աղտոտելու վտանգը։

Արտադրության թափոնները բացառող որակապես նոր տեխնոլոգիայի մշակումը և կիրառումը հրատապ խնդիր է (մի շարք դեպքերում, հատկապես սկզբնական շրջանում, հարկ է լինում միջոցներ ձեռք առնել սակավաթափոն արտադրություն կազմակերպելու նպատակով)։ Այն կարող է ամենից առաջ լուծվել հումքի կոմպլեքսային օգտագործման ասպարեզում գերատեսչական արգելքները վերացնելու, արտադրության ճյուղերի զարգացման հեռանկարների նկատմամբ միջճյուղային մոտեցումն ուժեղացնելու միջոցով։

Ներկայումս ամենայն սրությամբ դրված է քիմիական, թղթի-ցելյուլոզի և լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկություններում հումքի կոմպլեքսային, անթափոն վերամշակման հարցը։ Այդ ձեռնարկությունները, ինչպես հայտնի է, շրջակա միջավայրին ամենամեծ վնասն են հասցնում՝ օդային ու ջրային ավազանները, ինչպես և «թափոնապահեստարաններ» նետելով հսկայական քանակությամբ վնասակար նյութեր, որոնք, ի միջի այլոց, նոր, կարևոր արտադրանքների համար արժեքավոր հումք են։ Իսկ ինչո՞ւ այդ ձեռնարկություններում չի արմատավորվում հումքի վերամշակման կոմպլեքսային, անթափոն տեխնոլոգիան։ Դա բացատրվում է ամենից առաջ նրանով, որ նշված ձեռնարկությունները ենթարկվում են տարբեր գերատեսչությունների, որոնց գործնական հետաքրքրությունների շրջանակի մեջ մտնում է միայն որոշակի «պրոֆիլային» արտադրանքների թողարկումը։ Իսկ ամբողջ մնացածը, ինչ կարելի է կոմպլեքսային վերամշակման մեթոդով հումքից քաղել, պարզվում է, գտնվում է «օտար» գերատեսչության հետաքրքրությունների շրջանակում։ Այս առումով տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների կազմակերպումը, ժողովրդատնտեսական մեծ նշանակությունից բացի, նաև գերատեսչական արգելքների հաղթահարման կարևոր միջոց է և օբյեկտիվ նախադրյալ է ծառայում արտադրության մեջ անթափոն տեխնոլոգիայի լայն ներդրման համար։



Բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդիրների լուծման գործում մեծ է տնտեսագիտության դերը։ Բանը նրանում է, որ հասարակական զարգացման ողջ պատմության ընթացքում մարդկությունը բնության նկատմամբ ունեցել է սոսկ սպառողական վերաբերմունք, այն դիտվել է որպես շահագործման օբյեկտ։ Բնության անվճար օգտագործման պրակտիկան հանգեցրել է նրան, որ տնտեսական այն չափանիշները, որոնցով հասարակությունը մոտենում է բնական ռեսուրսներին, ամփոփվում են սոսկ մարդու ընթացիկ արտադրական գործունեությամբ։

Անհրաժեշտ է ստեղծել այնպիսի պայմաններ, որպեսզի թափոնները արտադրության մեջ ներգրավելու պրոբլեմները տնտեսավարներին մտահոգեն այնպես, ինչպես մտահոգում են հիմնական արտադրության հարցերը։ Եթե մինիստրություններն ու ձեռնարկություններն արտադրության թափոնների օգտագործման հարցում տնտեսապես շահագրգռված լինեն, ապա դրանց նկատմամբ վերաբերմունքն այլ կլինի։

Սակավաթափոն և անթափոն արտադրության տնտեսական խթանման գործում կան առանձնահատուկ դժվարություններ, որոնք այժմ գործող տընտհաշվարկային լծակների օգնությամբ լուծվել չեն կարող։ Հումքի կոմպլեքսային օգտագործման հիման վրա արտադրանքի թողարկումը կապված է ինժեներական և տեխնիկական լուծումների, անթափոն արտադրության մշակման ու արդյունաբերական յուրացման համար անհրաժեշտ լրացուցիչ ծախսերի հետ, որոնք չեն կարող հատուցվել ձեռնարկության միջոցներով։ Ավելին, անթափոն արտադրության անցնելու կամ նույնիսկ թափոնները որոշ չափով կրճատելու մասին որոշում ընդունելը կապված է ռիսկի հետ։ Այն կարող է պլանների թերակատարման առջև կանգնեցնել մեծ չափերով թափոններ ունեցող, բայց արդեն կարգավորված արտադրությունը։ Սակավաթափոն կամ անթափոն արտադրության կազմակերպումը ձեռնարկությունից լրացուցիչ ուժեր ու միջոցներ է պահանջում։ Իսկ ձեռնարկությունը դրանում շահագրգռված չէ, քանի որ, որքան քիչ են շրջակա միջավայրի պահպանման վրա կատարվող ծախսերը, այնքան ավելի էժան է արտադրանքը։ Սակայն խոսքը ոչ միայն ձեռնարկություններում թափոնները կրճատելու տնտեսական խթանման միջոցներ որոնելու մասին է, այլև նշված պրոբլեմը բոլոր մակարդակներում (ձեռնարկություններ, միավորումներ, ճյուղեր և ամբողջ ժողովրդական տընտեսություն) լուծելու համար լծակների համակարգի մասին։

Կենսոլորտի պահպանման և լավացման համար պայքարում մեծ նշանակություն ունի բնական ռեսուրսների տնտեսական գնահատումը։ Այն նյութապես կխթաներ բնությանը հասցվող վնասի նվազեցման ուղիների որոնումը։ Նպատակահարմար է ռեսուրսների գնահատման հիման վրա մտցնել միասնական նորմատիվ կամ տարբերակված վարձ՝ ժողովրդական տնտեսության մեջ օգտագործվող բնական ռեսուրսների համար, ըստ ռեսուրսների տեսակների ու շրջանների։ Ներկայումս բնական ռեսուրսներն օգտագործելիս ձեռնարկությունները տնտեսապես շահագրգռված չեն հաշվի առնելու էկոլոգիայի պահանջները։ Նրանց մոտ երևան է գալիս խնամակալական տրամադրություն. ստանալ ավելի շատ բնական ռեսուրսներ՝ պրոֆիլոդ արտադրանքի համար անհրաժեշտ տարրերի առավել հարուստ պարունակությամբ, հասնել իր համար հեշտ կատարելի պլանի։ Դա նյութական օգուտ է բերում միայն ձեռնարկությանը և վնաս է հասցնում ժողովրդական տնտեսությանը։ Ձեռնարկություններում երևան է գալիս ընթացիկ պահանջները ի վնաս երկարաժամկետ պահանջների բավարարելու շահագրգռվածություն. նրանք խթան չունեն այն մեծ խնդիրների կենսագործման համար, որոնք միայն մի քանի տարի անց են օգուտ բերում և ապահովում էկոլոգիական պրոբլեմների լուծումը։ Դեռ ավելին, արտադրանքի իրացման և շահութաբերության պլանները կատարող, բայց իրենց թափոններով շրջակա միջավայրը աղտոտող ու թունավորող ձեռնարկությունները նույնիսկ կարող են լինել «առաջավորների» թվում։

Բնական ռեսուրսների համար վարձ մտցնելը էկոլոգիական պրոբլեմների լուծման գործում կշահագրգռի ձեռնարկություններին։ Ծախսվելիք ռեսուրս-

ներն ավելացնելու համար նրանք կհատուցեն իրենց շահույթից, իրենց պահանջմունքները կսահմանափակեն նշված ռեսուրսների նկատմամբ անհրաժեշտ կարիքների շրջանակներում և դրանցից կքաղեն իրենց արտադրության համար պարունակության առավելագույնը։ Դա նշանակում է, որ ձեռնարկությունների կոլեկտիվները թափոնների նվազեցման հարցում նյութապես շահագրգռված կլինեն։ Բնության օգտագործման սոցիալիստական նորմանները խախտողների դեմ կիրառվող սանկցիաները կզուգակցվեն բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման տնտեսական միջոցների հետ։ Բնական ռեսուրսների տնտեսական գնահատումը և դրանց օգտագործման վարձի սահմանումը կուժեղացնեին ինչպես արտադրության մեջ նոր ներգրավվող բնական ռեսուրսների, այնպես էլ ճյուղերի մեջ վերաբաշխվող ռեսուրսների ռացիոնալ օգտագործման տնտհաշվարկային լծակները։

Այս առումով ուշադրության է արժանի Հունգարիայի, ԳԴՀ-ի և Չեխոսլովակիայի փորձը, որտեղ շրջակա միջավայրը աղտոտող ձեռնարկություններից գանձվում է պրոգրեսիվորեն աճող վարձ (ըստ աղտոտման թույլատրելի նորման գերազանցելու աստիճանի)։ Որպես կանոն, վարձը գանձվում է ձեռնարկությունների շահույթներից։

Մեր երկրում միութենական և հանրապետական օրենսդրությունները շրջակա միջավայրը ապականողների համար նախատեսում են խիստ պատիժ։ Բայց վարչական միջոցները ոչ միշտ և ոչ բոլոր դեպքերում են արդյունավետ։ Դրանք պետք է ամրապնդվեն գործուն տնտեսական միջոցներով։ Բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործումն իրականացնելու գործում առանձնահատուկ, բացառիկ կարևոր դեր ունի գիտությունը։ Ժամանակն է, որ նոր առաջադիմական և խնայողական տեխնոլոգիական սխեմաների մշակումը նախատեսի արտադրության առանձին փուլերում կամ բարդ ցիկլերում ստացվող բոլոր արտադրանքների օգտագործումը։ Հենց այս առումով հարկ է փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների հետագա զարգացումը համապատասխանեցնել բնական սիստեմների ցիկլերի հետ, քանի որ չկա անթափոն արտադրության ավելի կատարյալ տեսակ, քան բնության մշտապես տեղի ունեցող օրգանական սինթեզն է։ Հիմնարար և կիրառական հետազոտությունների գլխավոր խնդիրներից մեկը (գիտությունների ակադեմիայից մինչև մինիստրությունների ու ձեռնարկությունների տեխնոլոգիական և կոնստրուկտորական կազմակերպությունները) անթափոն արտադրության կազմակերպումն է։

Արտադրության թափոնները բացառող որակապես նոր տեխնոլոգիայի մշակման և լայն կիրառման գործում վիթխարի դեր ունի ՏՓԽ-ի անդամ երկրների գիտատեխնիկական համագործակցությունը։ Այս բնագավառում գիտական հետազոտությունների կոորդինացումն ու փորձի փոխանակումն առաջնակարգ նշանակություն ունեն և համարվում են ՏՓԽ-ի բոլոր անդամների կարևոր միջպետական խնդիր։ Յուրաքանչյուր սոցիալիստական երկրի առանձնահատկությունը նկատի առնելով (համապատասխան կադրերի, բնական ռեսուրսների տեսակների և այլնի առկայությունը), աշխատանքի միջազգային բաժանման եղանակով անհրաժեշտ է լայն ճակատով կազմակերպել անթափոն արտադրության տեխնոլոգիայի մշակումն ու ներդրումը։

Հարկ է նշել այնպիսի նոր մեքենաների ստեղծման անհրաժեշտությունը, որոնք հաշվի առնեին նաև էկոլոգիական չափանիշները, ծառայեին որպես անթափոն արտադրության հիմք։ Սա բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և մաքրիչ կառույցների վրա կատարվող ծախսերի խիստ կրճատման անհրաժեշտ պայմանն է։ Ոչ հեռավոր ապագայում ներքին և հատկապես արտաքին շուկաներում կիրացվեն միայն այն մեքենաները, որոնք կհամապատասխանեն անվնասակարության և անթափոնայնության պահանջներին։ Ուստի պետք է նայել առաջ և արդեն այսօր ծրագրել նշված մեքենաների ստեղծման ու մասսայական թողարկման ուղիները ՍՍՀՄ-ում և ՏՓԽ-ի անդամ մյուս երկրներում։



Արտադրաուժերի բարձր մակարդակի, տնտեսության ինտերնացիոնալացման և գիտատեխնիկական հեղափոխության ծավալման շնորհիվ մարդու և բնության փոխադարձ կապը, հասարակության և բնության միջև եղած փոխգործողությունը մեր ժամանակներում գլոբալ բնույթ են ստացել։ Արդի փուլում շրջակա միջավայրի պահպանության հարցերի տեղական, մեկուսի լուծումները սակավարդյունավետ են, չեն համապատասխանում գիտական բնօգտագործման պահանջներին։

Մթնոլորտի, երկրամերձ տիեզերական տարածության, համաշխարհային օվկիանոսի, բուսական և կենդանական աշխարհների պահպանությունը ոչ միայն առաջնակարգ ազգային, այլև համամարդկային խնդիր է։ Նրա հաջող լուծումը պահանջում է բոլոր պետությունների ջանքերի միավորում։

Սոցիալիստական ընկերակցության երկրները բնության պահպանության նպատակով պլանաչափ միջոցառումներ են իրականացնում։ ՏՓԽ-ի անդամ երկրների համագործակցության և սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի հետագա խորացման ու կատարելագործման կոմպլեքսային ծրագիրը որպես բաղկացուցիչ տարր պարունակում է բնության պահպանության հիմնական միջոցառումների համակարգ։

Սովետական պետությունը կենսոլորտի հարցերի լուծման նպատակով ընդլայնում է համագործակցությունը ինչպես միջազգային կազմակերպությունների, այնպես էլ առանձին կապիտալիստական պետությունների հետ։ Նա համաձայնագիր ունի և բնական միջավայրի պահպանման նպատակով համատեղ աշխատանք է կատարում Ֆինլանդիայի, Շվեդիայի, Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի և այլ երկրների հետ։

Գիտատեխնիկական առաջընթացի հետևանքով մարդու և բնության համար առաջացած վնասակար երևույթները չեզոքացնելու նպատակով կատարվող հսկայական ու հարաճուն ծախսերը հիմնականում հարկադրական և ժամանակավոր միջոցառումներ են։ Հեռանկարում արտադրության զարգացման գլխավոր ուղին անթափոն արտադրությունն է, որը կզուգակցվի ոչ միայն շրջակա միջավայրի պահպանության, այլ նաև լավացման նպատակով կատարվող մյուս միջոցառումների հետ։

# ՍՊԱՌՄԱՆ ՀԱՆՐԱՅԻՆ ՖՈՆԴԵՐԻ ՏԱՐԲԵՐԱԿՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**Լ. Ն. ՀԱԿՈԲՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*Կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում կարևոր օղակ է քաղաքի և գյուղի էական տարբերությունների հաղթահարումը։ Դրանք իրենց բնույթով սոցիալ-տնտեսական են, պայմանավորված սոցիալիստական սեփականության երկու ձևերի առկայությամբ, արտադրատեխնիկական և կուլտուր-կենցաղային տարբեր մակարդակներով, որոնց հիմքը երկրի արտադրաուժերի զարգացման աստիճանն է։ Ուստի արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ նյութատեխնիկական բազայի զարգացման տարբեր աստիճաններն էլ պայմանավորում են քաղաքային ու գյուղական բնակչության տարբեր կենսամակարդակները։*

*Քաղաքի և գյուղի աշխատավորների կենսամակարդակների տարբերությունները բնորոշող ցուցանիշներից մեկը բնակչության ռեալ եկամուտներն են։ Ընդ որում գյուղացիների ռեալ եկամուտներն աճում են ավելի արագ, քան ամբողջ բնակչության կամ բանվորների ու ծառայողների մոտ։ Վերջիններիս ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով անցած չորս տասնամյակում ավելացել են 4 անգամ, իսկ կոլտնտեսականներինը՝ 6,9 անգամ*։*

*Ընտանիքի մեկ անդամի հաշվով երկրում կոլտնտեսականների ռեալ եկամուտների մակարդակը բանվորների և ծառայողների եկամուտների նկատմամբ բարձրացել է 1965 թ. 75 տոկոսից մինչև 1980 թ. 89 տոկոս։ Այն մեր հանրապետությունում համապատասխանաբար աճել է 72,4 տոկոսից մինչև 94,6 տոկոս, այսինքն, առկա է բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների եկամուտների մակարդակների մերձեցումը։ Սակայն բյուջետային հետազոտումները վկայում են, որ բանվորի և ծառայողի միջին շնչի եկամուտն առայժմ ավելի բարձր է, քան կոլտնտեսականներինը։*

*Վերջին ժամանակներս որոշակի փոփոխություններ են կատարվել կոլտնտեսականների աշխատանքի վարձատրման կատարելագործման, գյուղացիների և բանվորների ու ծառայողների կենսամակարդակների աստիճանաբար մերձեցման բնագավառում, որը միաժամանակ ազդել է նրանց միջին շնչի եկամտի մակարդակով տարբեր ընտանիքների նյութական և կուլտուրական բարիքների անձնական սպառման էական տարբերությունների վերացման վրա։ ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչությունը ընտանիքների բյուջեների ընտրովի հետազոտություն է կատարել, որի հիման վրա կազմված աղյուսակը հետյալ կերպ է բնութագրում հետազոտված ընտանիքների եկամուտների կառուցվածքի փոփոխությունները։*

* *Այս և հաջորդ հաշվարկները վերցված են* «Народное хозяйство СССР в 1980 г.» *վիճակագրական ժողովածուից։*



Բանվորի, ծառայողի և կոլտնտեսականի ընտանիքի եկամուտների կառուցվածքը (տոկոսներով)

| Եկամուտների կազմը | 1970 թ. | | 1980 թ. | |
|---|---|---|---|---|
| | բանվորի և ծառայողի | կոլտնտեսականի | բանվորի և ծառայողի | կոլտնտեսականի |
| Ընտանիքի ամբողջ եկամուտը | 100 | 100 | 100 | 100 |
| այդ թվում. | | | | |
| ընտանիքի անդամների աշխատավարձը | 72,0 | 8,4 | 71,7 | 9,6 |
| կոլտնտեսությունից ստացվող եկամուտը | | 40 | | 43,9 |
| սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումներ | 21,5 | 17,9 | 22,8 | 19,5 |
| անձնական օժանդակ տնտեսությունից ստացվող եկամուտը | 3,9 | 31,9 | 3,1 | 25,3 |
| այլ աղբյուրներից ստացվող եկամուտը | 2,6 | 1,8 | 2,4 | 1,7 |

*Անհրաժեշտ է ուշադրություն նվիրել ընտանիքների եկամուտների ձևավորման վրա։ Եթե բանվորների և ծառայողների ընտանիքներում եկամուտները հիմնականում ձևավորվում են աշխատավարձի հաշվին, ապա կոլտնտեսականների ընտանիքներում դրանց գլխավոր աղբյուրները կոլտնտեսությունից ստացվող վարձատրությունն է և անձնական տնամերձ տնտեսությունը։ Լրացուցիչ եկամուտ են սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումները։ Ինչպես երևում է աղյուսակից, կոլտնտեսականի ընտանիքի ամբողջ եկամտի ձևավորման գործում սպառման հանրային ֆոնդերի տեսակարար կշիռը ավելի ցածր է, քան բանվորի կամ ծառայողի ընտանիքում։ Չնայած դրան, այն էական դեր է խաղում այդ եկամուտների ձևավորման գործում (19,5 տոկոս), տոկոսային տեսակետից փոքր-ինչ զիջելով անձնական օժանդակ տնտեսությունից ստացվող եկամուտներին (25,3 տոկոս)։ Կոլտնտեսականների ընտանիքների բյուջեներում սպառման հանրային ֆոնդերի աճող դերը թելադրում է անձնական սպառման այդ տեսակի հետագա արդյունավետ զարգացում։ Չնայած գյուղական բնակչության մեջ մտնում են սովխոզների, պետական հիմնարկությունների աշխատողները, մտավորականությունը, կոլտնտեսականները, որոնք բոլորն էլ օգտվում են սպառման հանրային ֆոնդերից, այնուամենայնիվ, չպետք է մոռանալ, որ կոլտնտեսականները գյուղական բնակչության զգալի մասն են և այդ իսկ պատճառով սպառման հանրային ֆոնդերով նրանց ապահովվածության աստիճանը ազդում է այդ ֆոնդերով գյուղական բնակչության ապահովվածության աստիճանի վրա ամբողջությամբ վերցրած։*

*Հայտնի է, որ սպառման կոլտնտեսային հանրային ֆոնդերի ձևավորումը պայմանավորված է կոլտնտեսությունների հանրային տնտեսության զարգացման մակարդակով։ Մինչև 1953 թվականը շատ կոլտնտեսությունների էկոնոմիկայի ցածր մակարդակի պատճառով կոլտնտեսականների պահանջմունքների բավարարման համար հնարավոր չէր տարբեր աղբյուրներից սպառման հանրային ֆոնդերի համար բավականաչափ միջոցներ առանձնացնել։ Ինչ վերաբերում է այդ ֆոնդերի առանձին ձևերին (հերթական արձակուրդ, կենսաթոշակային ապահովվածություն և այլն), ապա կոլտնտեսություններում դրանք առհասարակ չկային։ Հետագայում կոլտնտեսությունների էկոնոմիկան բարձրացնելու նպատակով կուսակցության և պետության կազմակերպչական-տնտեսական միջոցառումների շնորհիվ նպաստավոր պայմաններ ստեղծվեցին կոլտնտեսությունների սպառման հանրային ֆոնդերի կառուցվածքի և աճի ծավալման համար։*

*Կոլտնտեսականների և բանվորների կենսամակարդակների մոտեցման գործում կարևոր փուլ էր կոլտնտեսության անդամների կենսաթոշակների և*

նպաստների մասին ընդունված օրենքը։ Այդ օրենքի համաձայն, կոլտնտեսությունների բոլոր այն անդամները, որոնք կենսաթոշակի և նպաստի իրավունք ունեն, դրանք ստանում են պետության և կոլտնտեսությունների միջոցների հաշվին գոյացած սոցիալական ապահովության կենտրոնացված միութենական ֆոնդից։ Բացի այդ, կոլտնտեսություններում աշխատանքի երաշխավորված վարձատրության անցնելու կապակցությամբ մեծացել է կոլտնտեսականների արձակուրդների վճարման դերը, որը նպաստել է տեղերում աշխատուժի ամրացմանը։ Եվ, եթե այժմ կենսաթոշակների ու նպաստների, ինչպես նաև կոլտնտեսականների արձակուրդների վարձատրության չափը դեռևս ցածր է, ապա դա բացատրվում է բանվորների և ծառայողների համեմատությամբ նրանց աշխատանքի ցածր վարձատրությամբ։

Կոլտնտեսություններում համեմատաբար ցածր է նախադպրոցական մանկական հաստատություններով, առողջապահական և կուլտուրական հիմնարկություններով ապահովվածության աստիճանը։ Վիճակագրական տվյալների համաձայն, 1980 թվականի վերջին հանրապետության քաղաքային բնակավայրերում գործում էին 646 նախադպրոցական հաստատություններ, գյուղական վայրերում՝ 425, իսկ դրանցում ընդգրկված երեխաների թիվը համապատասխանաբար կազմել է՝ 106,3 հազար և 28,5 հազար, այսինքն՝ գյուղական վայրերում երեք անգամ պակաս։

Գյուղական վայրերում բնական աճը համեմատաբար մեծ է, իսկ մանկական հաստատություններով ապահովվածությունը՝ ցածր։ Ուստի այդ հաստատությունների պահանջը գյուղական վայրերում ավելի բարձր է։ Հետևաբար, կոլտնտեսային արտադրության առանձնահատկություններից ելնելով, գյուղում անհրաժեշտ են սեզոնային մանկապարտեզներ ու մանկամսուրներ, որոնք կգործեին աշխատանքների եռուն շրջանում։ Անհրաժեշտ քանակությամբ մանկական նախադպրոցական հաստատությունների առկայությունը հնարավորություն կընձեռի, առաջին՝ ակտիվացնելու կանանց զբաղվածությունը հանրային արտադրության մեջ և, երկրորդ՝ բարձրացնելու երեխաների հասարակական դաստիարակության մակարդակը։ Բացի այդ, յուրաքանչյուր կոլտնտեսության անհրաժեշտ է ունենալ սեփական նախադպրոցական հաստատությունները և այդ խնդրի լուծումը ոչ միայն կոլտնտեսականների, այլև պետության կարևոր պրոբլեմներից մեկն է։

Քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների վերացումը հնարավոր չէ առանց կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակների տարբերությունների հաղթահարման։ Այդ մասին որոշ պատկերացում տալու համար բերենք հետևյալ աղյուսակը, որը բնութագրում է ՍՍՀՄ քաղաքային և գյուղական բնակչության կրթական մակարդակը 1981 թվականին։

Քաղաքային և գյուղական բնակչության կրթական մակարդակը

| | Բնակչության 1000 մարդուն ընկնում է բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթությամբ | | Այդ թվում | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | բարձրագույն կրթությամբ | | միջնակարգ (լրիվ կամ թերի) | |
| | քաղաքային բնակչություն | գյուղական բնակչություն | քաղ. բնակչ. | գյուղ. բնակչ. | քաղ. բնակչ. | գյուղ. բնակչ. |
| 10 և ավելի տարիք ունեցող ամբողջ բնակչությունը. 1981 թ. | 741 | 517 | 101 | 25 | 640 | 492 |

Այսպիսով, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մարդիկ գյուղական վայրերում 1,4 անգամ քիչ են, քան քաղաքներում, իսկ բարձրագույն կրթություն ունեցողները՝ 4 անգամ։ Հետևաբար, գյուղական բնակչության կրթական մակարդակը տակավին ետ է մնում քաղաքայինից։ Դա մասամբ բացատրվում է նրանով, որ քաղաքն է որակյալ մասնագետների



պատրաստման կենտրոնը, և երիտասարդների զգալի մասը քաղաքում կրթություն ստանալուց հետո գյուղ չի վերադառնում։ Ուստի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների տեսակարար կշիռը գյուղում շարունակում է մնալ ցածր։

Դեռևս լուծված չէ նաև քաղաքային ու գյուղական բնակչության բժշկական սպասարկման մակարդակի ու որակի տարբերությունների վերացման խնդիրը, թեպետև նրանց բժշկական սպասարկման մակարդակը հետևողականորեն մերձենում է։

Քաղաքի և գյուղի միջև առկա էական տարբերությունների վերացումը ենթադրում է նաև կուլտուրայի ու կենցաղի լուրջ փոփոխություններ։ Այս ասպարեզում քաղաքի և գյուղի մերձեցումը բարդ պրոցես է, որը պահանջում է մեծ միջոցներ և աշխատանքային ծախսեր։ ՍՄԿԿ XXVI համագումարը առաջադրեց սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման լայն ծրագիր։ Այդ պրոբլեմի լուծման համար մշակվել է մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագիրը, որը ներկա տասնամյակում կուսակցության տնտեսական ստրատեգիայի բաղկացուցիչ մասն է։ Ինչպես հայտնի է, ծրագրի մեկ ամբողջ բաժին նվիրված է գյուղում կյանքի սոցիալ-կենցաղային պայմանների բարելավմանը։ Կիրականացվեն սոցիալ-տնտեսական կոմպլեքս միջոցառումներ, կբարձրանա գյուղական բնակիչների բարեկեցության, կուլտուրայի, բժշկական և կենցաղային սպասարկման մակարդակը, կմեծանա բնակարանային, կոմունալ և կուլտուր-կենցաղային շինարարության ծավալը, կընդլայնվի բուժարանային-պոլիկլինիկական հիմնարկությունների ու դեղատների շինարարությունը, բժշկական հիմնարկությունները կհամալրվեն մասնագետ կադրերով, կշարունակվի գյուղական դպրոցների ուսումնական բազայի ամրապնդումը։ Միայն տասնմեկերորդ հնգամյակում գյուղական վայրերում կկառուցվեն 2,3 միլիոն աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ, կկազմակերպվի կոլտնտեսությունների ու սովխոզների տրանսպորտային հուսալի կապը շրջկենտրոնների հետ, կավելանա գյուղական ավտոբուսային գծերի երկարությունը։ Կենցաղային սպասարկումների իրացման ծավալը տասնամյակի ընթացքում կկրկնապատկվի, կբարձրանա բնակչության սպասարկման որակն ու կուլտուրան։

Կոմունիզմի կառուցման ճանապարհին կուլտուր-կենցաղային ոլորտում քաղաքի և գյուղի մերձեցման պրոցեսը օրինաչափ է։ Բնակչության կուլտուրական աճով է մեծապես պայմանավորված արտադրաուժերի վերելքը, տեխնիկայի առաջընթացը, կենցաղի կոմունիստական վերափոխումը։ Հատկապես հրատապ նշանակություն են ստանում գյուղական բնակչի հոգևոր կյանքի հարստացման հարցերը։

Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարման հիմքը բնակչության կուլտուրական սպասարկման հասարակական ձևերի դերի բարձրացումն է, կուլտուրական կյանքի կազմակերպման գործում հասարակական հիմունքների աճը։ Կուլտուրայի առաջընթացը շատ բանով որոշվում է գրադարանների, ակումբների, թանգարանների և մյուս մշակութային օջախներով։ Չնայած կուլտուրայի նյութական բազայի ընդլայնման գործում ձեռք բերած հաջողություններին, տակավին անհամապատասխանություն կա բնակիչների աճող կուլտուրական պահանջմունքների և վերոհիշյալ հիմնարկություններով նրանց ապահովվածության միջև։ Շատ գյուղերում այդ հիմնարկությունները (ակումբներ, գրադարաններ) փոքր ու անհավասարաչափ են տեղաբաշխված, ապահովված չեն համապատասխան կադրերով։ Եվ, բնականաբար, այդ ամենը խանգարում է դրանց գործունեության ծավալմանը։ Այսպես, չնայած 1980 թ. վերջին մեր հանրապետության քաղաքային բնակավայրերում մասսայական գրադարանների թիվը կազմում էր 336, իսկ գյուղական վայրերում՝ 977, առաջինում գրքային ֆոնդը 15.190 հազար էր, իսկ երկրորդում՝ ընդամենը 4.957 հազար։

Գյուղի էկոնոմիկայի աճով բարձրանում է նրա կուլտուրան, աճում են գյուղական բնակչության հոգևոր պահանջմունքները։ Ճանապարհային շինարարության և տրանսպորտի զարգացման շնորհիվ գյուղի բնակիչներին առավել

*մատչելի է դառնում քաղաքների, բանվորական ավանների և շրջանային կենտրոնների մշակութային օջախներից օգտվելը։ Ուստի հատկապես կարևոր է, որ պարենային ծրագիրը նախատեսում է այդ խնդրի լուծումը։*

*Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում գյուղական բնակչության բնակարանային պայմանների բարելավմանը։ Անցած հնգամյակում գյուղական վայրերում շահագործման հանձնվեցին 149,1 միլիոն քմ օգտակար տարածությամբ բնակելի տներ։ Կոլտնտեսային շատ գյուղեր արտաքին տեսքով, կոմունալ հարմարություններով և կուլտուրական մակարդակով նմանվում են քաղաքային տիպի բարեկարգ ավաններին։ Գյուղում բնակարանային պրոբլեմի լուծման գործում, կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդմանը զուգընթաց, կարևորվում է հանրային միջոցների դերը։ Էական նշանակություն ունեն կոոպերատիվ և անհատական շինարարությանը տրամադրվող պետական վարկերը, որոնք ապահովում են հանրային ու անձնական շահերի հաջող զուգակցումը և նպաստում բնակարանային պրոբլեմի լուծմանը։*

*ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում ասված է. «Բարձրացնել բնակարանային շինարարական կոոպերացիայի դերը բնակչության բնակարանային պայմանների հետագա բարելավման գործում։ Ընդլայնել բնակելի տների անհատական շինարարության հնարավորությունները, հատկապես ոչ մեծ քաղաքներում, քաղաքատիպ ավաններում և գյուղական վայրերում։ Կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարության գործում աշխատավորներին աջակցություն ցույց տալ միավորումների, ձեռնարկությունների խրախուսական ֆոնդերի հաշվին»* (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 291—292)։*

*Մեծ աշխատանքներ են իրականացվում գյուղում կոմունալ-կենցաղային պայմանների բարելավման նպատակով, բարձրացվում է գազիֆիկացման և ջրամատակարարման մակարդակը։ 1980 թվականին ՀՍՍՀ գյուղական վայրերում 914 բնակավայր ապահովված էր գազամատակարարումով։*

*Բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը կնպաստի կադրերի ամրապնդմանը, աշխատուժի հոսունության նվազեցմանը։ Գյուղական բնակչության, հատկապես երիտասարդության, արտահոսքի հիմնական պատճառը համեմատաբար ծանր և նվազ հրապուրիչ աշխատանքն է, գյուղատնտեսության մեջ հիմնական արտադրապրոցեսների մեքենայացման ոչ բարձր մակարդակը, չկարգորոշված աշխատանքային օրը, վճարովի արձակուրդների կարճատևությունը, գյուղական շատ վայրերում արդյունաբերական ձեռնարկությունների բացակայությունը, ոչ պատշաճ կուլտուր-կենցաղային և կոմունալ սպասարկումը։*

*Վիճակագրական տվյալներից երևում է, որ ինչպես ողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում նվազում է գյուղական բնակչության բաժինը։ Եվ դա այն դեպքում, երբ աճում է գյուղական բնակչության բացարձակ թվաքանակը։ Պատճառը՝ գյուղական բնակչության տեղաշարժն է քաղաք։ Այսպես, ՍՍՀՄ գյուղական բնակչության տեսակարար կշիռը 10 տարում (1970—1980 թթ.) պակասել է 44 տոկոսից մինչև 37 տոկոս, իսկ մեր հանրապետությունում՝ 40,5 տոկոսից մինչև 34 տոկոս։ Գյուղական բնակչության, հատկապես երիտասարդության քաղաք տեղափոխվելը հանգեցնում է գյուղում անաշխատունակ բնակչության տեսակարար կշռի աճին։*

*ՍՍՀՄ պարենային ծրագրով իրականացվող միջոցառումները նպաստում են գյուղի սոցիալական նոր առաջընթացին, խթանում գյուղատնտեսական արտադրության վերելքը, ապահովում աշխատավորների բարեկեցության հետագա աճը։ Այդ խնդիրների լուծմանը զուգընթաց առավել կամրապնդվի կոլտնտեսությունների էկոնոմիկան։ Դա կհանգեցնի կոլտնտեսությունների սպառման հանրային ֆոնդերի զարգացմանը, որոնց միջոցով լուծվում են մի շարք կարևորագույն պրոբլեմներ։*

*Կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդմամբ աճում է նրանց դերը սպառման հանրային ֆոնդերի ձևավորման գործում, որը հնարավորություն է ընձեռում առավելագույն չափով բավարարելու կոլտնտեսականների սոցիալ-կուլտուրական պահանջմունքները։*

---

# ՀԱՇՎԱՊԱՀԻ ԹԱՓՈՒՐ ՊԱՇՏՈՆ

**Մի անգամ ծանոթ հաշվապահը սրտնեղությամբ խոստովանեց. «Հեղինակություն չունի մեր մասնագիտությունը»։ Ակամա մտածեցի՝ բայց չէ՞ որ էկոնոմիկան սկսվում է հաշվապահությունից։ Ամբողջ երկրում այսօր աշխատում են երկու միլիոնից ավելի հաշվային աշխատողներ։ Նրանց է վստահված նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ ու խնայողական օգտագործման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում սոցիալիստական սեփականության պահպանության, հաշվարկման և հսկողության ապահովման կարևոր դերը։ Սակայն ինչո՞ւ են մշտապես թափուր հաշվապահական տեղերը։**

Պատկերացրեք շինարարական հրապարակ, ուր շտապում են ամենահնարավոր հանձնախմբեր վինվարչությունից, շինբանկից, պետստանդարտից, պետշինտեսչությունից, ժողովրդական վերահսկողությունից... Ստուգողները նախապես գիտեն, որ իրենց՝ «գրոսմայստերների» հետ համեմատած, աշխղեկը խղճուկ դիլետանտ է և անպայման «խաղը» տանուլ կտա։ Չէ որ աշխղեկը հաճախ ժամանակ չունի ձևակերպելու ամենօրյա ակտերը, չափումները, խստորեն հետևելու օբյեկտի նախահաշվային արժեքներին։ Մի խոսքով, չկա պատշաճ հաշվառում։

Այդ մասին քաջատեղյակ են և շինվարչության հաշվապահական ծառայությունում, բայց ստիպված լռում են։ Պլանը՝ պլան է, այն պետք է կատարել։ Այլապես չեն ապահովվի խրախուսման ֆոնդերը։

Այսպիսի նուրբ իրավիճակում շինվարչության պետին հարմար է «հնազանդ» հաշվապահ, թեկուզ և առանց մասնագիտական կրթության, որ չի համարձակվի հակաճառել և կստորագրի ցանկացած թուղթը։ Պատահական չէ, որ այսօր հանրապետության շինարարական արտադրության ոլորտում հաշվապահական կադրերի միայն 8 տոկոսն ունի բարձրագույն կրթություն։

Ինչպես ցույց են տալիս ֆինանսական մարմինների ստուգումները, շինարարությունում արմատավորվել է շինմոնտաժային աշխատանքների ծավալներն ուռճացնելու փաստերի սքողման արատավոր պրակտիկա։ Տարիներ շարունակ անօրինական ծախսերն արտացոլվում են անավարտ շինարարության կազմում, իսկ հետագայում առանց հիմնավոր պատճառների դուրս են գրվում որպես վնաս։ Սոցիալիստական սեփականության պահպանության անբարեհաջող վիճակի հիմնական պատճառներից մեկը սկզբնական հաշվառման և հաշվետվության ցածր մակարդակն է։ Ժամանակին չեն բացահայտվում և չեն կասեցվում հավելագրումների, պակասորդների, զեղծարարության, վատնման փաստերը։ Մեղավորն այստեղ, անկասկած, «հնազանդ» հաշվապահն է, որը ժամանակին չի ապահովել դրամական մուտքագրման, ապրանքանյութական արժեքների, հումքի տնտեսման հիմնական միջոցների, ինչպես նաև դրանց շարժման հետ կապված գործառնության լրիվ և հավաստի հաշվառումը։

Հնուց ի վեր ասվում է՝ փողը հաշիվ է սիրում։ Բայց ո՞վ և ինչպե՞ս է հաշվում այն, ո՞վ է ախտորոշում արտադրության «ինքնազգացումը»։

Ծինարարության ոլորտում այսօր աշխատում են 1.665 հաշվապահներ՝ հաստիքային ցուցակի 1.703-ի փոխարեն։ Նրանցից բարձրագույն կրթություն ունեն 132-ը, միջնակարգ մասնագիտական՝ 712-ը, պրակտիկներ են 821-ը։ Վերջիններս, ի դեպ, հիմնականում զբաղեցնում են գլխավոր կամ ավագ հաշվապահի պաշտոնները։

Մխիթարական չէ վիճակը նաև մյուս ճյուղերում։ Բավական է նկատել, որ հանրապետության ձեռնարկություններում ու կազմակերպություններում հաշվապահական ծառայությունները պակաս են կոմպլեկտավորված 281 մասնագետներով։ Դանդաղ է բարելավվում թեթև, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության, գյուղատնտեսության, ավ-

տնտրանսպորտի և այլ մինիստրությունների հաշվային ղեկավար աշխատողների կազմի որակը: Հազվադեպ են երիտասարդ գլխավոր հաշվապահները: Այնինչ 1967—1981 թվականներին Երևանի ժողովրդական տնտեսության, գյուղատնտեսական ինստիտուտները տվել են 5.065 դիպլոմավոր հաշվապահներ: Ո՞ւր են նրանք, եթե հանրապետության մասշտաբով բարձրագույն կրթությամբ հաշվապահների թիվը կազմում է 1.235 մարդ կամ ընդհանուր շրջանավարտների 24 տոկոսը:

«Երիտասարդները գերադասում են վերաորակավորվել,— խոստովանում է ժողովրդական տնտեսության ինստիտուտի ռեկտոր Ծ. Մարգարյանը:— Հիմնական պատճառն այն է, որ հաշվապահի բարդ գործը պատշաճորեն չի գնահատվում: Նրա աշխատավարձը ցածր է, մինչդեռ տնտեսագետները, պլանավորողները, ֆինանսիստները, մատակարարները վարձատրվում են որպես ինժեներատեխնիկական աշխատողներ: Սակայն գաղտնիք չէ, որ դիպլոմավոր հաշվապահը կարող է զբաղեցնել նշված պաշտոններից ցանկացածը»:

Մի հանգամանք ևս: Հաշվապահի պաշտոնական դրույքի չափը պայմանավորված է կրթական մակարդակով: Այս պայմանը չի տարածվում տնտեսագիտական և ֆինանսական ծառայության աշխատողների վրա: Ինչ վերաբերում է գլխավոր հաշվապահի աշխատավարձին, ապա այն հավասարեցված է ճյուղի մյուս գլխավոր մասնագետների դրույքին, իսկ առանձին դեպքերում՝ նույնիսկ նրանց մի քանիսից ցածր է, չնայած գլխավոր հաշվապահը ղեկավարության հետ հավասար կիսում է կազմակերպության ֆինանսատնտեսական գործունեության պատասխանատվությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 12-ի որոշմամբ միավորման ղեկավարներին իրավունք է վերապահված բարձրորակ ծառայողի համար (իսկ դա նշանակում է նաև հաշվապահի) սահմանել հավելավճար՝ հաստիքի 30 տոկոսի չափով: Գլխավոր հաշվապահի վրա դա չի տարածվում, քանի որ նա նշանակվում և ազատվում է վերադաս կազմակերպության հրամանով: Թվում է, կարելի է խթանել շարքային հաշվապահների աշխատանքը: Սակայն այդ դեպքում նրանք կարող են ստանալ գլխավորից ավելի, որն անթույլատրելի է: Կա և մի այլ նրբերանգ: Դրամական պարգևի դեպքում հաշվապահներին կամ շրջանցում են, կամ նրանք խրախուսվում են մյուս կատեգորիայի աշխատողներից պակաս:

Բարոյական խրախուսման ժամանակ էլ նրանց, ասես, մոռանում են: Հանրապետությունում շատ են բարձրորակ մասնագետները: Բայց նրանց լուսանկարները չեն զարդարում աշխատանքային կոլեկտիվների պատվոտախտակները: Նրանց մեջ հազվադեպ են կառավարական պարգևների արժանացածները, տեղական սովետների դեպուտատները: Նկատենք, որ վերջին հինգ տարում միայն երկու հաշվապահ է արժանացել «Հայկական ՍՍՀ վաստակավոր հաշվապահի» պատվավոր կոչման:

Այս մասնագիտությունը գրեթե չի դրվատվում մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ, իսկ ծանակելիս, ընդհակառակն, չեն զլանում: Ինձ վիճակվեց դպրոցներից մեկում ականատես լինել մի տհաճ տեսարանի. դասարանին ուսուցչի ուղղած այն հարցին, թե «որտեղ են աշխատում ձեր ծնողները», տղաներից մեկը երկչոտորեն պատասխանեց. «Իմ հայրը հաշվապահ է»: Դասարանը համերաշխ ծիծաղեց: Լավ է, որ ուսուցիչը չշփոթվեց, կարողացավ գլուխ հանել իրավիճակից:

Իսկ ի՞նչ գիտեն իններորդ դասարանցիները հաշվապահի մասնագիտության մասին: Ի միջի այլոց, պարզվեց, որ երեխաներին կոմպյուտերն ավելի հասկանալի է, քան հաշվապահի աշխատանքը: Ոչ լավատեղյակ մարդկանց համար ասենք, որ հաշվապահը արտադրության մեջ պետական գլխավոր հսկիչն է: Ընդհանրացնելով և համեմատելով տվյալները, կազմելով հիմնական ինֆորմացիան, նա, ինչպես հայելում, արտացոլում է ֆինանսատնտեսական ողջ գործունեությունը՝ ապահովելով պետական ֆինանսական կարգապահությունը, սոցիալիստական սեփականության պահպանությունը, խնայողության ռեժիմը: Վ. Ի. Լենինը դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին նշել է, որ մենք չենք կարող տնտեսություն ղեկավարել «առանց հաշվետվությունների ամփոփման, առանց նրանց ստացվելու կանոնավորության նկատմամբ վերահսկողության, առանց տընտեսական աշխատանքի լուրջ վերլուծության՝ **ըստ առանձին հիմնարկների**, առանց պիտանի և անպետք հիմնարկների, **անձերի**, աշխատանքի պրիոմների և այլն լուրջ քննադատության» (**Երկեր**, հ. 33, էջ 400—401):

Հաշվառման և հսկողության մասին լենինյան դրույթները կուսակցության XXVI համագումարում ստացան հետագա զարգացում: Առանձնապես շեշտվում է հաշվառման և վիճակագրության բարձրորակ ու օպերատիվ ապահովման, հաշվառման փաստաթղթերի և հաշվետվության կատարելագործման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում կառավարման, պլանավորման և տնտեսական



գործունեության վերլուծության արդի մեթոդների կիրառման անհրաժեշտությունը: Այնպես որ, ժամանակակից հաշվապահի աշխատանքը դարձել է վերլուծական, ստեղծագործական: Տնտեսական մեխանիզմի կատարելագործման պայմաններում հատկապես աճում է հաշվապահի պատասխանատվության աստիճանը՝ ըստ նորմատիվ զուտ ցուցանիշի պլանային և փաստական արտադրածավալի հաշվարկման, նորմատիվների ստույգության վերահսկման գործում: Միայն բարձրորակ աշխատողները, զինված հաշվառման բնագավառի, դրա մեխանիզմի, պլանավորման, ֆինանսավորման, տնտեսական վերլուծության տեսական ու գործնական խոր գիտելիքներով, ի վիճակի են ապահովել արտադրության գործուն վերահսկումը, ակտիվորեն ներգործել էկոնոմիկայի զարգացման վրա: Այսօր հաշվային աշխատողներին ներկայացվող բարձր պահանջները իրենց արտացոլումն են գտել գլխավոր հաշվապահների վերաբերյալ նոր կանոնադրության մեջ:

Այժմ բարձր և միջին մասնագիտական կրթությամբ հաշվապահների պատրաստման գործում նկատվում է տեղաշարժ: Այդուհանդերձ, ժողովրդական տնտեսության պահանջարկը կիսով չափ է բավարարվում: Միջոցներ են ձեռնարկվում բուհերում և տեխնիկումներում ավելացնելու ընդունելությունը «հաշվապահական հաշվառման» մասնագիտությամբ: Նկատի առնելով պրոբլեմի կարևորությունը և հաշվային կադրերի սուր կարիքը, ինչպես նաև այդ մասնագիտության հեղինակության բարձրացման անհրաժեշտությունը, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության հրամանով «հաշվապահական հաշվառում» մասնագիտությունը վերանվանվել է «հաշվապահական հաշվառում և տնտեսական գործունեության անալիզ»: Այնուհանդերձ, պրոբլեմը մընում է չլուծված: Ինչո՞ւմն է բանը:

— Ավարտել եմ Մոսկվայի Պլեխանովի անվան ժողովրդական տնտեսության ինստիտուտը,— ասում է «Երևանշին» միավորման ավտոբազայի տնտեսագետ Վ. Ղարիբյանը:— Մեկ անգամ չէ, որ տարբեր կազմակերպություններում ինձ առաջարկել են գլխավոր հաշվապահի պաշտոն: Բայց ինքներդ դատեք. ինչո՞ւ պետք է ես՝ երիտասարդ մասնագետս, հոժար կամքով թաղվեմ թվերի, չարաբաստիկ դեբետի և կրեդիտի, նստակյաց ձանձրալի աշխատանքի մեջ և ստիպված լինեմ մշտապես «հաշվեկշռվել» լարի վրա: Չէ՞ որ հաշվառման գործում բացթողումներն անխուսափելի են, իսկ դրա համար, ինչպես հայտնի է, քրեորեն առաջին հերթին պատժվում է հաշվապահը...

— Ունեինք թոշակի տարիքի մի լավ գլխավոր հաշվապահ,— պատմում է «Հայգունմետմատառի» կառավարիչ Վ. Սարկիսովը:— Նա ինքն էլ առաջարկեց՝ «կպատրաստեմ արժանի փոխարինող և կթոշակավորվեմ»: Գտանք հարմար թեկնածու, ձևակերպեցինք գլխավոր հաշվապահի տեղակալ՝ ավագ տնտեսագետի դրույքով: Ստիպողաբար խախտում կատարեցինք, քանի որ տնտեսագետի դրույքը հաշվապահինից բարձր է: Սակայն երիտասարդը չցանկացավ գլխավոր հաշվապահ աշխատել, չնայած, որ նրան շատ լավ էին նախապատրաստել: Գնաց մինիստրության վերստուգիչ-վերահսկիչ վարչություն: Գտնվեց և պատճառաբանությունը. «Քիչ աշխատանք, քիչ պատասխանատվություն, բայց փոխարենը բարձր վարձատրություն»:

Կցանկանայի մի նկատառում հայտնել. ինչո՞ւ նրանք, որ պատասխանատու են հաշվետվության հավաստիության համար, պետք է վարձատրվեն «անպատասխանատու» ռևիզորից պակաս: Հարցն այնքան էլ անպատակ չէ: Այն հուզում է ինչպես ֆինանսիստներին, այնպես էլ տնտեսավարներին: Մասնագետները գտնում են, որ գլխավոր հաշվապահների մասնագիտության հեղինակությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է կիրառել նյութական և բարոյական խրախուսման կոմպլեքս միջոցառումներ՝ սահմանել հաշվապահների աշխատանքային վարձատրություն՝ ըստ նրանց պատասխանատվության աստիճանի, թեկուզ և ի հաշիվ ռևիզիոն ծառայության ապարատի մասնակի կրճատման:

— Դժբախտաբար, գերատեսչական վերստուգիչ-վերահսկիչ ապարատի շատ աշխատողներ,— հաստատում է Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստրության վերստուգման-վերահսկման վարչության պետ Վ. Հովսեփյանը,— իրենք են վատ հասկանում հաշվապահական հաշվառքից: Նրանք տիրապետում են միայն բացահայտված բացթողումների համադրման տեխնիկային, կարողանում են ի հայտ բերել հաշվետվության որոշակի սըխալները: Եվ, պատկերացրեք, օբյեկտ գալով, անմիջապես գտնում են դրանք: Տեղերում մանր թյուրիմացությունները վերացնելուն օգնելու, դրությունը շտկելու փոխարեն, ռևիզորները ձեռնարկում են վարչական ներգործության ծայրահեղ միջոցներ: Մտահոգում է և այն, որ մինիստրությունների ու գերատեսչությունների գլխավոր հաշվապահները փաստորեն զրկված են ենթագերատեսչական կազմակերպություններում լինելու հնարավորու-

թյունից՝ իրական պայմաններում գործերի վիճակը վերահսկելու նպատակով:

— Այժմ, երբ ամենուրեք ձեռնամուխ են եղել պարենային ծրագրի վիթխարի խնդիրների կենսագործմանը,— ասում է գյուղմինիստրության հաշվապահական հաշվառման և հաշվետվության վարչության պետ, Հայկական ՍՍՀ վաստակավոր հաշվապահ Բ. Ներսիսյանը,— պետք է խոստովանել, որ զգացնել են տալիս կոլտնտեսություններում և սովխոզներում հաշվապահական ծառայության թերի կողմերը: Հարկավոր է նախ և առաջ կարգավորել հաշվառումը, որպեսզի բարձրացվի գյուղատնտեսության արդյունավետությունը, հասնել այն բանին, որ ստեղծվեն տնտեսական կայուն պայմաններ, ներդրվի իրական տնտհաշվարկ: Դրա համար գյուղին հարկավոր են ոչ թե հաշվապահներ ընդհանրապես, այլ գյուղատնտեսական արտադրության մասնագետ հաշվապահներ:

Պլանավորման և կառավարման ողջ համակարգի կատարելագործման պայմաններում հատկապես աճում է հաշվապահական հաշվառման և տնտեսական գործունեության վերլուծության դերը: Գլխավոր հսկիչ-հաշվապահից պահանջվում է ոչ միայն հետնողական հաշվետվություն, այլև հաշվառման, հսկողության «դիրիժորություն», որն անհրաժեշտ է ինչպես օպերատիվ, այնպես էլ հեռանկարային կառավարման որոշումների ընդունման համար: Իսկ այդ օղակները, որքան էլ ցավալի է խոստովանել, պրակտիկայում հաճախ վատ են կցվում:

Հաշվապահի պատրաստած տվյալների հիման վրա, ինչպես հայտնի է, տնտեսագետը, պլանային աշխատողն ու ֆինանսիստը ընդհանրացումներ են անում, կանխորոշում ձեռնարկության հետագա զարգացումը, ինքնարժեքը, եկամուտը, աշխատավարձը և այլն: Ի վերջո ամեն ինչ վերադառնում է իրեն, և նույն հաշվապահը, օգտվելով ստորագրելու իրավունքից, լուծում է ֆինանսատնտեսական հարցերը: Եթե նախկինում նա ի հայտ էր բերում միայն ընթացիկ ռեզերվները, ապա տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումից հետո, ըստ որի պլանային հիմնական փուլը համարվում է ոչ թե տարին, այլ հնգամյակը, աճում է անհրաժեշտությունը և ուժեղանում հնարավորությունը հայտաբերելու հեռանկարային խոշոր ռեզերվներ՝ կապված արտադրության տեխնիկական բազայի արմատական կատարելագործման, նրա ինտենսիվացման, համաշխարհային բարձր նվաճումներին համապատասխան նոր տեսակի արտադրանքի յուրացման հետ: Գլխավոր հաշվապահները, ըստ էության, դառնում են համեմատական վերլուծության աշխատանքների կազմակերպիչներ: Եվ հասկանալի է, որ տնտեսավարման նոր պահանջներին համապատասխան նախ և առաջ անհրաժեշտ է պատրաստել բարձրորակ գլխավոր հաշվապահներ:

Ձեռնարկությունները, ճյուղերը, ժողովրդական ողջ տնտեսությունը կարիք ունեն հաշվային գործի բանիմաց կազմակերպիչների: Նրանց կարիքը հսկայական է, թափուր տեղերը՝ շատ: Ցանկացած աստիճանի ղեկավարը, կասեի որ, փնտրում է լավ հաշվապահ: Ամբողջ դժվարությունն այն է, որ մասնագիտության մասին ստեղծվել է կանխակալ կարծիք: Հաղթահարել ստերեոտիպը այնքան էլ հեշտ չէ: Միայն պաշտոնական դրույքի բարձրացմամբ հնարավոր չէ բարձրացնել հաշվապահական կադրերի հեղինակությունը: Բուլղարիայում, օրինակ, գլխավոր հաշվապահի վրա, որը միաժամանակ նաև կառավարման մարմնի ղեկավարի տեղակալ է, դրված են ֆինանսական բոլոր գործառնությունների կազմակերպման խնդիրները: Այն իրողությունը, որ հաշվային աշխատողը կարող է բարձրանալ ծառայողական աստիճանով, դառնալ դիրեկտորի տեղակալ, պետ, մինիստր, չի կարող չհրապուրել երիտասարդներին:

Մի բան ևս: Վերահսկողությունը ինքնըստինքյան խորապես կուսակցական գործ է: Սակայն հաշվապահական կադրերի շրջանում չափազանց քիչ են կոմունիստները: Այս հանգամանքը պետք է հաշվի առնեն կուսակցական կազմակերպությունները:

Որպեսզի էկոնոմիկան լինի խնայողական, արտադրանքն աճի արագ, քան նրա վրա կատարվող ծախքերը, անհրաժեշտ է, որպեսզի ժամանակին հայտնաբերվեն ռեզերվները, ստույգ գործեն նորմատիվները, կատարվեն պլանները. պետական գլխավոր հսկիչները պետք է իրենց դերում լինեն, ըստ արժանվույն պահպանեն օրինականությունը՝ ամենուրեք ապահովելով սոցիալիստական սեփականության պահպանությունը: Այդ են պահանջում կուսակցության, ժողովրդի շահերը:

ՅՈՒՐԻ ԱՌԱՔԵԼՅԱՆ



# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ

**Ջ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆ**
*ՀԿԿ Նաիրիի շրջկոմի երկրորդ քարտուղար*

*«ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՅԻՍՅԱՆ պլենումը մեկ անգամ ևս ցուցադրեց հարազատ կուսակցության մեծ հոգատարությունը ժողովրդի բարեկեցության նկատմամբ: Պարենային ծրագիրը վերաբերում է բոլորիս և նրա կատարման համար մեզնից յուրաքանչյուրը պետք է աշխատի անմնացորդ նվիրումով»: Հայկական մեքենափորձարկման կայանի սկզբնական կուսկազմակերպության ժողովում այսպես ասաց կոմունիստ, աշխատանքի և պատերազմի վետերան, Հոկտեմբերյան հեղափոխության և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների ասպետ Թոռնիկ Վարդանյանը: Անվանի հողագործը դրանով կարծես արտահայտում էր շրջանի կոմունիստների, բոլոր աշխատավորների կարծիքը:*

*Կուսակցական ու արտադրական կոլեկտիվների ժողովներում, դասախոսությունների, զեկուցումների, զրույցների, միասնական քաղօրերի ժամանակ Նաիրիի շրջանի աշխատավորները ոչ միայն արտահայտում են իրենց ջերմ վերաբերմունքը մայիսյան պլենումի հաստատած պարենային ծրագրի նկատմամբ, այլև հանդես են գալիս հայրենասիրական նախաձեռնություններով, առաջարկում գործերի բարելավման գործնական ուղիներ ու միջոցներ: Դրանք ի մի են բերվում տեղերում, սկզբնական կուսկազմակերպություններում, ընդհանրացվում կուսակցության շրջկոմում և գործողության մեջ դրվում:*

*Ծանոթանալով պարենային ծրագրին և ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1982 թ.) պլենումի մշակած մյուս միջոցառումներին՝ անասնապահական ֆերմաների կոլեկտիվները վերանայել են իրենց պարտավորությունները և պայքարում են հնգամյակը 3—4 տարում ավարտելու համար: Զովունիի անասնապահները, օրինակ, խոստացել են մինչև 1985 թվականը կովերի գլխաքանակն ավելացնել կրկնակի անգամ: Բուժականի և մի շարք այլ տնտեսություններ պատրաստակամություն են հայտնել զբաղվելու խոզաբուծությամբ ու մեղվաբուծությամբ: Խրախուսելի նախաձեռնություններ են ծնվում այգեգործների շրջանում: Այդ պայքարում իրենց ավանդն են ներդնում ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը: Նոր Հաճընի տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանի աշխատողների նշանաբանն է՝ «Գյուղի պատվերները ժամկետից շուտ»: Նրանք 1982 թվականին պլանից դուրս թողարկեցին շուրջ 400 հազար ռուբլու սարքեր: Շինարարներն իրենց պարտքն են համարում ժամկետից շուտ և բարձր որակով կառուցել ու շահագործման հանձնել գյուղատնտեսական օբյեկտները: Հիմնարկ-ձեռնարկություններն ուժեղացրել են շեֆական օգնությունը գյուղին: Վերջերս շրջկոմի բյուրոն հավանություն տվեց «Ռեմդետալ»*

գործարանի կոլեկտիվի նախաձեռնությանը, որը պարտավորվել է շեֆական լայն ծավալի աշխատանք կատարել Քասախի սովխոզում։

Փաստերը վկայում են, որ տնտեսական առաջընթացի համար շրջանում ստեղծված է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ. բարձր է մարդկանց քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը։ Նրանց նոր լիցք հաղորդեցին ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված հանդիսությունները, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումի որոշումները։ Այդ փաստաթղթերը, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի ելույթի դրույթներն ու եզրահանգումները դրվել են կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպությունների գործունեության հիմքում։ Այժմ կուսկազմակերպությունների ողջ պրակտիկ գործունեությունն ուղղված է այն բանին, որպեսզի բոլոր օղակներում կազմակերպչորեն ու գաղափարապես ապահովվի կյանքի ու աշխատանքի այնպիսի ռիթմ, որ անխախտ օրենք դառնա պլանային առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը, խորացվեն այն պրոցեսները, որոնք կարող են նպաստել արտադրական հարաբերությունների զարգացմանը, նոր մարդու ձևավորմանը։ Կուսակցական կազմակերպությունները, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումում, պետք է իրենց ջանքերը կենտրոնացնեն գլխավորի վրա։ Իսկ գլխավորը մարդկանց հետ տարվող աշխատանքն է։ Ելնելով այս ցուցումից՝ կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները մշակել և իրականացնում են միջոցառումների ընդարձակ պլան։ Շրջկոմի՝ անցած տարվա հուլիսին կայացած պլենումում սահմանվեցին նաև առաջիկա աշխատանքի գաղափարախոսական ապահովման ուղիներն ու միջոցները։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումից անմիջապես հետո անցկացվեցին կուսկազմակերպությունների քարտուղարների, գաղափարախոսական աշխատողների սեմինար-կոնֆերանսներ։ Ստեղծվեցին դասախոսական խմբեր, որոնք ինչպես կոլեկտիվներում, այնպես էլ ըստ բնակության վայրի ծավալեցին մեծ աշխատանք։ Գաղափարախոսական աշխատանքում ակտիվորեն ընդգրկվել են կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարները, «Գիտելիք» ընկերության դասախոսները, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատողները։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան, ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումների արդյունքների, պարենային ծրագրի վերաբերյալ կարդացվել են մեծ թվով դասախոսություններ, զեկուցումներ։ Այդ թեմային են նվիրվել հունիսի միասնական քաղօրը, քաղաքական և տնտեսագիտական ուսուցման պարապմունքները։ Այդ նպատակին են ծառայում բանավոր և դիտողական ագիտացիայի հարուստ հնարավորությունները։ Շրջանային թերթը բացել է «Պարենային ծրագիրը համաժողովրդական գործ է», «ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումների որոշումները կյանքում» և այլ խորագրեր, լայնորեն լուսաբանում է կուսկազմակերպությունների և աշխատանքային կոլեկտիվների գործունեությունը, սոցիալիստական մրցության կազմակերպումը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի հետ առնչվող հարցեր, հրապարակում է տեղական նախաձեռնություններին, առկա կարողությունների ու ռեզերվների օգտագործմանը նվիրված նյութեր։ Թերթը ձգտում է չշրջանցել նաև սուր հարցերը, հանդես է գալիս թերությունների քննադատությամբ, նշում դրանց վերացման, նոր բնագծեր նվաճելու ուղիները։

Ամբողջ գաղափարախոսական աշխատանքի ելակետն այն է, որ մարդիկ ու կոլեկտիվները ոչ միայն խորությամբ ընկալեն պլենումի որոշումների պահանջները, պարենային ծրագրի էությունն ու խնդիրները, այլև իմանան իրենց կոնկրետ անելիքները, տեղն ու դերը համաժողովրդական այդ գործում, համակվեն դրանք իրագործելու պատրաստակամությամբ։

Ինչպես նշվեց պլենումում, գյուղատնտեսության զարգացման միակ արդյունավետ ուղին նրա ինտենսիվացումն է։ Դա առանձնապես վերաբերում է մեր հանրապետությանը, այդ թվում և մեր շրջանին՝ նկատի ունենալով բնական սուղ պայմանները։ Ինտենսիվացման կուրսի հաջողությունը գլխավորապես պայմանավորված է մարդկանցով։ Ուստի գաղափարախոսական աշխատանքի հիմնական խնդիրներից մեկը կադրերի, աշխատավորական լայն



մասսաների կողմնորոշումն է դեպի գյուղատնտեսության ինտենսիվ զարգացումը։ Հայտնի է, որ հեշտությամբ չի հաղթահարվում իներցիայի, սովորույթի ուժը։ Մարդիկ տարիների ընթացքում ընտելացել են այն բանին, որ իրենց աշխատանքը գնահատվի միայն քանակական ցուցանիշներով, որոնք սովորաբար համեմատվում են նախորդ տարիների արդյունքների հետ։ Եվ երբ նկատվում է որոշ աճ, ապա ստեղծվում է բարեհոգության մթնոլորտ։ Մինչդեռ կարևոր է հաշվի առնել այն հանգամանքը, թե ինչպես են օգտագործվում ներքին ռեզերվները, թե ստացված արդյունքները համապատասխանո՞ւմ են, արդյոք, ժամանակի պահանջներին ու եղած հնարավորություններին։ Հակառակ դեպքում արգելակվում է մարդկանց նախաձեռնությունը, առաջ գալիս մտքի ծուլություն, որը վերջիվերջո հարվածում է էկոնոմիկային։

Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումը շրջանի պտղաբուծական խոշոր տնտեսություններից է։ 1975 թ. այստեղ հավաքվեց մինչ այդ չտեսնված համախառն բերք՝ 670 տոննա։ Շատերը գոհ էին ձեռք բերված արդյունքից, և այստեղ իրեն զգացնել էր տալիս նույն իներցիայի ուժը։ Բայց հարցն այլ կերպ դրեց կուսակցության շրջկոմը, տնտեսությունում այլ կարծիք հայտնեցին նորի զգացումով օժտված մարդիկ, նոր ղեկավարները։ Իրոք, ինչպե՞ս կարելի էր հանգստանալ ձեռք բերածով, երբ հեկտարի բերքատվությունը չէր անցնում 20—25 ցենտներից։ Որոշվեց վերակառուցել եղած այգիները, հիմնել բարձրբերքատու, ինտենսիվ եղանակով մշակվող այգիներ։ Նախաձեռնությունն արժանացավ հանրապետական համապատասխան կազմակերպությունների պաշտպանությանը։ Նոր Գեղիի պետական տնտեսությունը, որն այժմ ունի 200 հեկտարից ավելի ինտենսիվ եղանակով մշակվող այգի, 1981 թվականին ստացավ 1.200 տոննա պտուղ։ Մեկ հնգամյակ հետո այդ ցուցանիշը կմեծանա 2—3 անգամ։

Նոր Գեղիի փորձի ակտիվ, գիտականորեն հիմնավորված պրոպագանդումը, կազմակերպչական ու գաղափարախոսական նպատակասլաց աշխատանքը տվեցին իրենց արդյունքը։ Մարդիկ համոզվեցին նորի առավելության մեջ, սկսեցին քննադատաբար վերլուծել ձեռք բերածը։ Ինտենսիվացման կուրսը ներկայումս շարունակվում է լայնակի ու խորությամբ՝ ընդգրկելով գյուղատնտեսական արտադրության բոլոր բնագավառները։ Բարձր բերքատու այգիներ են հիմնվում Եղվարդում, Քասախում, Զովունիում։ Մինչև 1990 թվականը դրանք շրջանում կհասցվեն 1.000—1.200 հեկտարի։

Ցրտադիմացկուն, բարձր բերքատու և հիվանդությունների նկատմամբ կայուն սորտերի հաշվին վերակառուցվում են նաև խաղողի այգիները։ Տարեցտարի բարձրանում է անասնապահության արդյունավետությունը։ Եթե մեկ հնգամյակ առաջ մի քանի կթվորուհիների էր հաջողվել ամեն մի կովից ստանալ երեք հազար կգ կաթ, ապա 1982 թվականին 136 կթվորուհիներից 105-ը անցան այդ բնագիծը։ Իսկ Օ. Գալոյանը (Քանաքեռավան), Թ. Ստեփանյանը (Նոր Երզնկա), Ռ. Խաչատրյանը (Նոր Գեղի) իրենց խնամքին հանձնած ամեն մի կովից ստացան 4.600—5.000 կգ կաթ։

«Աշխատել արդյունավետ և որակով»— սա մեր անասնապահների նշանաբանն է։ Եթե մի քանի տարի առաջ մթերված կաթի 24 տոկոսն էր առաջին տեսակի, ապա այժմ այն հասել է 90 տոկոսի։ Տնտեսությունների մեծ մասը մթերակայան է հանձնում 400—500 կգ քաշ ունեցող անասուններ։ Միայն որակի համար որպես հավելավճար նրանք տարեկան ստանում են 1,2—1,5 միլիոն ռուբլի։

Գաղափարախոսական աշխատանքը նպաստում է տնտեսական խնդիրների լուծմանը, իսկ տնտեսական հաջողությունն իր հերթին նպատակասլաց ու ներգործուն գաղափարական գործունեության ամուր հիմք է ծառայում։ Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը, իհարկե, չի կարելի չափել միայն տնտեսական, արտադրական ցուցանիշներով։ Նրա ընդգրկման ոլորտն ավելի լայն է։ Այն պետք է ակտիվ ներազդի մարդու մտքի և սրտի վրա, նպաստի նրա քաղաքական, աշխատանքային ու բարոյական կերպարի ձևավորմանը, նրա վերափոխմանը։

Մեզ մոտ աճել են այնպիսի ղեկավար կադրեր ու մասնագետներ, որոնք

կարողանում են գործիմացությունը զուգակցել նախաձեռնության, տնտեսավարի հաշվենկատությունը՝ խանդավառության հետ, ապահովում են խոսքի և գործի միասնություն, տիրապետում են մարդկանց հետ աշխատելու, նրանց իրենց ետևից տանելու բարդ արվեստին։ Կարելի է հիշատակել Քանաքեռավանի սովխոզի դիրեկտոր Ս. Ջուհարյանին, Զովունիի սովխոզի դիրեկտոր Մ. Սիմոնյանին, հայկական մեքենափորձնական կայանի և Քասախի սովխոզների գլխավոր գյուղատնտեսներ Տ. Սարգսյանին և Խ. Խաչատրյանին, «Գյուղտեխնիկայի» շրջանային միավորման գլխավոր ինժեներ Գ. Փիլոյանին և ուրիշների։

Հանրային արտադրության առաջընթացի, բարձր արդյունավետության գումարելիները բազմազան են։ Բայց ամենակարևորը մարդկային գործոնն է։ Մարդ-աշխատավորի մեջ թաքնված են անսպառ հնարավորություններ։ Խնդիրը գաղափարական-դաստիարակչական ներգործության բոլոր միջոցներով, տնտեսական ու կազմակերպչական աշխատանքով դրանք կյանքի կոչելն է, գործողության մեջ դնելը։ Կուսակցական կազմակերպություններն իրենց գործունեության ծանրության կենտրոնն այժմ տեղափոխել են հենց այստեղ, օգտագործում են մասսայական և անհատական աշխատանքի բազմազան ձևեր ու մեթոդներ։

Ուշադրության է արժանի Զովունիի սովխոզի կուսակցական կազմակերպության աշխատանքի փորձը կոլեկտիվի անդամների կոմունիստական դաստիարակության գործում։ Այստեղ ստեղծված է այնպիսի մթնոլորտ, ուր ամեն մի կոմունիստ, յուրաքանչյուր աշխատավոր պարզորոշ գիտի իր տեղն ու դերը ընդհանուր շարքում, աշխատում է պատասխանատվությամբ, նվիրված ու ստեղծագործաբար։ Տնտեսությունում համարյա բացառված են աշխատանքային կարգապահության խախտումները։ Առաջիններից մեկը զովունցիները հանդես եկան «Հնգամյակը՝ չորս տարում», «Տեխնիկային՝ հոգատար վերաբերմունք» նախաձեռնություններով։ Բարձր է գնահատվել այս կոլեկտիվի աշխատանքը։ Տնտեսությունը երկու անգամ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին։

Սոցիալիստական մրցության կազմակերպման, խրախուսման միջոցների հմուտ և արդյունավետ կիրառման լավ օրինակ են տալիս Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկայի, Մրգաշենի սովխոզի, ոռոգման և ջրարբիացման համակարգերի վարչության կուսկազմակերպությունները։

Քանաքեռավանի սովխոզի և դպրոցի սկզբնական կուսկազմակերպությունները գաղափարախոսական աշխատանքը պլանավորելիս ու կազմակերպելիս ելնում են տարբերակված մոտեցման սկզբունքից, հաշվի են առնում մարդկանց այս կամ այն խմբերի առանձնահատկությունները՝ աշխատավորական կոլեկտիվ, դպրոց, երիտասարդություն և այլն։ Փորձը ցույց է տալիս, որ նման աշխատանքն ավելի ներգործուն ու արդյունավետ է։ Եվ պատահական չէ, որ այդ պրակտիկան լայն կիրառում է գտնում նաև մյուս կազմակերպություններում։

Սովորողներին և երիտասարդությանը գյուղատնտեսական արտադրության մեջ ներգրավելու, նրանց ավագ սերնդի աշխատանքային ավանդույթների ոգով դաստիարակելու նպատակով դրական գործ են անում Քասախի, Նոր Երզնկայի, Քարաշամբի և Թեղենիքի տնտեսությունների կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները։ Այստեղ լավ է կազմակերպվում նաև գյուղատնտեսական կարևոր կամպանիաների՝ այգեբացի, այգեթաղի, ցանքի, բերքահավաքի գաղափարական ապահովումը։ «Բերքը հավաքենք արագ և անկորուստ» նշանաբանը նյութական ուժ է ձեռք բերում մարդկանց վրա գաղափարադաստիարակչական ներգործության բոլոր միջոցներով։

Աշխատանքային կոլեկտիվներում մշտապես ուշադրության կենտրոնում են կարգապահության հարցերը։ Նրանք ջերմորեն պաշտպանեցին պետական, աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդման վերաբերյալ մոսկվացիների նախաձեռնությունը, որը մասսայականացվել ու քըն-



նարկվել է բոլոր կուսկազմակերպություններում։ Միջոցներ են ձեռնարկվում անխտիր բոլոր կոլեկտիվներում գիտակցական բարձր կարգապահության հաստատման, այնպիսի մթնոլորտի ստեղծման համար, որը բացառեր աշխատանքից ուշացման, անհարգելի բացակայության, գործալքման ամեն մի դեպք։ Մի շարք տնտեսություններ (Նոր Գեղի, Քանաքեռավան, Քասախ և այլն) աշխատում են «Կարգապահության բարձրացումից՝ որակի և արդյունավետության բարձրացում» նշանաբանով։

Ազատ, ստեղծագործ աշխատանքում աճել են իրենց գործի տասնյակ վարպետներ, որոնք իրենց անձնական օրինակով դաստիարակում են աշխատավորների նոր սերունդներ։ Ջ. Մայիլյանի, Հ. Սահակյանի, Ա. Սողոմոնյանի, Պ. Քոչկանյանի, Գ. Մնացականյանի և նրանց նման շատերի անունները հայտնի են շրջանում և նրա սահմաններից դուրս։ Մեր պարծանքն ու հպարտությունն են Սահակյանների (Եղվարդ), Ղազարյանների (Արագյուղ), Խալաթյանների (Քասախ), Երեմյանների (Նոր Գեղի), Գևորգյանների (Մրգաշեն), Իսրայելյանների (Պռոշյան), Հովհաննիսյանների (Թեղենիք), Գալստյանների (Բուժական) բանվորական գերդաստանները, որոնցում ավանդաբար, սերնդեսերունդ հաղորդվում են այնպիսի վեհ զգացումներ ու հատկանիշներ, ինչպիսիք են նվիրվածությունը հայրենի հողին, մեր մեծ հայրենիքի բարգավաճման ու ծաղկման համար անմնացորդ աշխատելու անհողդողդ կամքը։

Սկզբնական կուսկազմակերպությունները տարբեր միջոցներով ձգտում են բոլորի սեփականությունը դարձնել առաջավորների փորձը, լավ նախաձեռնությունները։ Հաճախակի են անցկացվում սեմինարներ, գործում են առաջավոր փորձի դպրոցներ, լույս են ընծայվում թերթիկներ։ Լավ են ընդունվում գյուղատնտեսության տարբեր բնագավառներին վերաբերվող գիտագործնական կոնֆերանսները։ Դրանց հանձնարարականները ներդրվում և տալիս են գործնական արդյունքներ։

Գաղափարախոսական աշխատանքի կարևոր ուղղություններից մեկը հողի, ջրի, տեխնիկայի, ունեցած հնարավորությունների արդյունավետ օգտագործման նկատմամբ մարդկանց մոտ համապատասխան հոգեբանություն և վերաբերմունք մշակելն է։ Այստեղ գործում են և՛ դրական օրինակի դաստիարակիչ ուժը, և՛ քննադատության զենքը։ Անտարբերությունը, անհոգությունը, ծուլությունը, մեր ունեցածի նկատմամբ սպառողական վերաբերմունքը ամեն քայլափոխի հանդիպում են հակահարվածի։

Մենք ձգտում ենք հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ղեկավար աշխատող, մասնագետ, բանվոր հստակորեն իմանա, թե այդ առումով ինչ աշխատանք պիտի կատարի, ինչ բնույթի, և դա անի ստեղծագործաբար, հաճույքով։ Ընդ որում դրանց նկատմամբ կուսակցական կազմակերպությունները ներգործուն և օպերատիվ հսկողություն են սահմանում։ Կուսժողովների օրակարգում հաճախ կարելի է հանդիպել ղեկավար կադրերի, մասնագետների և շարքային կոմունիստների հաշվետվությունների։ Այդ պրակտիկան լայնորեն կիրառվում է նաև կուսակցության շրջկոմում։ Կազմակերպությունների հաշվետվությունները լսվում են ոչ միայն բյուրոյի նիստերում, այլև շրջկոմի պլենումներում։

Մեծ նշանակություն ունի գաղափարախոսական գործունեության կադրային ապահովումը։ Կուսկազմակերպությունները կադրերին գնահատելիս ելնում են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի այն ցուցումից, որ «Անհրաժեշտ է ստեղծել տնտեսական ու կազմակերպական այնպիսի պայմաններ, որոնք խթանեն որակյալ, արտադրողական աշխատանքը, նախաձեռնությունն ու ձեռներեցությունը։ Եվ, ընդհակառակը, վատ աշխատանքը, անգործությունը, անպատասխանատվությունը պետք է ամենաանմիջական և անկասելի կերպով անդրադառնան թե՛ աշխատողների նյութական վարձատրության, թե՛ նրանց պաշտոնական դիրքի, թե՛ բարոյական հեղինակության վրա»։

Արտադրական ոլորտի վրա ակտիվ ներգործությունն ապահովելու համար գաղափարախոսական ճակատի աշխատողները պետք է պարզորոշ տեսնեն նոր խնդիրներն ու պրոբլեմները, լավ իմանան ժամանակակից էկոնոմիկան, նրա

զարգացման միտումներն ու հեռանկարները։ Կուսակցության շրջկոմն այդ նպատակով պլանավորված աշխատանք է տանում պրոպագանդիստների ու դասախոսների հետ։ Շրջանի պրոբլեմների, գյուղատնտեսության զարգացման հեռանկարների և այլ թեմաներով նրանց առջև հաճախ են ելույթ ունենում շրջկոմի քարտուղարները, շրջսովետի գործկոմի ղեկավարները, գիտության ներկայացուցիչները։ Շրջանում գյուղատնտեսության մեջ և նրան առնչվող ճյուղերում աշխատում են գիտությունների 6 դոկտորներ, մոտ 70 թեկնածուներ, 150-ից ավելի բարձրագույն կրթությամբ մասնագետներ, որոնք ակտիվորեն մասնակցում են գաղափարադաստիարակչական աշխատանքին։ Նրանց հանձնարարականներն ու խորհուրդները նպաստում են գյուղատնտեսական էկոնոմիկայի ամրապնդմանը։ «Հայգյուղմեքենայացում» գիտաարտադրական միավորումը մշակել է շրջանի գյուղատնտեսության կոմպլեքսային մեքենայացման հեռանկարային պլան։ Հողօգտագործման գիտական սխեմա են մշակել «Հայպետհողշիննախագիծ» ինստիտուտի աշխատակիցները։ Այնուհանդերձ, գյուղի աշխատավորները, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում, դեռևս շատ սպասելիքներ ունեն գիտնականներից։

Պարենային ծրագրի կատարման գործում իրենց ներդրումը պետք է անեն քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունները։ Մեր անելիքներն այս բնագավառում շատ են։ Շրջանի գյուղական ընտանիքներից կով ունի միայն 35 տոկոսը, ընդհանրապես անասուններ՝ 44 տոկոսը։ Անհանգստացնողը միայն անասունների քիչ քանակը չէ, այլև մարդկանց մի մասի ժխտողական վերաբերմունքն այդ կարևոր գործի նկատմամբ։ Համոզել նրանց, փոխել այդ վերաբերմունքը, գյուղացուն օգնել չկտրվելու իր դարավոր զբաղմունքից՝ ահա լուրջ մի խնդիր, որի լուծումը նույնպես շատ ջանքեր է պահանջում։ Եվ պետք է ասել, որ կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս կազմակերպությունների ծավալած աշխատանքի առաջին արդյունքներն արդեն առկա են։ Անցած տարի անձնական սեկտորում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 800-ով, որից կովերինը՝ 200-ով։ Քաղաքացիները պայմանագրային կարգով պետությանն են վաճառել 230 տոննա միս։ Տեղից սկսել է շարժվել հիմնարկ-ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների ստեղծման գործը։

Մարդկանցից պահանջելը, նրանց ջանքերը առաջադրված խնդիրների լուծմանը նպատակամղելը պետք է ուղեկցվի նրանց նկատմամբ մշտական, սրտացավ հոգատարությամբ։ Ամեն ինչ մեր երկրում պետք է ծառայեցվի մարդու բարօրությանը։ Մեր գյուղերի աշխատավորները դժգոհելու քիչ առիթ ունեն։ Գրեթե բոլոր ֆերմաներն ապահովված են նորակառույց, հարմարավետ, կոմպլեքսային մեքենայացված գոմերով, ունեն լավ կահավորված հանգստի և լոգանքի սենյակներ։ Բարեկարգվում են այգեմիջյան ճանապարհները, կառուցվում են հարմարավետ դաշտային տնակներ։ Տնտեսությունների մի մասում աշխատավորներն ստանում են անվճար սնունդ։ Բարելավվում են մարդկանց բնակարանային պայմանները, աճում են եկամուտները։

Գյուղը պետք է գյուղ լինի իր իսկական իմաստով՝ հին, բայց լավ ավանդույթների և նոր կենցաղավարության ճիշտ զուգորդմամբ։ Այժմ գրեթե վերջ է տրված այն ոչ ճիշտ պրակտիկային, երբ հողի աշխատավորի համար կառուցվում էին բազմահարկ շենքեր՝ առանց հողամասի և օժանդակ հարմարությունների մասին հոգալու։ Վերջին երկու տարում գյուղական վայրերում պետական միջոցներով կառուցվել են մեկ-երկու ընտանիքի համար բոլոր տեսակի հարմարություններ ունեցող մոտ 120 տներ։ Գյուղերում իրականացվում է սոցիալ-կուլտուրական մեծածավալ շինարարություն։ Բոլոր բնակավայրերն ունեն կուլտուրայի օջախներ, առողջապահության, առևտրի, կենցաղի օբյեկտներ։ Այս միջոցառումների իրականացումը էապես նպաստում է գյուղի բնակչին հողի հետ կապելու, երիտասարդությանը գյուղատնտեսական արտադրության մեջ ներգրավելու խնդրի լուծմանը։ Ներկայումս անասնապահության բնագավառի աշխատողների ավելի քան 35 տոկոսի տարիքը չի անցնում 30-ից։ Դպրոցների շատ շրջանավարտներ սիրով գնում են ֆերմա, նստում տրակտորի ու կոմբայնի ղեկի մոտ, զբաղվում շինարարությամբ։



Տարիներ առաջ մի շարք գյուղերի (Թեղենիք, Քարաշամբ, Գետամեջ) դպրոցներ կամ առանձին դասարաններ, աշակերտների քանակի խիստ կրճատման պատճառով, փակելու վտանգի տակ էին, իսկ հիմա համալրվում են, մեծանում։ Տասը տարում շրջանի բնակչությունն աճել է 14 հազարով՝ հասնելով 42 հազարի։

Իհարկե, գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունքները դժվար են ենթարկվում հաշվարկման։ Բայց անժխտելի է այն ճշմարտությունը, որ այդ գործունեության պտուղները առարկայացվել են շրջանում տիրող բարոյաքաղաքական առողջ մթնոլորտում, նյութականացված են սոցիալ-տնտեսական հաջողություններում։ Տասը տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը շրջանում աճել է մոտ 3,5 անգամ՝ 6,2 միլիոնից հասնելով 20,5 միլիոն ռուբլու։

Զարգացման նման տեմպերը կշարունակվեն նաև ընթացիկ և եկող հնգամյակներում։ Դրա համար, իհարկե, մեծ ջանքեր կպահանջվեն։ Ինչպես միշտ, այստեղ ևս գլխավոր ծանրությունն ընկնում է գյուղական կուսակցական կազմակերպությունների վրա, որոնցում ներգրավված են 960 կոմունիստներ։ Ընթանալով պայքարի ավանգարդում, նրանք ձգտում են պարտքի ու պատասխանատվության բարձր զգացումով կատարել ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի այն ցուցումը, որ պարենային ծրագիրն իր առաջին պտուղները պետք է տա հենց առաջին տարվանից։ Չնայած 1982 թ. գարնանը տեղի ունեցած աննախադեպ աղետին՝ ուժեղ կարկտահարությանը, որը մոտավոր հաշվարկներով գյուղատնտեսությանը պատճառեց 5—5,5 միլիոն ռուբլու վնաս, աշխատավորների համառ ջանքերով կրճատվեցին աղետի վնասները, նվաճվեցին տարվա համար նախատեսված կարևոր բնագծերը։ Այսպես, պլանով նախատեսված 861-ի փոխարեն, պետությանը վաճառվել է ավելի քան 1000 տոննա հացահատիկ, 8.300-ի փոխարեն՝ 8.400 տոննա խաղող։ Աշխատանքի լավ օրինակ են տալիս անասնապահները։ Շրջանը կաթի արտադրության և պետական վաճառքի տարեկան պլանները կատարեց ինն ամսում։ Տարվա համար նախատեսված 2.359-ի փոխարեն, ամեն մի կովից ստացվեց 3.025 կգ կաթ։ Կատարվել են նաև մսի, ձվի, բրդի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության և պետական մթերումների առաջադրանքները։ Տարին հաջողությամբ են փակում արդյունաբերության և շինարարության աշխատողները։

Սակայն մեզ մոտ ևս կան շատ թերություններ ու թերացումներ, իսկ անելիքները մեծ են։ Ագրոարդյունաբերական միավորումների ստեղծումը, պարենային ծրագրի հաջող իրագործումը պահանջում են էապես բարելավել կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս կազմակերպությունների գործունեությունը։ Նոր խնդիրներ են դրվում գաղափարական ճակատի աշխատողների առջև, իսկ դրանց լուծման համար անհրաժեշտ է ծավալել պլանավորված, կոմպլեքսային աշխատանք։

Կուսշրջկոմի պլենումում, կուսկազմակերպությունների ժողովներում, տեղական սովետների նստաշրջաններում, աշխատավորական կոլեկտիվներում ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումների, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթի պահանջների ոգով վերլուծվել է գործերի վիճակը, մշակվել և իրականացվում են գործնական միջոցառումներ, որոնց նպատակն է ըստ ամենայնի բարելավել կուսկազմակերպությունների և տնտեսական ղեկավարության գործունեությունը, ապահովել շրջանի ժողովրդական տնտեսության դինամիկ զարգացումը և կայուն վերելքը։

Ժողովրդի բարեկեցության նկատմամբ կուսակցության ու կառավարության հոգատարությանը Նաիրիի շրջանի աշխատավորները պատասխանում են հայրենանվեր գործերով ու նախաձեռնություններով։ Նրանք ծավալել են գործարար մրցություն, համաժողովրդական պայքար ելել 1983 թվականի՝ հնգամյակի որոշիչ տարվա առաջադրանքները պատվով կատարելու, պարենային ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար։

---

Սոցիալիստական ընկերակցության երկրներում

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ ԲՈՒԼՂԱՐԻԱՅՈՒՄ

ԳՐԻԳՈՐ ԴԻՄԻՏՐՈՎ

*ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ կուսակցության XII համագումարի հաստատած սոցիալ-տնտեսական գլխավոր խնդրին համապատասխան՝ 1982 թ. հունվարի 1-ից Բուլղարիայում արմատավորվում է ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործված տնտեսական մեխանիզմ։ Դրա շնորհիվ անհրաժեշտ պայմաններ ու նախադրյալներ են ստեղծվում էկոնոմիկայի և ամբողջ հասարակության ղեկավարման ու գործունեության բնագավառում տնտեսական նոր մոտեցումն ամենուրեք ու լրիվ արմատավորելու համար։*

*Վաթսունական թվականների սկզբին Բուլղարիայում ծագեց սոցիալական կառավարման համակարգի կատարելագործման անհրաժեշտություն։ Դա թելադրված էր հասարակության մեջ տեղի ունեցած փոփոխություններով և էկոնոմիկայում ու հասարակական կյանքում գիտատեխնիկական նվաճումների մասսայական արմատավորմամբ։ Սոցիալական կառավարման միասնական համակարգի ստեղծումը դարձավ օբյեկտիվ անհրաժեշտություն։*

*Կառավարվող տնտեսական օբյեկտների բարդությունն ու մեծածավալությունը պահանջում էին ուշադրություն նվիրել կառավարման համակարգի վրա՝ որպես մի միասնական ամբողջության, այլ ոչ թե նրա միայն մեկ բաղադրամասի վրա։ Միայն առանձին օղակների գործունեության վերափոխումն արդեն ի վիճակի չէր տալու այն անհրաժեշտ արդյունքը, որին կարելի էր հասնել կառավարման համակարգի ամբողջական կատարելագործմամբ։ Աշխատանքն այդ ոլորտում, որն սկսվել է ժողովրդական տնտեսության պլանավորման ու ղեկավարման նոր համակարգի արմատավորմամբ, իր շարունակությունը գտավ ծրագրային-կոմպլեքսային մոտեցման ձևավորման ու կիրառման մեջ։ Դա ապահովեց սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարման գործում տնտեսական նոր մոտեցման մշակումը։ Վերջինս տնտեսական մեթոդների, ներգործման ու կարգավորման միջոցների և կազմակերպման ձևերի միասնական համակարգ է, որը կոմպլեքսայնորեն ընդգրկում է պլանավորումը, արտադրությունը, բաշխումը և կառավարումը։ Այն նպաստում է հասարակության տնտեսական կազմակերպության ավելի լրիվ կիրառմանը՝ տնտեսական օբյեկտիվ օրենքների գործողություններին համապատասխան։*

*Տնտեսական մոտեցումն ամրակայվում է այն փաստի վրա, որ սոցիալիստական արտադրությունն իր բնույթով ապրանքային է։ Անկախ այն բանից, որ ապրանքադրամային հարաբերությունները սոցիալիզմի ժամանակ որակապես տարբերվում են կապիտալիստական հասարակարգի նման հարաբերություններից, դրանք օբյեկտիվորեն գոյություն ունեն և սոցիալիստական արտադրահարաբերությունների բնորոշ գիծն են։ Այստեղից բխում է ապրանքադրամային հարաբերությունները լրիվ օգտագործելու անհրաժեշտությունը՝ հաղորդելով դրանց նոր բովանդակություն, կատարելագործելով դրանց*



*հետ կապված տնտեսական այնպիսի կատեգորիաները, ինչպիսիք են շահույթը, տնտհաշվարկը, գինը, ինքնարժեքը, վարկը և այլն։*

*Նոր մոտեցման պայմաններում վերարտադրության ամբողջ պրոցեսի ղեկավարումն ու կառավարումը իրականացվում են տնտեսական միջոցներով ու մեթոդներով, առանց վարչարարարության ու խնամառության, որոնք հակասում են բուն սոցիալիստական համակարգի էությանը։*

*Նոր տնտեսական մոտեցման կարևորագույն բաղադրամասերն են պլանավորման, աշխատանքի սոցիալիստական կազմակերպման համակարգի կատարելագործումը, շուկայի հետ արտադրության անմիջական կապի նոր ձևերը, գիտության և արտադրության միջև որակապես նոր առնչությունների ձևավորումը և այլն։*

*Այդ բարեփոխումները մեր երկրում նախ կիրառվեցին գյուղատնտեսության մեջ, իսկ 1980 թվականից սկսած՝ նյութական արտադրության բոլոր ճյուղերում։ 1981 թվականին այն փորձնականորեն կիրառվեց նաև ոչ նյութական ոլորտում։ Սակայն կատարվածն առաջին քայլն էր միայն մեր երկրում հասուն սոցիալիստական հասարակարգի կառուցման փուլին համապատասխանող կառավարման համակարգի ստեղծման գործում։*

*Ելնելով դրանից, ԲԿԿ XII համագումարը հիմնավորեց ինչպես բուն տընտեսական մոտեցման, այնպես էլ նրա մեխանիզմի կատարելագործման աշխատանքը շարունակելու հրատապությունը։ Դա անհրաժեշտ էր երկրի ու էկոնոմիկայի կառավարման մի շարք կարևոր տնտեսական պրոբլեմներ լուծելու համար։ Կոնկրետ դա վերաբերում է սոցիալիստական սեփականության, պետական և հանդիպական պլանի բնույթին, արդի պայմաններում դեմոկրատական ցենտրալիզմի, ապրանքադրամային հարաբերությունների էությանը։*

*Տեսական և գործնական այս պրոբլեմների պարզաբանումով միայն դրանք գտան իրենց նորմատիվ կարգավորումն ու լուծումը։ Այն լրիվ բխում է նոր տնտեսական մեխանիզմից, որն 1982 թ. հունվարից արմատավորվել է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։*

*Այժմ Բուլղարիայի էկոնոմիկայում գործող կատարելագործված մեխանիզմը պահպանել է նախկինի էական կողմերը, որոնց սկզբունքային դրույթներն այսօր էլ ուժի մեջ են։ Սակայն այն պարունակում է ոչ քիչ թվով նոր տարրեր, այն առավել ներգործուն է և ամրակայվում է սկզբունքների ու նպատակների միասնության վրա։*

*Տնտեսական մեխանիզմի կատարելագործումը հետապնդում է հետևյալ նպատակները. վերարտադրության պրոցեսի կառավարումը դնել տնտեսական հիմքի վրա. ամբողջ արտադրապրոցեսի առանձին փուլերի և օղակների միջև բոլոր կապերն ու փոխհարաբերություններն իրականացնել տնտեսական մեթոդներով և միջոցներով. պայմաններ ստեղծել ամենուրեք էկոնոմիկայի և հասարակական կյանքի մյուս ոլորտների գերազանցապես ինտենսիվ զարգացմանն անցնելու համար։ Տնտեսական մեխանիզմի կատարելագործված նորմատիվային կառուցվածքի գործադրումը կտա հումքի, նյութերի ու վառելիքի խնայողություն, հնարավորություն կընձեռի աշխատուժը, նյութատեխնիկական բազան ռացիոնալ օգտագործելու համար։ Այսինքն՝ կենսագործել խնայողության և հատկապես ժամանակի խնայողության խիստ ռեժիմ, աջակցել սոցիալիստական դեմոկրատիայի առավելագույն ծավալմանն ու խորացմանը, անմիջական կապ իրականացնել հանրային արտադրության և շուկայի միջև։*

*Բոլոր այն խնդիրները, որ առաջադրել է տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, վերջին հաշվով հանգում են մի նպատակի՝ առավել արդյունավետ աջակցել ութերորդ հնգամյակի գլխավոր սոցիալ-տնտեսական խնդրի լուծմանը, այն է՝ շարունակել ժողովրդի հարաճուն նյութական, հոգևոր և սոցիալական պահանջների կոմպլեքսային բավարարման կուրսը։*

*Ժողովրդական տնտեսության կառավարման տնտեսական մեխանիզմի ամենաէական կողմն է՝ պլանային ղեկավարման սկզբունքների հաստատումը, որոնք իրականացվում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացման երկարաժամկետ, հնգամյա և տարեկան պլանների միջոցով։*

Պլանավորման նոր տեխնոլոգիայում հիմնական ուշադրությունը հատկացվում է երկարաժամկետ պետական տնտեսական քաղաքականության ձևավորման վրա, զարգացման տեմպերի ու համամասնությունների որոշման, ազգային հաշվեկշիռների կայունացման և ժողովրդական տնտեսության, ողջ հասարակական օրգանիզմի համամասնական ու ներդաշնակ զարգացման համար բոլոր անհրաժեշտ պայմանների ապահովման վրա։

Միաժամանակ զարգանում է դեմոկրատիզմը պլանավորման գործում, ըստ որում ոչ թե մինիստրությունները, այլ տնտեսական կազմակերպություններն են պետական պլանային առաջադրանքների անմիջական կատարողները և անմիջականորեն պատասխանատու դրանց կատարման համար։ Նրանք ուղղակի կառավարությունից են ստանում հաստատված պետական պլանները, որոնք ներառնում են վերջնական տնտեսական արդյունքների և ռեսուրսների ապահովման նվազագույն թվով ցուցանիշներ։

Տնտեսական մեխանիզմը պարզություն է մտցնում հանդիպական պլանների բնույթի մեջ։ Հանդիպական պլանը դառնում է ամբողջ տնտեսական գործունեության կոմպլեքսային գիտատեխնիկական, արտադրական, ֆինանսական և սոցիալական պլան։ Վերջին հաշվով դա տնտեսական կազմակերպությունների ու ձեռնարկությունների միակ պլանն է, որը կազմվում է ինքնուրույն. աշխատավորական կոլեկտիվները իրենք են ընդունում այն և պատասխանատվություն կրում դրա կատարման համար։ Այսպիսով, արտադրամիջոցների տերը՝ աշխատավորական կոլեկտիվը, հնարավորություն ունի իր գործունեության մեջ հաշվի առնելու ինչպես պետական, համաժողովրդական, այնպես էլ կոլեկտիվի շահերը։ Նոր մեխանիզմը նպաստում է հանդիպական պլանների շնորհիվ կոլեկտիվի բացահայտած ռեզերվները ձեռնարկություններից վերցնելու պրակտիկայի վերացմանը։ Նպատակ է դրվում հանդիպական պլան կազմելիս տնտեսական կազմակերպություններն ու ձեռնարկություններն ազատել ամեն տեսակ բյուրոկրատական խնամակալությունից ու հովանավորությունից։ Յուրաքանչյուր կոլեկտիվի և աշխատավորի հնարավորություն է ընձեռվում գտնելու և օգտագործելու առկա ռեզերվները, հասնելու բարձր արդյունավետության։ Պլանավորման ցենտրալիզմն ու դեմոկրատիզմը զուգակցվում են այնպես, որ լայն ասպարեզ ապահովվի աշխատավոր մասսաների նախաձեռնության, ինչպես նաև բարձր արդյունավետ աշխատանքի համար։

Ութերորդ հնգամյակում կառավարման տնտեսական մեխանիզմի բնորոշ գիծն է նաև տնտհաշվարկի հետևողական կիրառումը և ֆինանսական լրիվ ինքնապահովումը յուրաքանչյուր տնտեսական կազմակերպությունում, ձեռնարկությունում և բրիգադում։

Տնտհաշվարկը և ֆինանսական ինքնապահովումը դառնում են բոլոր ոլորտների ղեկավարման ու զարգացման համատարած ու համընդհանուր սկզբունք։ Յուրաքանչյուր կոլեկտիվ պետք է աշխատի այնպես, որ բավականաչափ եկամուտ ստանա ոչ միայն հասարակական ու կոլեկտիվ պահանջմունքները բավարարելու համար, այլև ապահովի աշխատավարձի անհրաժեշտ ֆոնդ, ինչպես նաև միջոցներ՝ ընդլայնված վերարտադրության համար և համապատասխան ռեզերվներ ու կուտակումներ։

Կոնկրետ ի՞նչ է լուծում տնտեսական մեխանիզմը տնտեսական գործունեության և ֆինանսական ինքնապահովման բնագավառում.

ա) զգալիորեն բարձրանում են շահույթի դերն ու նշանակությունը։ Այն դառնում է հիմնական ցուցանիշ՝ արտադրատնտեսական գործունեության արդյունավետության խնդիրները պլանավորելիս։ Ընդ որում խոսքը համընդհանուր շահույթի մասին է՝ որպես տնտեսական գործունեությունից իրացված զուտ եկամտի դրամական արտահայտություն։ Եվ ավելին. դա այն շահույթն է, որը ստացվում է տնտեսությունն արդյունավետ վարելուց, այլ ոչ թե այն շահույթը, որը ստացվում է ապրանքների ու ծառայությունների գները սպեկուլյատիվ կերպով բարձրացնելու շնորհիվ։ Պետական նորմատիվների խախտումների հետևանքով ստացված շահույթը համարվում է ապօրինի և ենթակա է մուտքագրման բյուջեում։



Շահույթը դառնում է բաշխման պրոցեսների հիմք՝ տնտեսական կազմակերպությունների ու ձեռնարկությունների ֆոնդերի կազմավորման և բաշխման համար։

բ) Տնտհաշվարկի բնագավառում մեխանիզմը ստեղծում է երաշխիքներ, որոնք հնարավորություն են ընձեռում ոչ թե բոլոր միջոցները կենտրոնացնելու վերադաս կազմակերպություններում, այլ ամրապնդելու ամեն մի տնտեսական միավորի ֆինանսական բազան և ավելացնելու այն միջոցները, որոնք մնում են տնտեսական կազմակերպությունների տնօրինության ներքո։ Ստեղծվում է նպատակային ֆոնդերի ծավալուն համակարգ և ընդլայնվում են տնտեսական կազմակերպությունների իրավունքները դրանց օգտագործման բնագավառում։

գ) Տնտհաշվարկը և ֆինանսական ինքնապահովումն իրականացվում են երկարաժամկետ ու կայուն նորմատիվների հիման վրա։ Այսպիսով, պայմաններ են ստեղծվում արդյունավետ ստեղծագործական որոնումների համար։

դ) Բարձրանում է արտադրանքի իրացման դերը, որն իրականացվում է սպառողների հետ նախապես կնքված պայմանագրերի հիման վրա։ Վաճառահանումից ստացվող մուտքերը դառնում են տնտեսական կազմակերպությունների եկամուտների հիմնական աղբյուրը։ Ուստի տնտեսական նոր մեխանիզմի պայմաններում արտադրանքի իրացումը դառնում է նրանց աշխատանքի հանգուցային հարցը։ Առանց այդ հարցի լուծման անհնար է տնտեսական կազմակերպությունների ու դրանց ստորաբաժանումների ֆինանսական ինքնապահովումը։ Ուժեղացնելով սպառողների հետ նախապես կնքված պայմանագրերի դերը և, օգտագործելով արտադրանքի իրացման մասին եղած որոշումը, իրականացվում է բալանսավորումը։ Սահմանվում է պլանի ռեալությունը և ապահովվում եկամուտների ստացումը միայն այն արտադրանքի հաշվին, որը վաճառահանման պրոցեսում արժանացել է հասարակական ճանաչման։

ե) Տնտհաշվարկը և ֆինանսական ինքնապահովումը, որպես տնտեսական մեխանիզմի բնորոշ գծեր, հնարավորություն են ընձեռում գործնականորեն իրականացնելու ըստ աշխատանքի քանակի ու որակի վարձատրության սոցիալիստական սկզբունքը։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման և տնտեսական միջոցների անմիջական օգնությամբ ներդրվող մեթոդներն արդեն ամբողջովին ընդգրկում են նաև աշխատավարձի ֆոնդի ձևավորումը։ Նման մոտեցումը հիմնվում է ժողովրդական տնտեսության կառավարման տնտեսական մեթոդների վրա և ամբողջովին համապատասխանում ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխման օրենքի նոր պահանջներին։ Տնտեսական մեխանիզմի նորմատիվային փաստաթղթերի համաձայն, աշխատավարձի ֆոնդը դադարում է կոլեկտիվի գործունեության արդյունքներից անկախ երաշխավորված մեծություն լինելուց։ Այն արդեն կրում է արդյունավետ-մնացորդային բնույթ և ստեղծվում է իրենց իսկ՝ աշխատավորների կողմից արտադրության տարրերի արդյունավետ օգտագործմամբ։ Այս սկզբունքային դրույթը գործող տնտեսական մեխանիզմում դարձել է օրենք։

Բաշխման և արդյունավետ-մնացորդային մեծությամբ արտահայտված կոնկրետ աշխատավարձի ֆոնդի ձևավորման ժամանակ տնտեսական մոտեցման հետևողական ներդրումը պահանջում է ժամանակին հաշվառել այն, որ աշխատանքից ստացվող անձնական եկամտի մեծությունը պետք է ավելի ու ավելի պայմանավորվի յուրաքանչյուր աշխատողի արտադրական պոտենցիալի, գործնականում դրա առավել լրիվ և արդյունավետ իրացմամբ։

Եկամուտների գոյացման ու բաշխման եղանակով, մնացուկային մեծության ձևով որոշվում են աշխատավարձի միջոցները։ Բայց շահույթի ոչ ամբողջ մնացուկը կարելի է հատկացնել այդ նպատակին։ Այդ հատկացումները հնարավոր են միայն աշխատավարձի ֆոնդի առավելագույն հնարավոր չափի սահմաններում։ Ըստ էության, այդ չափը տնտեսական մեխանիզմի առավել կարևոր տարրերից է, քանի որ այն արտացոլում է գործունեության արդյունքը։ Այդ նպատակով աշխատավարձի առավելագույն հնարավոր ֆոնդի կոնկրետ չափը պայմանավորվում է ընդհանուր եկամտի մեծացմամբ՝ ըստ գոր-

ծոնների։ Այն է՝ նախորդ տարիների համեմատությամբ ընդհանուր եկամտի աճով՝ անմիջական նյութական ծախսերի խնայողության հաշվին արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ, ինչպես նաև մյուս գործոնների համեմատությամբ ընդհանուր եկամտի մեծացմամբ։ Որքան ավելի ճիշտ է իրականացվում բաշխման պրոցեսը, այնքան ավելի մեծանում է աշխատավորների շահագրգռվածությունը բարձր արդյունավետության և որակի հասնելու, ժողովրդական տնտեսության ինտենսիվացման կուրսն իրականացնելու համար, այնքան ավելի ներդաշնակորեն են զուգակցվում անձնական, կոլեկտիվ և հասարակական շահերը։

Տնտեսական մեխանիզմի մյուս բնորոշ գիծը էկոնոմիկան ինտենսիվ վարելու գործում տնտեսական շահագրգռվածության և տնտեսական անհրաժեշտության ուժեղացումն է՝ գիտության, տեխնիկայի նվաճումները և առաջավոր փորձը ներդնելու միջոցով։

Նոր մեխանիզմի նպատակն է փակել գիտատեխնիկական մշակումների ու դրանց արմատավորման միջև եղած ճեղքվածքը, վերացնել այդ բնագավառում եղած «չեզոք գոտին» և տնտեսական կազմակերպությունների, ինժեներական, գիտական, նախագծային և այլ կազմակերպությունների աշխատանքն ու շահերը ենթարկել նորի արմատավորմանը, արտադրության տեխնիկական, տեխնոլոգիական և կազմակերպական մակարդակի ու արտադրանքի որակի բարձրացմանը։ Այդ կապակցությամբ կիրառական ուղղության բոլոր գիտական կազմակերպությունները, անկախ դրանց ենթակայությունից, բոլոր ինժեներական կազմակերպությունները փոխադրվել են լրիվ տնտհաշվարկի։

Տեխնիկական առաջընթացը խթանելու նպատակով բոլոր ձեռնարկություններում ստեղծվում է տեխնիկական առաջընթացի խթանման ֆոնդ, որտեղ կուտակվում է գիտատեխնիկական նվաճումների ներդրումից ստացված տնտեսական արդյունքի մի մասը։ Այդ ֆոնդի առկա միջոցները ծախսվում են են այն բանվորների, մասնագետների ու ղեկավար կադրերի պարգևատրման համար, որոնք անմիջականորեն մասնակցել կամ աջակցել են գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների արմատավորմանը։

Տեխնիկական առաջընթացն արագացնելու գործում կարևոր դեր են խաղում կապիտալ ներդրումները, ներդրման պրոցեսի կառավարումը։ Դրանց արդյունավետ իրացման նպատակով հայտարարվում է մրցանակաբաշխություն, որի նպատակն է ներդրումներն ուղղել նոր կարողությունների կառուցմանը, վերակառուցմանն ու արդիականացմանը։ Փոխվել է նախագծային կազմակերպությունների աշխատանքի վարձատրության ու գնահատման եղանակը։ Վարձատրության չափը պայմանավորվում է ոչ միայն կատարված աշխատանքի քանակով, այլև նախագծի տեխնիկատնտեսական մակարդակով։ Եթե նախագիծը չի ապահովում բարձր արդյունավետություն կամ գերազանցում է լիմիտով սահմանված արժեքը, այն չի ընդունվում։ Բացի դրանից, նախագիծը ևս ընդունվում է մրցանակաբաշխությամբ, որով վերացվում է առանձին նախագծային կազմակերպությունների մենաշնորհ դրությունը։ Կապիտալ ներդնողը կարող է նախագիծը պատվիրել այն նախագծային կազմակերպություններին, որոնք ապահովում են տեխնկական առաջընթացի անհրաժեշտ մակարդակ։

Նոր տնտեսական մեխանիզմը պայմաններ է ստեղծում, որպեսզի յուրաքանչյուր արտադրող սպառողին հասնի և՛ ներքին, և՛ արտաքին շուկայում։ Անմիջական կապերի պահպանումը սպառողի հետ դառնում է յուրաքանչյուր տնտեսական կազմակերպության իրավունքը և պարտականությունը։ Յուրաքանչյուր արտադրող իրավունք ունի անմիջականորեն համաձայնության գալ և առևտուր անել, իսկ առևտրական կազմակերպությունը՝ հրաժարվելու պահանջարկ չունեցող ապրանքներից։

Արդյունավետ կապեր են ստեղծվում արտադրողի և միջազգային շուկայի միջև։ Տնտեսական կազմակերպությանը իրավունք է ընձեռվում իրականացնելու արտաքին առևտրական գործունեություն՝ համաձայնեցնելով այն համապատասխան ճյուղային մինիստրության և արտաքին առևտրի մինիստրության հետ։



Տնտեսական նոր մեխանիզմը էական փոփոխություններ է մտցնում մինիստրությունների, տնտեսական կազմակերպությունների և ձեռնարկությունների իրավունքների ու պարտականությունների մեջ. ամենից առաջ բարձրանում է տնտեսական կազմակերպությունների ինքնուրույնությունը, մեծանում նրանց իրավունքներն ու պատասխանատվությունը՝ իրենց համակարգերի ամբողջական վերարտադրական պրոցեսի օպերատիվ ղեկավարման գործում։ Նրանք իրենց վրա են վերցնում մինիստրության ֆունկցիաների մի մասը և դառնում կենտրոնացված պետական պլանավորման անմիջական օբյեկտ և հասցեատեր։ Որպես վերարտադրության պրոցեսի հիմնական իրականացնողներ, տնտեսական կազմակերպություններն անմիջական պատասխանատվություն են կրում կառավարության առջև պետական պլանային առաջադրանքների կատարման համար։ Տնտեսական օղակներն իրենք են կազմակերպում պլանի կատարումը և պայմանագրային ուղղակի կապեր ստեղծում միմյանց միջև։ Այդ կապակցությամբ նրանց իրավունք է վերապահվում ազատորեն և պայմանագրային հիմքի վրա միավորվել՝ աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսները՝ առավել արդյունավետ օգտագործելու նպատակով։

Նոր մեխանիզմի մեծ արժանիքն այն է, որ դրա շնորհիվ ստեղծվեց նոր տեսակի կոմպլեքսային բրիգադի մոդելը, որը դարձավ սկզբնական արտադրական, տնտեսական և սոցիալական միավոր։ Կատարելագործվում են նաև տնտեսական փոխհարաբերությունները բրիգադների, ձեռնարկությունների և ագրարային-արդյունաբերական կոմպլեքսների միջև։ Եթե այդ փոխհարաբերություններում առանձին կողմեր վնաս կամ կորուստ են կրում, ապա դրանք անպայման պետք է հատուցվեն մեղավոր կողմի հաշվին։

Նոր մեխանիզմի պայմաններում մինիստրությունները դառնում են պետական կառավարման գործադիր մարմիններ, որոնք աշխատում են միասնական պետական պլանի կատարման համար։ Ճյուղային մինիստրությունները պատասխանատու են ոչ թե առանձին կազմակերպությունների, այլ ողջ ճյուղի աշխատանքի համար։ Գործնականում դա նշանակում է, որ ստեղծվում է ճյուղային մինիստրությունների նոր տիպ, որը պատասխանատու է կուսակցական և պետական քաղաքականության իրականացման համար տվյալ արտադրության ողջ ճյուղում։

Տնտեսական մեխանիզմի էական գիծն է արտադրության կառավարման կոլեկտիվ մարմինների դերի ու նշանակության բարձրացումը։ Տնտեսական կազմակերպությունների, ձեռնարկությունների, ագրարային-արդյունաբերական կոմպլեքսների և բրիգադների կառավարման կոլեկտիվ մարմինները դառնում են ընտրովի, դրանք աշխատավորների ներկայացուցիչներն են ու նրանց շահերի արտահայտիչները։

Սահմանվում են նաև տնտեսական կազմակերպությունների և ձեռնարկությունների կառավարման կոլեկտիվ մարմինների իրավունքներն ու պարտականությունները։ Նախատեսվում է ղեկավար ու տեխնիկական կադրերի նշանակումը կատարել մրցույթով։

Տնտեսական մեխանիզմի նշված ընդհանուր բնորոշ գծերից բացի, հաստատված են նաև մի շարք յուրահատուկ դրույթներ գյուղատնտեսության, տրանսպորտի, էներգետիկայի, առևտրի, շինարարության համար։ Դրանք լրացնում և ճշգրտում են մեխանիզմի ընդհանուր կանոնադրությունը։ Առանձնապես էական փոփոխություններ են մտցվել գյուղատնտեսության պլանավորման ու ղեկավարման մեխանիզմի մեջ։

Սրանք են նոր տնտեսական մեխանիզմի հիմնական առանձնահատկությունները, որոնք բխում են ԲԿԿ XII համագումարի մշակած ու հաստատած նոր տնտեսական ստրատեգիայից։ Այդ բարեփոխումներն ապահովում են ցենտրալիզմի ու դեցենտրալիզմի այնպիսի զուգակցում, որոնք նպաստում են դեմոկրատիայի ծավալմանը և լայն ասպարեզ են բացում ինքնանախաձեռնության, հնգամյակի կարևոր խնդիրների կատարման գործում ռեալ սոցիալիզմի վիթխարի առավելությունների լրիվ դրսևորման համար։

Բուլղարիա

---

# ՊԱՐՏԻԶԱՆՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԵՂԲԱՅՐՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Ֆ. ԲՈՐՈՒՇԿՈ**
«Կոմունիստ Բելոռուսիի» ամսագրի բաժնի վարիչ

ԲԵԼՈՌՈՒՍԻԱՅՈՒՄ, ԻՆՉՊԵՍ և մյուս հանրապետություններում, ամեն տարի գարնան հետ սկսվում է հուզումնալից հանդիպումների շրջանը: Դրանք Հայրենական մեծ պատերազմի վետերանների՝ զենքի այդ մարտական ընկերների հանդիպումներն են: Շատ են նման հանդիպումների առիթները: Դա և փետրվարի 23-ն է՝ սովետական բանակի օրը, և մայիսի 9-ը՝ հաղթանակի օրը, և հուլիսի 3-ը՝ Մինսկը գերմանաֆաշիստական զավթիչներից ազատագրելու օրը: Հանդիպումներ են տեղի ունենում նաև հանրապետության մյուս քաղաքների ու շրջանների ազատագրման և հիշարժան ճակատամարտերի օրերին:

Հանդիպումների վայրերը նույնպես բազմազան են: Մինսկում վետերանները հավաքվում են Լենինի հրապարակում, Հաղթանակի հրապարակի՝ զոհված հերոսների հուշարձան-կոթողի մոտ, Գորկու և Չելյուսկինցիների անվան զբոսայգիներում, Հայրենական մեծ պատերազմի պատմության թանգարանի մոտ: Նախկին մարտիկներն արդեն սովորական դարձած հանդիպման վայրեր ունեն նաև մյուս քաղաքներում: Եվ ոչ միայն դրանցում: Քաղաքներում առավելապես հավաքվում են վետերան-ռազմաճակատայինները, հատկապես այն զորամասերից ու միավորումներից, որոնք ազատագրել են այդ քաղաքները, իսկ վետերան-պարտիզաններն ավելի հաճախ հանդիպում են շրջկենտրոններում, գյուղերում, մարտի վայրերում ու հատկապես անտառների իրենց նախկին գետնահյուղերի մոտ:

Բելոռուսիայի պարտիզաններին անվանում էին նաև անտառի զինվորներ: Անտառները՝ փշատերև թավուտները, կաղնուտները և անանցանելի ծմակներն են եղել նրանց հարազատ տունը: Այստեղից են նրանք մեկնել մարտական գործողությունների ու հանձնարարությունների: Եվ այստեղ էլ, հերթական գրոհից հետո, նրանք թաքնվել են նենգ ու մեծաթիվ թշնամուց, ուժ հավաքել ֆաշիստների հետ նոր գոտեմարտերի համար: Քանի՛-քանի տարիներ են անցել պատերազմից հետո, ո՛ւր միայն չեն մեկնել անտառի եղբայր-զինվորները, բայց նրանց կրկին ու կրկին ձգում է «իրենց անտառի հարազատ տունը», որտեղ ամբողջ հոգով, արտասվելու չափ հուզված երգում են բելոռուսական «Ա՛խ, կեչիներ ու սոճիներ, պարտիզանի քույրեր...» սքանչելի երգը:

Պարտիզանների այդ հանդիպումներին հուզիչ է հնչում մարտական բարեկամների ձայնը: Բազմաձայն այդ երգչախմբում կարելի է ամենատարբեր խոսվածքներ լսել՝ բելոռուսների ձ-ասացությունը, վոլգացիների՝ «օ»-ն, երգեցիկ ուկրաիներենը, Կովկասի և Միջին Ասիայի բնակիչների առոգանությունը... Բելոռուսական պարտիզանները միայն բելոռուսներ չէին. նրանք նաև ռուսներ էին ու ուկրաինացիներ, ղազախներ, հայեր, վրացիներ, լատիշներ, ուզբեկներ՝ այն բազմաթիվ ժողովուրդների զավակները, որոնցից բաղկացած էր հանրապետության տերիտորիայում գործող պարտիզանական հզոր բանակը:

Պարտիզանական պատերազմ... Այն գերմանաֆաշիստական զավթիչների դեմ սովետական ժողովրդի ու նրա զինված ուժերի մղած հերոսական սրբազան պայքարի բաղկացուցիչ մասն էր, որը ծագեց ՍՍՀՄ-ի վրա հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հարձակման առաջին իսկ օրերին: Նրա բոցը բռնկվեց ու բորբոքվեց ամեն տեղ ու ամենուրեք, որտեղ սովետական հողին դիպչել էր ֆաշիստի ոտքը: Այդպես էր և Բելոռուսիայում, որն առաջին հանրապետություններից թըվում իր վրա ընդունեց գերմանական տասնյակ դիվիզիաների հարվածը:

Հիշելով անցած հեղափոխական մարտերի փորձը, կուսակցության Պինսկի մարզկոմի սեկտորի վարիչ Վասիլի Զախարովիչ Կորժը (քաղաքացիական կռիվների ժամանակ նա պարտիզան է եղել, իսկ 30-ական թվականներին ինտերնացիոնալ բրիգադի կազմում մարտնչել Իսպանիայում) արդեն 1941 թվականի հունիսի 22-ին սկսեց կազմավորել հանրապետությունում առաջին պարտիզանական ջոկատը: Իսկ հինգ օր անց նա արդեն իր մարտիկներին՝ Պինսկի բանվորներին, կուսակցական ու սովետական աշխատողներին և կոմերիտականներին, հանեց ֆաշիստների դեմ մղած առաջին գրոհին: Մեկ տարվա ընթացքում Կորժի ջոկատն աճեց ու դարձավ յոթ ջոկատներից բաղկացած մի պարտիզանական միավորում, իսկ պատերազմի վերջում նրա հրամանատարին տրվեց գեներալի աստիճան և շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Պատերազմի առաջին օրը սահմանապահների հետ միասին ֆաշիստների դեմ մարտի ելան Բելոստոկի մարզի Դոմբրովսկի շրջանի մի խումբ կոմունիստներ, կոմերիտականներ և անկուսակցական ընկերներ՝ կուսշրջկոմի առաջին քարտուղար Նիկիտա Պրոկոփովիչ Գոնչարովի գլխավորությամբ: Հետագայում հայտնվելով հիտլերական զորքերի թիկունքում, պարտիզանական այդ խումբը մի շարք դիվերսիաներ իրագործեց. քանդում-փչացնում էր հակառակորդի հաղորդակցության գծերը, խորտակում գնացքները, պայթեցնում ավտոմեքենաները: Հենց պատերազմի առաջին օրերին էլ Ն. Պ. Գոնչարովն ու նրա ընկերները հերոսաբար զոհվեցին ֆաշիստների դեմ մղած մարտում:

1941 թվականի հունիսի վերջին ընդհատակում գործողների և պարտիզանների մարտական խմբերը հայտնվեցին նաև Բելոռուսիայի՝ թշնամու կողմից զավթված մյուս շրջաններում: Դրանք ստեղծվում էին առանց որևէ հրահանգի, հենց իրենց՝ կոմունիստների, կոմերիտականների, անկուսակցական ակտիվիստների նախաձեռնությամբ, Լենինի գաղափարներին ու գործին, իրենց սոցիալիստական հայրենիքին նվիրված սովետական հայրենասերների սրտի թելադրանքով:

Թշնամու զավթած սովետական տերիտորիայում գտնվող բնակչության հայրենասիրական պայքարն անմիջապես սկսեց գլխավորել կոմունիստական կուսակցությունը: Իր գործունեության ընթացքում նա առաջնորդվում էր պարտիզանական պատերազմի վերաբերյալ լենինյան ուսմունքով: Վլադիմիր Իլյիչը աշխատավորական զանգվածների պայքարի այդ ձևին էր դասում ժողովրդի զինված ու անզեն, կազմակերպված ու տարերային այն բոլոր գործողությունները, որոնք ուղղված են հակառակորդի ռազմական և տնտեսական հզորության ոչնչացման, նրա տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական բոլոր միջոցառումների խափանման նպատակին: Պարտիզանական պայքարի հաջողության կարևորագույն պայմաններից մեկը Լենինը համարում էր դրա կուսակցական ղեկավարման ապահովումը: Պարտիզանական ելույթները, գրել է նա, «...պետք է տեղի ունենան կուսակցության հսկողության տակ և այն էլ այնպես, որ պրոլետարիատի ուժերը զուր տեղը չվատնվեն, որ, ընդսմին, ուշադրության առնվեն տվյալ վայրի բանվորական շարժման պայմաններն ու լայն մասսաների տրամադրությունը» (**ԵԼԺ**, հ. 12, էջ 272):

Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի գաղափարներով, քաղաքացիական կռիվների փորձով և հաշվի առնելով պատմական նոր պայմանները, ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և ՍՍՀՄ Ժողկոմխորհը ճակատամերձ մարզերի կուսակցական և սովետական կազմակերպություններին 1941 թ. հունիսի 29-ին ուղղած իրենց դիրեկտիվում նշում էին պարտիզանական շարժումն ամեն կերպ ծավալելու անհրաժեշտությունը: Հիտլերյան զորքերի ջախջախման գործում այն պետք է իրական օգնություն լիներ կարմիր բանակին: Նրանք առաջարկում էին թշնամու զբաղեցրած շրջաններում «ստեղծել պարտիզանական ջոկատներ և դիվերսիոն խմբեր՝ հակառակորդի բանակի զորամասերի դեմ պայքարելու, ամենուրեք և ամեն տեղ պարտիզանական պատերազմ բորբոքելու, կամուրջներն ու ճանապարհները պայթեցնելու, հեռախոսային և հեռագրական գծերը վնասելու, պահեստները հրդեհելու համար և այլն: Զավթված շրջաններում թշնամու և նրա հետ գործակցողների համար ստեղծել անտանելի պայմաններ, ամեն քայլափոխի հետապնդել ու ոչնչացնել նրանց, խափանել նրանց բոլոր միջոցառումները»:

Այդ դիրեկտիվի, ինչպես և Բելոռուսիայի Կ(բ)Կ Կենտկոմի հունիսի 30-ի՝ «Թշնամու կողմից զավթված շրջաններում կուսակցական կազմակերպությունների ընդհատակյա աշխա-

տանքի անցնելու մասին» և հուլիսի 1-ի՝ «Թշնամու թիկունքում պարտիզանական պատերազմ ծավալելու մասին» դիրեկտիվների պահանջներին համապատասխան՝ մարզերում, քաղաքներում և շրջաններում ստեղծվեցին կուսակցական ղեկավար եռյակներ ու կենտրոններ, ժամանակին կազմակերպվեցին ընդհատակյա կուսակցական և կոմերիտական բջիջներ, նրանց համար նախատեսվեցին հանդիպման վայրեր: Զենք կրելու ունակ բոլոր կոմունիստներն ու կոմերիտականները Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի ցուցումով մնացին թշնամու զբաղեցրած տերիտորիայում և դարձան այն ընդհատակյա խմբերի ու պարտիզանական ջոկատների կորիզը, որոնք կազմավորվել էին բնակչության՝ մարտական գործողությունների համար ունակ հատվածից: Պատերազմի առաջին օրերին ստեղծված կործանիչ գումարտակներն ու խմբերը վերակազմավորվեցին պարտիզանական ջոկատների: Պայքարի պարտիզանական մեթոդների անցան կարմիր բանակի և սահմանապահ զորքերի՝ շրջափակման մեջ հայտնված զինծառայողները:

Արդեն հուլիսին, Բելոռուսիայում առաջինը, անլեգալ դրության անցավ Մինսկի մարզային կուսակցական կենտրոնը, որը հիմնավորվել էր ճահճապատ ու անտառապատ Պոլեսիեի շրջաններից մեկում: Նույն ամսին էլ օկուպացված տերիտորիայում սկսեց գործել Պինսկի մարզային կուսակցական եռյակը, իսկ օգոստոսին՝ Գոմելի կուսակցական կենտրոնը: Ստեղծվեցին նաև շուրջ 90 շրջանային եռյակներ: Ընդհանուր առմամբ պատերազմի տարիներին Բելոռուսիայում թշնամու թիկունքում գործում էին ԲԿԿ 10 ընդհատակյա մարզկոմներ, կոմերիտմիության 214 միջշրջանային, քաղաքային և շրջանային կոմիտեներ, 5,5 հազար կազմակերպություններ, որոնցում ընդգրկված էին շուրջ 100 հազար կոմերիտականներ: Հրատարակվում էին ընդհատակյա կուսակցական և կոմերիտական կոմիտեների 162 լրագրեր, այդ թվում և հանրապետական «Զվյազդին» ու «Չիրվոնայա զմենան»:

Արձագանքելով կոմունիստական կուսակցության կոչին, Բելոռուսիայի քաղաքների ու գյուղերի բնակիչները, ինչպես և նրա օկուպացված տերիտորիայում մնացած կարմիրբանակայինները, հրամանատարներն ու քաղաշխատողները բոլոր ուժերով ջանում էին օգնել ռազմաճակատում կռվող մեր զորքերին: Թշնամուն կորուստներ պատճառելու համար նրանք կիրառում էին տարբեր միջոցներ, թաքցնում էին պարենամթերքը, չէին կատարում զենքն ու ռադիոընդունիչները հանձնելու վերաբերյալ ֆաշիստների հրամանները, կտրում էին հեռախոսագծերը, այրում կամուրջները, ծուղակներ սարքում: Հուլիսի սկզբին Արևմտյան Դվինա գետի մոտ, Պոլոցկի և Վիտեբսկի միջև ընկած շրջանում հայրենասերների մի խումբ նույնիսկ ոչնչացրեց գերմանական հետևակային դիվիզիայի շտաբը: Ժողովրդական վրիժառուների ակտիվ գործողությունների մասին լուրեր էին ստացվում հանրապետության շատ վայրերից, և դրանց մասին ի լուր աշխարհի պատմեց գրող Վ. Ստավսկին «Պրավդա»-ի հուլիսի 12-ի համարում տպագրված «Բորբոքվում է համաժողովրդական պարտիզանական պատերազմի բոցը» թղթակցությունում:

Օգոստոսի կեսերին Բելոռուսիայի օկուպացված տերիտորիայում գործում էին արդեն 231 պարտիզանական ջոկատներ, որոնք իրենց շարքերում ունեին 12 հազար մարտիկներ, ստեղծվել էին հարյուրավոր գաղտնի խմբեր ու կազմակերպություններ, և նկատելիորեն ըզգացվում էր բնակչության կողմից զավթիչներին ցույց տրվող դիմադրությունը: Պարտիզանական զինված ուժերի և ընդհատակի գործողությունները, բնակչության կողմից ֆաշիստների միջոցառումների մասսայական խափանումները պարտիզանական պատերազմի հիմնական ձևերն էին:

Պայքարի առավել արդյունավետ ձևերից մեկը զինված պարտիզանական կազմավորումների գործողություններն էին: Բելոռուսիայի օկուպացված տերիտորիայում պատերազմի տարիներին հիտլերականների դեմ մարտական գործողություններ էին կատարում 213 պարտիզանական բրիգադներ ու գնդեր, որոնց կազմի մեջ մտնում էին 997 ջոկատներ, ինչպես և 258 ինքնուրույն ջոկատներ: Դրանց կազմում կային 374 հազար զինված մարտիկներ: Բացի այդ, թաքնված պարտիզանական ռեզերվում կային ևս 400 հազար բնակիչներ: Քաղաքներում և մյուս բնակավայրերում գործում էին 70 հազար ընդհատակայիններ: Նրանց գործունեությունը մոտ էր պարտիզանների գործունեությանը, բայց տարբերվում էր կազմակերպման ձևերով ու պայքարի մեթոդներով:

Թշնամուն մեծ վնաս էին հասցնում նաև Բելոռուսիայի այն բնակիչները, որոնք չէին մտնում այս կամ այն կազմակերպության մեջ: Նրանք հնարավորին չափ խուսափում էին զավթիչների օգտին աշխատելուց, ձեռնարկություններում փչացնում էին սարքավորումներն ու արտադրանքը, պարտիզաններին և ընդհատակայիններին օգնում էին ինչով որ կարող



էին. նրանց մթերք ու հագուստ էին մատակարարում, դեղորայք ու զենք հասցնում, տեղեկություններ հավաքում թշնամու վերաբերյալ:

Պարտիզանական պայքարի բոլոր ձևերը սերտորեն փոխկապակցված էին: Պարտիզանները լայնորեն կիրառում էին ընդհատակի մեթոդները, իսկ ընդհատակայինները անհրաժեշտության դեպքում գործի էին դնում զենքը, իրականացնում դիվերսիաներ: Ասենք՝ ազգաբնակչության պայքարն էլ հաճախ բարձրանում էր պարտիզանների և ընդհատակայինների մարտական գործունեության մակարդակին: Քաղաքների և գյուղերի բնակիչները հաճախ մասնակցում էին երկաթուղիների պայթեցմանը, ֆաշիստների հետ զինված գոտեմարտերին: Ընդհատակյա կուսակցական կոմիտեների ղեկավարության շնորհիվ պարտիզանների, ընդհատակայինների և հանրապետության միլիոնավոր քաղաքացիների գործողությունները միաձուլվում էին համաժողովըրդական պարտիզանական պատերազմի միասնական հունի մեջ: Պատահական չէր, որ պատերազմի տարիներին Բելոռուսիան կոչում էին պարտիզան-հանրապետություն: Ցերեկ թե գիշեր, ամառ թե ձմեռ՝ թշնամին նրա հողում հանգիստ չուներ:

Բելոռուսիայում, ինչպես նաև հիտլերականների օկուպացրած մյուս հանրապետություններում ու մարզերում պարտիզանական պատերազմը, ի տարբերություն Արևմտյան Եվրոպայի երկրների հակաֆաշիստական դիմադրության, կրում էր վառ արտահայտված դասակարգային բնույթ, նրա նպատակն էր՝ պաշտպանել Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները և սոցիալիստական պետությունը, ջախջախել միջազգային իմպերիալիզմի հարվածային ջոկատը: Հենց այդ պատճառով էլ այն համաժողովրդական թափ ստացավ. պատերազմը մղում էր ամբողջ ժողովուրդը, նրա բոլոր դասակարգերը, սոցիալական խավերն ու խմբերը՝ բանվորներն ու կոլտնտեսականները, մտավորականությունը, տղամարդիկ և կանայք, երիտասարդությունը, ծերունիներն ու երեխաները:

Պարտիզանական պատերազմի նպատակներն ու համաժողովրդական թափը պայմանավորեցին նրա ուժերի ինտերնացիոնալ բնույթը: Նրա բոլոր ձևերում՝ զինված կազմավորումներում, մարտական ընդհատակում, թշնամու դեմ բնակչության մասսայական դիմադրությանը մասնակցում էին ամենատարբեր ազգությունների մարդիկ: Բելոռուսիայի պարտիզանական կազմավորումներում բնիկ ազգաբնակչության հետ միասին, որին բաժին էր ընկնում դրանց անձնակազմի 71,9 տոկոսը, կային նաև ռուսներ, որոնք կազմում էին 19,29 տոկոսը, ուկրաինացիներ՝ 3,89 տոկոս, այլ ազգությունների մարտիկներ՝ շուրջ 5 տոկոս: Բելոռուսական պարտիզանների եղբայրական ընտանիքում արիաբար մարտնչում էին ՍՍՀՄ 70 ազգերի ու ազգությունների որդիներ ու դուստրեր: Եվ ոչ միայն նրանք: Նրանց հետ միասին մարտի էին նետվում նաև Եվրոպայի շատ ժողովուրդների ներկայացուցիչներ: Եվ դա ավելի էր շեշտում սովետական հողում մղվող պարտիզանական պատերազմի ինտերնացիոնալ բնույթը:

Բելոռուսիայի կոմկուսը հանրապետության աշխատավորներին անդուլ կերպով դաստիարակում էր ՍՍՀՄ ժողովուրդների հետ բարեկամության ու համագործակցության ոգով, կապիտալիստական երկրների պրոլետարների և աշխարհի ճնշված ժողովուրդների պայքարի հետ ինտերնացիոնալ համերաշխության ոգով:

Պարտիզանական շարժման բազմազգ կոնտինգենտների ձևավորմանը նպաստեցին այն պայմանները, որ հանրապետությունում և երկրում ստեղծվել էին նախապատերազմյան ժամանակաշրջանում ու պատերազմի ընթացքում: Մինչև պատերազմը Բելոռուսիայում ապրում և աշխատում էին երեք տասնյակից ավելի ազգությունների ներկայացուցիչներ՝ ռուսներ, լեհեր, ուկրաինացիներ, հրեաներ, լիտվացիներ, թաթարներ, լատիշներ և այլն: Հանրապետությունում բնակվում էին նաև հայեր: Կուսակցության կոչով բոլոր ազգությունների աշխատավորները, որոնք բնակվում էին Բելոռուսիայում, ներգրավվեցին ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարում: Պարտիզանական պատերազմի կազմակերպման ու ծավալման գործում նշանակալի դեր խաղացին նրանցից շատերը՝ ռուսներ, կուսակցության Բարանովիչի մարզկոմի քարտուղար Վ. Ե. Չեռնիշովը, Օրշի շոգեքարշային դեպոյի պետ Կ. Ս. Զասլոնովը, Ռուդենսկի կուսշրջկոմի քարտուղար Ն. Պ. Պոկրովսկին, ուկրաինացիներ, մթերումների ժողկոմատի Օկտյաբրսկի շրջանի լիազոր Ֆ. Ի. Պավլովսկին, Վիլենսկի մարզի գազանաբուծական պետտնտեսության դիրեկտոր Ի. Մ. Տիմչուկը և ուրիշներ:

Անտառի զինվորների ինտերնացիոնալ ընտանիքի համալրման մյուս կարևոր աղբյուրը կարմիր բանակի և սահմանապահ զորքերի այն զինծառայողներն էին, որոնք մնացել էին օկուպացված տերիտորիայում: Տեղական բընակչության աջակցությամբ նրանք ստեղծում էին իրենց մարտական խմբերը կամ մտնում արդեն գործող պարտիզանական ջոկատները՝

դրանցում արմատավորելով կարգապահական ոգին և կռվելու ունակությունը: Զինծառայողների մի մասը պարտիզանական ջոկատներ եկավ ռազմագերիների ճամբարներից փախչելուց հետո:

Բելոռուսական պարտիզանների ու ընդհատակայինների շարքերը մշտապես համալրվում էին մեծ երկրի տարբեր շրջանների ներկայացուցիչներով: Նրանց մի մասը ռազմաճակատի գիծն անցնում էր Մուրոմի մոտ գտնվող բելոռուսական հատուկ հավաքներում ուսուցում անցնելուց հետո, որտեղ պատրաստվում էին պայթեցնողներ, զինագործ վարպետներ, հետախույզներ:

Բելոռուսիա էին մեկնում կամավորների ամբողջ ջոկատներ ու խմբեր: Այդ ջոկատներից մեկին, որը կոչվում էր «Մարտական», գլխավորում էր քաղաքացիական կռիվների հերոս-պարտիզան Ա. Գ. Ֆլեգոնտովը: Մոսկվայի կոմերիտականները այնտեղ ուղարկեցին Ն. Ֆ. Գաստելլոյի անվան ավտոմատավորների ջոկատը: Մեծ երկրից դեպի օկուպացված հանրապետություն մեկնեցին նաև ավելի քան 200 հետախուզական-դիվերսիոն խմբեր, որոնց շարքերում կար վեց հազարից ավելի մարդ, իսկ հետագայում դրանց միացան ևս ավելի քան 10 հազար տեղական բնակիչներ: 1942 թվականի դեկտեմբերին Սիբիրից թշնամու թիկունք եկան 130 հազար կամավորներ՝ քաղաքացիական պատերազմի նախկին պարտիզաններ: Բելոռուսիայում գործում էին նրանց «Բոլշևիկ», «Սիբիրյակ», Ս. Գ. Լազոյի անվան ջոկատները:

Պատերազմի ընթացքում բելոռուսական պարտիզանների կողմն անցան հիտլերյան զորամասերի և նրանց դաշնակիցների շատ զինվորներ, ենթասպաներ՝ ընդլայնելով անտառի զինվորների ինտերնացիոնալ ընտանիքի կազմը:

Այսպես էին ձևավորվում Բելոռուսիայում պարտիզանական պատերազմի ուժերը և այդ պատճառով էլ նրա տերիտորիայում գործող թե՛ մարտական ընդհատակյա կազմակերպությունները և թե զինված պարտիզանական միավորումները (ջոկատներ, գնդեր, բրիգադներ, միավորումներ), որպես կանոն, բազմազգ էին իրենց կազմով: Մինսկի մարզի «Գրոհ» բրիգադում, օրինակ, կային 28 ազգությունների ներկայացուցիչներ, «Զախչախում» բրիգադում՝ 25 և այլն: Բազմազգ պարտիզանական ջոկատների և միավորումների ամբողջ ներքին կյանքը տոգորված էր ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով:

Եղբայրական ժողովուրդների ներկայացուցիչները զավթիչների դեմ բելոռուսական հողում մղված պայքարում իրենց դրսևորեցին որպես հիանալի կազմակերպիչներ ու քաջարի մարտիկներ: Հանրապետության տարածքում պարտիզանական պատերազմի պատմության մեջ հավերժ կմնան ռուս ժողովրդի զավակներ Վ. Ի. Նիչիպորովիչի, Ե. Ի. Բարիկինի, Ա. Ֆ. Դանուկալովի, Ս. Գ. Ժունինի, ուկրաինացիներ Ֆ. Ֆ. Կապուստայի, Վ. Վ. Չերքինի, հայեր Ս. Խ. Արզումանյանի, Խ. Ա. Մաթևոսյանի, վրացիներ Ի. Գ. Ծուբիթիձեի, Վ. Մ. Թալաքվաձեի, Տ. Ե. Ծավգուլիձեի, ղազախներ Գալիմ Ահմեդյարովի, Համիդ Իսմագուլովի, լատիշներ Վ. Ի. Տուբիլիսի, Ի. Ի. Յուկշայի, լիտվացի Ս. Ա. Վասպշասովի, էստոնացի Ա. Ի. Ցիքոյի, կարաչայ Օսման Կասաևի, մարի Ռոդիոն Օխոտինի, ուզբեկ Գանտալ Թաշնիյազովի և ուրիշների անունները:

Բելոռուսիայի պարտիզանների և ընդհատակյանների շարքերում թշնամու դեմ մարտնչում էին հայ ժողովրդի հարյուրավոր զավակներ: (Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսակցության պատմության ինստիտուտում եղած ցուցակներում այժմ հաշվվում է 388 հայ: Սակայն դա բնավ էլ դեռ լրիվ տվյալը չէ):

Մյուս ժողովուրդների ներկայացուցիչների հետ միասին պատերազմի հենց առաջին օրերից թշնամու դեմ մարտի ելան նաև հայորդի ռազմիկները: Մոգիլյովի զինվորական հոսպիտալի վիրավոր հրամանատարներից ըստեղծված ընդհատակյա խմբի մեջ առաջինների թվում 1941 թվականի օգոստոսին մտավ կոմունիստ Հենրիկ Ալեքսանդրի Զաքարյանը: Լինելով ռադիոգործի փորձված մասնագետ՝ նա կարողացավ կազմակերպել Մոսկվայից տրվող ռադիոհաղորդումների ընդունումը: Զաքարյանը նաև թռուցիկներ էր տարածում, դիվերսիոն գործողություններ կատարում ռազմական օբյեկտներն ու տրանսպորտը շարքից հանելու նպատակով: 1943 թվականի փետրվարին ֆաշիստները ձերբակալեցին նրան և դաժան խոշտանգումների ենթարկեցին, բայց ընդհատակի խիզախ-մարտիկը իր ընկերներից ոչ որի չմատնեց և հերոսաբար զոհվեց: Հայրենիքի հավատարիմ զավակը ետմահու պարգևատրվեց Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի շքանշանով: Մոգիլյովի բնակիչները սրբությամբ պահում են նրա հիշատակը:

Բելոռուսիան հիշում է Բելոստոկի միավորման Ալեքսանդր Նևսկու անվան բրիգադի «Հանուն հայրենիքի» ջոկատի անվեհեր պար-



տիզան, կոմունիստ Նիկոլայ Փալաչյանի անունը: Փորձառու և խիզախ ականահատը մասնակցել է Բարանովիչի—Բրեստ, Սլոնիմ—Վոլոկովիսկ երկաթուղագծերի վրա կատարված բազմաթիվ մարտական գործողությունների: Նա հատկապես ակտիվորեն է գործել 1943 թ. ռելսային պատերազմում: 1944 թ. ապրիլի 10-ին, Զամոստյանի գյուղի մոտ ծուղակ ընկնելով, նա իր ջոկի գլուխ անցած անհավասար մարտի է բռնվում ֆաշիստական զավթիչների հետ և զոհվում հերոսի մահով: Նրա սխրանքը հայրենիքը նշեց «Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի պարտիզան» մեդալով:

Ինչպես և մյուս ժողովուրդների զավակները, հայերն իրենց դրսևորեցին իբրև քաջարի ռազմիկներ ու միշտ հավատարիմ մնացին պարտիզանների մարտական բարեկամությանն ու եղբայրությանը: Ահա օրինակներից մեկը: 1944 թվականի հունիսի սկզբին, Բելոռուսիան թշնամուց ազատագրելու նախօրյակին, Մինսկի մարզի Գրեսկի շրջանում հիտլերականները շրջափակել էին պարտիզանական նշանակալի ուժերի և նրանց հետ գտնվող բնակչությանը: Հինգ օր կատաղի մարտեր էին գնում, և, երբ արդեն սպառվում էր զինամթերքը, պարտիզանները վճռեցին ճեղքել պաշարումը: Ստեղծեցին գրոհային խումբ, որի մեջ մտավ նաև Գրոմովի անվան ջոկատի հրամանատարի տեղակալ Գ. Ս. Օհիպյանը: Անսպասելի տեղատարափ կրակով այդ բազմազգ խումբը նզմեց ֆաշիստներին և ճեղք բացեց նրանց պաշտպանության գծում: Հազարավոր պարտիզաններ և տեղի բնակիչներ դուրս եկան մահվան օղակից: Այդ դժվարին հաղթանակը ձեռք բերվեց ռուս Ե. Ֆադինի, բելոռուսներ Ս. Սավիցկու, Դ. Բանկովսկու, լեհ Զ. Կոսեցկու, հայ Գ. Օհիպյանի, ուկրաինացի Գ. Բոնդարչուկի, մյուս ժողովուրդների զավակների կյանքի գնով: Մարտում ծանր վիրավորված Գ. Օհիպյանին դահիճները բռնում և այրում են խարույկի վրա: Կարմիր դրոշի շքանշանով պարգևատրված այդ հերոսին Բելոռուսիայի աշխատավորները երբեք չեն մոռանա:

Բելոռուսական հողում պայքարելով ֆաշիստական զավթիչների դեմ՝ Հայաստանի զավակները պաշտպանում էին մեր ողջ սոցիալիստական հայրենիքի, այդ թվում և իրենց հանրապետության ազատությունն ու անկախությունը: Այդպիսի խոհերով էին մարտի գնում սովետների երկրի բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները:

Արիության և խիզախության օրինակներ ցույց տվեցին նաև բելոռուսական պարտիզանների ջոկատներում, միավորումներում գտնվող արտասահմանյան պետությունների քաղաքացիները: 1942 թ. մարտին դիվերսիոն-հետախուզական խմբի կազմում ռազմաճակատի գիծն անցավ նաև նրա կոմիսար Դոբրին Դիմիտրովը: Իր ընկերների հետ միասին նա անմիջապես պայքարի մեջ մտավ և կազմակերպեց մի շարք դիվերսիաներ, ծուղակներ սարքեց, բազմիցս գոտեմարտի բռնվեց հիտլերականների հետ: 1942 թ.մայիսին նա մասնակցեց Վիտեբսկի մոտ գտնվող Գորոդոկ կայարանում կազմակերպված խոշոր օպերացիային, որի ընթացքում ոչնչացվեցին 1.200 տոննա հացահատիկ, 700 տոննա վառելիք, պայթեցվեց զինամթերքով լի գերմանական էշելոնը: «Մարտական ծառայությունների համար» իր առաջին մեդալը Դոբրինն ստացավ անձամբ Միխայիլ Իվանովիչ Կալինինից: Այժմ նա գեներալ-լեյտենանտ է և ապրում է Սոֆիայում:

Բելոռուսիայի հարավում գործում էր չեխոսլովակյան պարտիզանական ջոկատը, որն ստեղծվել էր 1943 թ., գերմանացիների կողմից արևելյան ռազմաճակատ ուղարկված սլովակյան գնդի՝ պարտիզանների կողմն անցած հակաֆաշիստ-զինվորներից: Նա մասնակցեց Պոլեսիեում մղված շատ մարտերի, բելոռուսական Դավիդ-Գորոդոկ քաղաքի ազատագրմանը: Այդ մարտերից մեկի ժամանակ էլ զոհվեց ջոկատի հրամանատար, պորուչիկ Յա. Ն. Նալեպան, որին ետմահու շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Բելոռուսիայի զանազան պարտիզանական կազմավորումներում կռվում էին ոչ քիչ թվով գերմանացի հակաֆաշիստներ: Նրանք մի առանձնահատուկ ատելությամբ էին լցված հիտլերականների հանդեպ, որոնք դեռ սեփական երկրում էին սկսել իրենց արյունալի երթը: Մինսկում ֆաշիստական տրիբունալի դատավճռով գնդակահարվեց վերմախտի նախկին եֆրեյտոր Ֆրից Շմենկելը՝ սովետական պարտիզան «Իվանը»: Իր սխրագործությունների համար նա նախ պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով և ետմահու արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման: Գործելով սովետական պարտիզանների շարքերում, Եվրոպայի ժողովուրդների զավակները՝ լեհերը, սլովակները, չեխերը, խորվաթները, սերբերը, բուլղարները, ռումինացիները, հունգարացիները, գերմանացիները, իսպանացիները, ֆրանսիացները, ավստրիացիները, իտալացիները, բելգիացիները, հոլանդացիները և ուրիշներ պարզորոշ գիտակցում էին, որ, պայքարելով ֆաշիզմի դեմ, մոտեցնում են հիտլերյան զավթիչներից ինչպես Սովետական Միության, այնպես էլ իրենց երկրների ազատագրման օրը:

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով էր ներծծված համաժողովրդական պարտիզանական պատերազմի բուն էությունը: Պատերազմի հենց սկզբից ձևավորվեցին հարևան հանրապետությունների պարտիզանական միավորումների մարտական համագործակցությունն ու փոխգործողությունը: Այդ հարցը մշտապես գտնվում էր ՀամԿ(բ)Կ Կենտկոմի, Գերագույն գլխավոր հրամանատարության, պարտիզանական շարժման կենտրոնական շտաբի տեսադաշտում: Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմը, պարտիզանական շարժման հանրապետական շտաբը կապ էին պահպանում Ռուսաստանյան Ֆեդերացիայի մի շարք կուսակցական մարզկոմների, Ուկրաինայի, Լատվիայի, Լիտվայի կոմկուսների կենտկոմների, նրանց պարտիզանական շարժման շտաբների հետ, փոխադարձորեն համաձայնեցնում էին թշնամու թիկունքում ժողովրդական պայքարի կարևորագույն հարցերը: Եղբայրական հանրապետությունների պարտիզանները միմյանց օգնում էին զենքով ու զինամթերքով, դեղորայքով, համատեղ պլանավորում և իրականացնում էին մարտական գործողություններ:

Բրյանսկի անտառներում ռուս, ուկրաինացի և բելոռուս պարտիզանների մարտական համագործակցությունը 1942 թ. հանգեցրեց հանրահայտ Բրյանսկի պարտիզանական երկրամասի կազմավորմանը, որին միացան Գոմելի, Սմոլենսկի, Կուրսկի, Օրլովի, Սումի և Չեռնիգովի մարզերի՝ թշնամուց ազատագրված մի խումբ շրջաններ: Այստեղ թշնամու դեմ կռվում էին 132 ջոկատներ, որոնց շարքերում կային 60 հազար մարտիկներ: Իսկ 1942 թ. վերջերին ՌՍՖՍՀ-ի, Բելոռուսիայի և Լատվիայի սահմանագծում հարևան հանրապետությունների պարտիզանների ուժերով ազատագրվեց մի ընդարձակ շրջան՝ ավելի քան 100 հազար ազգաբնակչությամբ, որն անվանվեց Եղբայրական պարտիզանական երկրամաս: Թշնամին բազմիցս փորձեց հողին հավասարեցնել այդ երկրամասը: Այստեղ ծանր կռիվներ տեղի ունեցան հատկապես 1943 թ. փետրվար—մարտ ամիսներին: Բայց պարտիզանական ինտերնացիոնալ բրիգադներն ու ջոկատները այս անգամ էլ ֆաշիստներին ստիպեցին վերադառնալ իրենց զորանոցները:

Վիթխարի տարածությունների վրա համագործակցում էին Բելոռուսիայի և Ուկրաինայի պարտիզանները: Նրանք սկսեցին համատեղ գործողություններ անցկացնել դեռևս 1941 թ. նոյեմբերին՝ Պոլեսիեում: 1942 թվականի մայիսին նրանք օրլովյան ընկերների համագործակցությամբ իրականացրին մի շարք դիվերսիաներ Գոմելի երկաթուղային հանգույցում: Մարտական համագործակցությունը հատկապես ակտիվացավ, երբ 1942 թ. նոյեմբերին Բրյանսկի անտառներից Բելոռուսիա եկան Ս. Ա. Կովպակի և Ա. Ն. Սաբուրովի ուկրաինական միավորումները: Իսկ 1943 թ. աշնանը, երբ բելոռուսական Պոլեսիե եկան ևս չորս ուկրաինական պարտիզանական միավորումներ, եղբայրական հանրապետությունների սահմանագծում ստեղծվեց ֆաշիստներից ազատագրված նոր պարտիզանական երկրամաս, որն ընդգրկում էր 14 շրջան՝ 200 հազար բնակչությամբ: Դրա կենտրոնը դարձավ ԲՍՍՀ-ի Լելչիցկի շրջանը, որտեղ կառուցվեց օդանավակայան և որի միջոցով զենք ու զինամթերք էին մատակարարվում աջափնյա Ուկրաինայի միավորումներին, մոլդավական պարտիզաններին և Ռ. Սատանովսկու լեհական պարտիզանական միավորմանը: Պոլեսիեի պարտիզանական երկրամասը բազա դարձավ ուկրաինական բազմաթիվ ջոկատների ու միավորումների ստեղծման ու զարգացման համար, այստեղ իրենց գործունեությունն սկսեցին Ռովնոյի, Ժիտոմիրի, Վոլինի, Կամենեց-Պոդոլսկի, Վիննիցայի ընդհատակյա կուսակցական մարզկոմները:

Թշնամու կայազորների ոչնչացման, երկաթուղիների պայթեցման նպատակով բազմաթիվ խոշոր գործողություններ իրականացրին ուկրաինական ու բելոռուսական պարտիզանների միավորված ուժերը: 1943 թ. գարնանը նրանք ամբողջովին խափանեցին թշնամու նավերի նավագնացությունը Պրիպյատ գետի վրա: Ուկրաինայի հյուսիս-արևմտյան ջոկատների հետ կանոնավոր կերպով համագործակցում էր այն բրիգադը, որը գլխավորում էր Բրեստի պարտիզանական շարժման ղեկավարներից մեկը՝ Սմբատ Խաչատուրի Արզումանյանը: Բելոռուսական և ուկրաինական Պոլեսիեում սկսեցին իրենց մարտական ուղին մոլդավական պարտիզանական ջոկատներն ու միավորումները, որոնց մեջ մտան նաև ոչ քիչ թվով տեղական բնակիչներ՝ բելոռուսներ և ուկրաինացիներ:

Բելոռուսական հողը հուսալի հենարան էր նաև լիտվացի հայրենասերների համար՝ իրենց հանրապետությունում պարտիզանական պայքար ծավալելու գործում: Նարոչի լճի մոտակա անտառներում բելոռուսական ջոկատների հետ միասին երկար ժամանակ բազավորվել էր Լիտվայի կոմկուսի Կենտկոմի օպերատիվ խումբը, որն այստեղ կազմավորում էր դիվերսիոն խմբեր և այստեղից գլխավորում Լիտվայում պարտիզանական ջոկատների ու



ընդհատակի մարտական գործողությունները: 1942 թ. հոկտեմբեր—նոյեմբերին լիտվական և բելոռուսական պարտիզանական միացյալ ուժերը ջախջախեցին թշնամու 15 կայազոր:

Թշնամու զավթած տերիտորիաներում բազմազգ պարտիզանական շարժումը, որը ծնվել էր սովետական ժողովուրդների բարեկամությամբ ու միասնությամբ և ամրապնդվել նրանց որդիների արյամբ, էական օգնություն ցույց տվեց Կարմիր բանակին՝ գերմանաֆաշիստական զավթիչների ջախջախման գործում: Բելոռուսիայի տերիտորիայում պարտիզաններն ու ընդհատակայինները բնակչության աջակցությամբ ոչնչացրին ավելի քան կես միլիոն հիտլերականների, խորտակեցին 11.128 էշելոն, 34 զրահագնացք, ոչնչացրին 29 երկաթուղային կայարան, 948 շտաբ ու կայազոր, 18.700 ավտոմեքենա, պայթեցրին 819 երկաթուղային և 4.710 այլ տիպի կամուրջներ, օդում և օդանավակայաններում խփեցին 305 ինքնաթիռ, ոչնչացրին 1.355 տանկ ու զրահամեքենա, 939 ռազմական պահեստ և այլն:

Հայրենիքը բարձր գնահատեց բելոռուս պարտիզանների և ընդհատակայինների սխրանքը: Հարյուր հազարավոր մարդիկ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, իսկ նրանցից 87-ը արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման:

Հիտլերականները կիրառում էին ամենաբազմազան մեթոդներ ու միջոցներ, որպեսզի թշնամություն սերմանեն Սովետական Միության ժողովուրդների միջև, դրանով իսկ թուլացնեն նրա ռազմական ու տնտեսական հզորությունը և պարտության մատնեն: Իրենց թերթերում, ռադիոհաղորդումներում, իրենց գործակալների միջոցով նրանք ճգնում էին սովետական մարդկանց ներշնչել այն միտքը, թե իբր սովետական ժողովուրդների շահերը ներհակ են միմյանց, թե իբր նրանք ատելությամբ են տրամադրված իրար նկատմամբ:

Սակայն ոչ մի պրովոկացիա, ոչ մի նենգ միջոց չէր կարող խորտակել լենինյան կուսակցության ղեկավարությամբ կոփված ու զոդված սովետական ժողովուրդների բարեկամությունն ու միասնությունը: Այդ բարեկամությունը դիմացավ Հայրենական պատերազմի ամենածանր քննությանը և շարունակում է ամրապնդվել ու զարգանալ մեր օրերում, երբ սովետական ժողովուրդը՝ պատմական-սոցիալական և ինտերնացիոնալ այդ նոր հանրությունը, կառուցելով զարգացած սոցիալիստական հասարակարգ, հաղթականորեն ընթանում է դեպի կոմունիզմ:

## Նշանավոր տարեթվեր

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՎԱՐՊԵՏԸ

### (Ա. Ն. ՏՈԼՍՏՈՅԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Գ. Ա. ԹԱԹՈՍՅԱՆ**

ԱԼԵՔՍԵՅ ՆԻԿՈԼԱԵՎԻՉ ՏՈԼՍՏՈՅԸ աչքի ընկնող տեղ է գրավում սովետական գրականության պատմության մեջ։ Այդ տեղը պայմանավորված է ամենից առաջ նրանով, որ նա ստեղծել է սոցիալիստական ռեալիզմի դասական գործեր՝ **Տառապանքի ուղիներով**, **Պետրոս Առաջին** վեպերը։ Միաժամանակ նա թողել է գրական վիթխարի ժառանգություն, որն աչքի է զարնում հարուստ բովանդակությամբ ու բազմաժանրությամբ։ Մեծ, բազմակողմանի տաղանդով օժտված Ալեքսեյ Տոլստոյը գրել է բանաստեղծություններ ու երգեր, հեքիաթներ ու նովելներ, պատմվածքներ ու վիպակներ, պիեսներ ու կինոսցենարներ, սոցիալ-կենցաղային, գիտաֆանտաստիկական և պատմական վեպեր, քաղաքական պամֆլետներ, հրապարակախոսական և գրականքննադատական հոդվածներ։

Բարդ ու հակասական է նրա կյանքի ու ստեղծագործության ուղին. այն ցայտուն վկայում է, որ ռուս ազնվականության լավագույն մտավորականները, հաղթահարելով դասակարգային սահմանափակությունը, տատանումներն ու մոլորությունները, յուրացնում, ընդունում էին լենինյան վեհ գաղափարները, ակտիվ մասնակցում նոր կյանքի կառուցմանը, նոր, սոցիալիստական կուլտուրայի կերտմանը։

Ալեքսեյ Տոլստոյը ծնվել է 1883 թվականի հունվարի 10-ին, Վոլգայի ափին գտնվող Նիկոլաևսկ քաղաքում (այժմ՝ Պուգաչովսկ)։ Հայրը Սամարայի խոշոր կալվածատեր, կոմս Նիկոլայ Տոլստոյն էր, սակայն ապագա գրողը ծնված օրից իսկ ապրել է մոր հետ, խորթ հոր՝ ոչ հարուստ ազնվական Ալեքսեյ Բոստրոմի մոտ։ Կարդացած մարդ էր նա, ազատախոհ, աթեիստ ու մատերիալիստ, ուներ անդրվոլգյան ոչ մեծ մի կալվածք։ Այդ կալվածքում, գյուղական բնության գրկում, գյուղացի երեխաների հետ սերտ ընկերակցության մեջ են անցել Ալեքսեյ Տոլստոյի մանկությունն ու պատանեկությունը։ Այդ շրջանը հետագայում իր վառ և հուզիչ արտահայտությունն է գտել **Նիկիտի մանկությունը** ինքնակենսագրական վիպակում։ Ալեքսեյ Տոլստոյի մայրը՝ իր ժամանակի ճանաչված մանկական գրող Ալեքսանդրա Լեոնտևնան, ձգտում էր որդու հոգում սեր արթնացնել գրականության նկատմամբ, դաստիարակելով նրան Պուշկինի, Տուրգենևի, Սալտիկով-Շչեդրինի, Նեկրասովի, Լև Տոլստոյի ստեղծագործությունների միջոցով։ Ալեքսեյ Տոլստոյը տասնվեց տարեկանից սկսեց ոտանավորներ գրել, սակայն գրչի առաջին փորձն անհաջող եղավ. ոտանավորներն անգույն էին, գորշ, թույլ։ 1901 թվականին, ավարտելով Սամարայի ռեալական ուսումնարանը, Տոլստոյն ընդունվում է Պետերբուրգի տեխնոլոգիական ինստիտուտը։ Նրա ուսանողական տարիները զուգադիպեցին երկրում հեղափոխական շարժման վերելքին, որն իր ոլորտն էր առել և սովորող երիտասարդությանը։ Եվ, չնայած Ա. Տոլստոյը մասնակցում էր ուսանողների հակակառավարական ցույցերին, ըստ էության նա հեռու էր քաղաքականությունից, առավել ևս՝ սոցիալիստական գաղափարախոսությունից, պրոլետարիատի պայքարից։

Ռուսական առաջին հեղափոխության պարտությանը հաջորդած ռեակցիայի տարիներին Ա. Տոլստոյն ընկավ այն ժամանակ մոդայիկ սիմվոլիստների շրջապատը և նրանց ազդեցությամբ գրեց բանաստեղծությունների մի գրքույկ՝ **Լիրիկա** խորագրով, որը լույս տեսավ 1907 թվականին։ «Այդ նմանվողական, պարզունակ ու վատ գրքույկ էր»,— տարիներ անց այսպես է գնահատել իր առաջին ժողովածուն ինքը՝ հեղինակը։ Սակայն սիմվոլիզմի ազդեցությունը երկարատև չէր։ Կտրվածությունը ժամանակակից իրականությունից, վերացականությունը, դեկադենտական արվեստի միստիցիզմը խորթ էին Ալեքսեյ Տոլստոյի փթթող տաղանդին, նրա կենսասեր ու կենսախինդ խառնվածքին։ Իր ստեղծագործության համար նոր էսթետիկական հիմունքների որոնումները երիտասարդ, բայց գրական գործունեությանը հաստատապես նվիրվելու վճռականությամբ տոգորված գրողին տանում են դեպի ժողովրդական բանահյուսությունը. նա խորապես ուսումնասիրում է ռուս ժողովրդական պոեզիան ու հեքիաթները։ Արդյունքը լինում են նրա՝ բանաստեղծությունների երկրորդ և վերջին ժողովածուն՝ **Կապույտ գետերից անդին** վերնագրով և առաջին արձակ գրվածքը՝ **Կաչաղակի հեքիաթները**։

Չնայած այս երկու գրքերը ևս ստեղծագործական առումով այնքան էլ ինքնուրույն չէին, իրենց վրա կրում էին ոճապատճենման կնիքը, սակայն դրանք վկայում էին, որ գրողը ձգտում է ճանաչել ռուս ժողովրդի հոգին, երգել հայրենի բնության գեղեցկությունը, ինչպես և ցույց էին տալիս, որ նա լրջորեն հետաքրքրվում է ժողովրդական բանավոր ստեղծագործությամբ, հզոր, պատկերավոր ու հյութեղ ժողովրդական լեզվով, հետաքրքրություն, որ մշտապես ուղեկցեց Տոլստոյին։ Այս գրքերը Տոլստոյի ստեղծագործության մեջ առաջընթաց քայլ էին դեպի ռեալիզմի հաստատումը տանող ճանապարհին։

1908—1910 թվականներին Ա. Տոլստոյը հրապարակում է մի պատմվածքաշար. այն վկայում է, որ գրական ասպարեզ է իջել սեփական թեմայով, իր աշխարհզգացմամբ, կյանքի իր ընկալունակությամբ և կյանքի նկատմամբ սեփական վերաբերմունք ունեցող մի գրող։ Հետագայում, հիշելով այն մասին, թե ինչ նոր բան է ներմուծել ինքը ռուս գրականության մեջ, թե ինչպես է գտել ինքն իր թեման, Ա. Տոլստոյը գրել է. «Մայրիկիս, ազգականներիս պատմածներն էին դրանք քայքայվող ազնվականության հեռացող և հեռացած աշխարհի մասին։ Գունագեղ ու անհեթեթ, տարօրինակ մարդկանց աշխարհը։ 1909—1910 թվականներին, ծավալվող կապիտալիզմի իրադրության մեջ, պատերազմից առաջ, երբ Ռուսաստանն արագորեն վեր էր ածվում կիսագաղութային տերության, ոչ վաղ անցյալը, այդ տարօրինակ մարդիկ իմ առջև կանգնում էին անցնող ճորտատիրական դարաշրջանի տիպերի ողջ պերճությամբ։ Գեղարվեստական հայտնագործություն էր այդ»։

Այնպիսի պատմվածքներում, ինչպես՝ **Միշուկա Նալիմով**, **Մի շաբաթ Տուրենևում**, **Երազողը**, **Դերասանուհին** և այլն, Տոլստոյը ներկայացրել է ռուս ազնվականության քայքայման ու այլասերման ռեալիստական պատկերը։ Ընթերցողը տեսնում է հոգով աղքատ, վեհ հետաքրքրասիրություններից, իդեալներից ու բարոյական սկզբունքներից զուրկ ազնվականների կերպարների մի ամբողջ պատկերասրահ՝ մերթ քմահաճ կալվածատերը, որի համար միակ օրենքը սեփական կամքն է ու բիրտ ուժը, մերթ՝ մայրաքաղաքային երիտասարդ արիստոկրատը, կնամոլը, որը բացի սիրային նողկալի խարդավանքներից այլ զբաղմունք չունի, մերթ պարապ-սարապ ջահել կալվածատերը, դատարկ ու անպտուղ երազողը, որը տենչում է վեհ, արտասովոր սեր, բայց կապվում է միայն ծախու կնոջ հետ։

Ալեքսեյ Տոլստոյի առաջին պատմվածքները նկատեց ու խրախուսեց Մաքսիմ Գորկին։ 1910 թվականի նոյեմբերի 21-ին ուկրաինացի գրող Մ. Կոցյուբինսկուն նա գրել է. «Ձեր ուշադրությունն եմ հրավիրում Ալեքսեյ Տոլստոյի գրքույկի վրա... Հույսեր է ներշնչում դառնալու մեծ, առաջնակարգ գրող, ազնի՛վ խոսք»։ Այնքան արագ հաստատվեց այդ կանխագուշակությունը, որ արդեն մեկ տարի անց Բոլոնիայում բանվորների համար գործող սոցիալ-դեմոկրատական ագիտացիոն-պրոպագանդիստական բարձրագույն դպրոցի ունկնդիրներին ուղղած իր նամակում Գորկին գրեց. «Ուշադրություն դարձրեք նոր Տոլստոյի՝ Ալեքսեյի վրա, անտարակուսելի խոշոր, ուժեղ և ժամանակակից ազնվականության հոգեկան ու տնտեսական քայքայումը դաժան ճշմարտացիությամբ արտացոլող գրողի վրա»։ Այս գնահատականը կարող է վերաբերել Ա. Տոլստոյի նախահոկտեմբերյան շրջանի բոլոր լավագույն գործերին, որոնցից առավել նշանավորներն են **Երկու կյանքը (Տարօրինակ մարդիկ)**, **Կաղ կալվածատերը**։ Ազնվականության աղքատացման ու քայքայման թեման դրանցում բացահայտված է առանձնահատուկ ամբողջականությամբ ու գեղարվեստական մեծ ուժով։

Ի տարբերություն այն գրողների, ովքեր թախիծով ու ափսոսանքով էին ներկայացնում ազնվականական բների ավերումը, իդեալականացնում էին անցյալը կամ նետվում միստիկայի գիրկը, Ա. Տոլստոյն իր հերոսներին պատկերում է հիմնականում երգիծական գույներով, սուր ծաղրի ենթարկելով նրանց։ Ոչ համակրանք, ոչ խղճահարություն են հարուցում այդ մարդիկ։ Նույնիսկ նրանց տարօրինակությունները պաթոլոգիական են, այլասերման հետևանք։ Ա. Տոլստոյի վաղ շրջանի ար-

ձակի օբյեկտիվ, քննադատական բնույթը հիմք հանդիսացավ բոլշևիկյան «Պրավդա» լրագրի համար 1914 թվականի հունվարի 26-ին տպագրած **Ռեալիզմի վերածնունդը** հոդվածում նրա անունը դասելու ռեալիստ գրողների շարքում, որոնց ստեղծագործությունը հակադրվում է դեկադենտական գրականությանը: Այդ հոդվածի հեղինակը (Արտաշես Կարինյանն էր՝ Մ. Կալինին ծածկանունով) գրում էր. «Մեր գեղարվեստական գրականության մեջ այժմ նկատվում է որոշ հակում դեպի ռեալիզմը: «Կոպիտ կյանքը» պատկերող գրողներն այժմ ավելի շատ են, քան վերջին տարիներս: Մ. Գորկին, կոմս Ա. Տոլստոյը, Բունինը, Շմելյովը, Սուրգուչովը և ուրիշներ իրենց ստեղծագործություններում նկարագրում են ոչ թե «հեքիաթային հեռուները», ոչ թե խորհրդավոր «տահիտյաններին», այլ իրական ռուսական կյանքը՝ իր բոլոր սարսափելիություններով, ամենօրյա առօրեականությամբ»:

Սակայն, անողոք մերկացնելով ռուս ազնվականների կյանքի այլանդակությունն ու ճղճիմությունը, գրողը փորձում է հոգևոր ապաքինման միջոց գտնել նրանց համար, այդ խնդիրը լուծելով ոչ թե սոցիալական, այլ բարոյաէթիկական առումով: Այդպիսի միջոց նա համարում է սիրո մեծ, ամենազոր զգացումը: Իր մի շարք նախահեղափոխական ստեղծագործություններում Ա. Տոլստոյը կերտում է անաղարտ, ազնիվ, բարեկիրթ, վսեմ, անձնազոհ սիրո ունակ, այդ սիրո մեջ կյանքի նպատակն ու իմաստը տեսնող աղջիկների ու կանանց կերպարներ: Այդ առումով բնութագրական է **Կաղ կալվածատերը** վեպը, որի գլխավոր հերոսը՝ ֆիզիկապես ու բարոյապես այլանդակված, մինչև կյանքի հատակը հասած կալվածատեր իշխան Կրասնոպոլսկին, իր փրկությունը գտնում է՝ վերադառնալով իր լքած կնոջ մոտ, նրա ամեն ինչ ներող սիրո մեջ: Գրողը դեռևս հեռու էր դարաշրջանի կարևորագույն պրոբլեմներից, շահագործվող ժողովրդական զանգվածների կյանքից ու պայքարից: Դրանում արտահայտված էին երիտասարդ գրողի աշխարհայացքի սահմանափակությունը, նրա ներփակվածությունը գրական միջավայրի նեղ շրջանում: Այս հանգամանքն իսկ հասցրեց ճակատագրական այն սխալին, որ գործեց Ա. Տոլստոյը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ժամանակ: Չըմբռնելով այդ հեղափոխության պատմական ճշմարտացիությունը, նրա ստեղծարար նպատակները, հայրենի երկրի, ողջ աշխարհի ճակատագրի համար նրա մեծագույն նշանակությունը, 1919 թվականին նա ընտանիքով տարագրվեց Ֆրանսիա, Փարիզ: «Տարագրությունը,— գրել է Տոլստոյը իր վերջին ինքնակենսագրության մեջ,— եղել է իմ կյանքի ամենածանր շրջանը: Այնտեղ ես հասկացա, թե ի՛նչ է նշանակում լինել հալածական, հայրենիքից կտրված, անկշիռ, անպտուղ, բոլոր պարագաներում ոչ մեկի պետք չեկող մարդ»:

Օտարության մեջ անցկացրած առաջին տարիներին գրողը համոզվեց, որ «սպիտակ գաղափարի ասպետները», որոնց հետ մի ժամանակ նա կապում էր Ռուսաստանը կործանումից փրկելու հույսերը և որոնց մեջ այժմ գտնվում էր ինքը, ամենևին էլ մտահոգված չեն հայրենիքի բախտով և պատրաստ են ամեն մի օտարերկրյա նվաճողի վաճառելու այն, ետ ստանալու համար հեղափոխության կողմից իրենցից խլված գործարաններն ու ֆաբրիկաները, նավթահանքերն ու կալվածքները: Արտասահմանում արդեն Տոլստոյն սկսում է գրել սպիտակ էմիգրանտների շահամոլությունն ու եսամոլությունը մերկացնող ստեղծագործություններ: Այդպիսին են **Խալկի կըղզում, Փարիզում** պատմվածքները, **Մահճակալի տակ գտնված ձեռագիր** վիպակը: Հետագայում տարագրության թեման նա զարգացրեց **Նևզորովի արկածները կամ Իբիկուս, Սև ոսկի (Տարագիրներ)** և այլ վիպակներում: Այդ ստեղծագործությունների հերոսները՝ նախկին արիստոկրատները, մինիստրներն ու գեներալները, կալվածատերերն ու կապիտալիստները, սպաներն ու չինովնիկները, ինչպես և նրանց կամակատարները ներկայացվում են իբրև ավանտյուրիստներ, սպեկուլյանտներ ու խարդախներ, բարոյալքված, նողկալի ու ծիծաղելի՝ Ռուսաստանում հին կարգը վերականգնելու իրենց անիրականանալի երազներով, կարգ, որը նրանց հնարավորություն կընձեռեր մակաբույծի կյանք վարելու:

Շատ բան հասկացավ, շատ բան վերագնահատեց Ա. Տոլստոյը տարագրության մի քանի տարիներին: Փոխվեց նրա վերաբերմունքը Սովետական Ռուսաստանի, նրա հեղափոխական ժողովրդի, բոլշևիկների նկատմամբ: Այդ բանին զգալիորեն նպաստեց հանդիպումն ու բարեկամությունը Մ. Գորկու հետ, 1922 թվականին նա եկել էր Բեռլին, ուր մի տարի առաջ տեղափոխվել էր Ա. Տոլստոյը: Գրողի գաղափարական էվոլյուցիան արտացոլվեց և նրա ստեղծագործություններում, մասնավորապես **Աէլիտա** գիտաֆանտաստիկական վեպում, որտեղ Տոլստոյն առաջին անգամ կերտեց ռուս սովետական մարդու՝ Հոկտեմբերյան հեղափոխության և քաղաքացիական կռիվների մարտիկի՝ Գուսևի դրական կերպարը (նկատենք, որ **Աէլիտան** և դրանից մի քանի տարի անց գրած **Ինժեներ Գարինի հիպերբոլոիդը**



ո՛չ միայն սովետական, այլև ողջ ռուսական գրականության մեջ գիտաֆանտաստիկական վեպի առաջին լիարժեք գեղարվեստական փորձերն են): Պատահական չէ, որ **Աէլիտան** Ա. Տոլստոյի տարագրության շրջանի առաջին ստեղծագործությունն էր, որ հրապարակվեց սովետական մամուլում («Կրասնայա նով» ամսագրի 1922 թ. հունիսյան համարում):

Նույն 1922 թվականին Ա. Տոլստոյը հրապարակեց **Բաց նամակ**՝ ուղղված սպիտակ էմիգրացիայի պարագլուխներից մեկին՝ Ն. Չայկովսկուն, ուր խոր համոզումով հայտարարել է, որ Ռուսաստանին պաշտպանող միակ ռեալ իշխանությունը բոլշևիկյան կառավարությունն է, և որ ինքը որոշել է համագործակցել Սովետական Ռուսաստանի հետ: Անկեղծորեն խոստովանելով իր սխալը՝ նա գրել է. «Եվ խիղճս ինձ կանչում է... գնալ Ռուսաստան և գոնե մի փոքրիկ մեխ՝ իմ սեփականը, խփել փոթորիկներից մաշված ռուսական նավին»: Հայրենասեր գրողի ազնիվ ու խիզախ քայլն էր այդ: Հետագայում, ինքնակենսագրության մեջ կարդում ենք. «Հայրենասիրության և հայրենիքին, նրա կառուցմանն ուժերս նվիրաբերելու թելադրանքով Չայկովսկուն ուղղած նամակս իմ անձնագիրն էր»:

1923 թվականի ամռանը Ա. Տոլստոյը վերադարձավ հայրենիք: Սկսվեց նրա ստեղծագործության նոր, բացառիկ բեղմնավոր շրջանը: Այդ նոր, սոցիալիստական իշխանության գեղարվեստական յուրացման, նոր աշխարհայացքի յուրացման շրջան էր: Հենց այդ շրջանում է գրողի հզոր տաղանդը հասնում իրական ծաղկման, որը կապված է Տոլստոյի խոշորագույն երկերի՝ **Տառապանքի ուղիներով** հերոսական էպոպեայի և **Պետրոս Առաջին** պատմավեպի հետ:

**Տառապանքի ուղիներով** եռագրության վրա գրողն աշխատել է ավելի քան քսան տարի. առաջին գիրքը՝ **Քույրերը,** սկսել է 1919 թվականին, Ֆրանսիայում և այդտեղ էլ տպագրվել է այն, երկրորդը՝ **Տասնութ թվականը,** 1927 թվականին, երրորդը՝ **Մռայլ առավոտը,** ավարտել է 1941 թվականի հունիսի 22-ին՝ Հայրենական պատերազմի առաջին օրը:

«Կարելի է այսպես բնորոշել «Տառապանքի ուղիներով» եռագրության թեման. այդ կորսված ու վերադարձված հայրենիքն է»,— գրել է ինքը՝ Ա. Տոլստոյը: Այդ մի հերոսապատում է հարազատ երկրի ու ժողովրդի ճակատագրի մասին, ռուս մտավորականության ճակատագրի, դեպի հեղափոխությունը տանող նրա ուղիների մասին: Եռագրության մեջ ներկայացված է Ռուսաստանի կյանքը պատմության վճռական, շրջադարձային պահին, երկու դարաշրջանների սահմանագծում: Իմպերիալիստական պատերազմ, փետրվարյան հեղափոխություն, Մեծ հոկտեմբեր և քաղաքացիական պատերազմ— ահա պատմական այն հիմնական իրադարձությունները, որոնք կազմում են եռագրության հիմքը և որոնց հետ կապված է վեպի ողջ սյուժեն: Հերոսապատումն աչքի է զարնում իրականության և բազմաթիվ հերոսների ու էպիզոդիկ անձնավորությունների բացառիկ լայն ընդգրկումով: Գործողությունը ծավալվում է ռուսական երկու մայրաքաղաքներում ու ծայրագավառում, գործարաններում և ազնվականական դահլիճներում, Վոլգայի ու Դնեպրի ափերին, ռազմաճակատում ու թիկունքում, կարմիր բանակում և հակահեղափոխության լագերում: Եռագրության մեջ ներկայացված են ռուսական հասարակության և ժողովրդի համարյա բոլոր խավերը: Բայց հեղինակի ուշադրության կենտրոնում են չորս մարդ— Կատյա և Դաշա Բուլավինա քույրերը, ինժեներ Տելեգինը, սպա Վադիմ Ռոշչինը: Հատկապես մեծ տեղ է հատկացված նրանց՝ եռագրության առաջին գրքում:

Ապրելով այն աշխարհում, ուր ամենուր իշխում էր քայքայման, ավերումի ոգին, դատարկամիտ ու նողկալի մտավորականության շրջապատում, այս ազնիվ, անմիջական, անձնվեր մարդիկ երազում են անաղարտ ու անշահախնդիր սիրո մասին, որի բացառիկ փրկարար ուժին դեռևս հավատում էր նաև ինքը՝ հեղինակը: Նրանք փորձում էին իրենց անձնական երջանկությունը կերտել այնպիսի մի ժամանակ, երբ շրջապատում ամեն ինչ հակառակ էր դրան. նրանք ցանկանում էին անձնական երջանկության նեղ աշխարհում թաքնըվել մարդկային տառապանքներից, վշտից, պատերազմից: Տելեգինն ասում է. «Կարո՞ղ եմ ես ոչնչացնել հերթերը, կերակրել սովյալներին, դադարեցնել պատերազմը: Ո՛չ: Բայց եթե չեմ կարող, պե՞տք է արդյոք ինքս էլ անհետանամ այս խավարում, հրաժարվեմ երջանկությունից: Ո՛չ, չպե՛տք է»: **Քույրեր** վեպի փիլիսոփայությունն ամենից լավ արտահայտվում է Ռոշչինի՝ իր սիրած կնոջը՝ Կատյային ուղղած հետևյալ խոսքերում. «Կանցնեն տարիները, կխաղաղվեն պատերազմները, կդադարի հեղափոխությունների աղմուկը, անանց կմնա միայն Ձեր մեղմաբարո, քնքուշ, սիրելի սիրտը...»:

Սակայն պարզվեց, որ ծանր փորձությունների ժամանակ, որոնց ենթարկվում է հայրենիքը, սերը, նույնիսկ ամենավսեմ ու պայծառ սերը, չի կարող լինել գոյության միակ իմաստը, չի կարող կատարյալ երջանկություն պարգևել: Դաշայի ու Տելեգինի, Կատյայի ու Ռոշչինի սերը չկարողացավ դիմագրավել հասարակական, պատմական բուռն իրադարձու-

թյունների հորձանուտին: Այդ հորձանուտն անջատեց նրանց իրարից, նետեց տարբեր կողմեր: Նրանցից յուրաքանչյուրն ստիպված եղավ փնտրել դեպի ճշմարտությունը, դեպի ժողովուրդը, դեպի կատարյալ երջանկությունը տանող իր ուղին: Տելեգինը, որ գործարանում էր աշխատում, կապված էր բանվորների հետ, շուտ գտավ իր ճանապարհը: Առավել բարդ, ոլորապտույտ ճամփաներով, տանջանքի, մոլորությունների, հոգեկան ու ֆիզիկական տառապանքների միջով անցնելով, Դաշան, Ռոշչինն ու Կատյան հասան հեղափոխության ըմբռնմանը: Եվ միայն ժողովրդի պայքարում ու աշխատանքում գտնելով իրենց տեղը, հասարակությանն օգտակար դառնալով, նրանք գտան և իրենց անձնական երջանկությունը:

Տառապանքի ծանր ուղիներում բացահայտվում են եռագրության գլխավոր հերոսների՝ մեծ ջերմությամբ նկարագրված, նրանց հոգեբանության խոր ներթափանցումով կերտված բնավորությունները: Խոսքի մեծ վարպետի հմտությունը դրսևորվել է և ժողովրդի ներկայացուցիչների կերպարները կերտելիս. նրանք են՝ բանվոր Վասիլի Ռուբլյովը, բոլշևիկ-կոմիսար Իվան Գորան և նրա կինը՝ Ագրիպինան, ծովայիններ Չուգայը և Լատուգինը, քաղդեկ Շարիգինը, կոմերիտուհի Մարուսյան, կարմիրբանակային Յակովը, ջահել գեղջկուհի Անիսյան և ուրիշներ: Մաքսիմ Գորկուց հետո Ալեքսեյ Տոլստոյն առաջինն է փորձում գեղարվեստական արձակում կերտել կուսակցության առաջնորդի՝ Լենինի կերպարը: Չնայած Լենինը երևում է սոսկ մի քանի տեղում— ժողկոմխորհի նիստում, գործարանային միտինգում և եռագրության վերջում՝ սովետների համագումարի նախագահությունում, հեղինակը գտել է առաջնորդի կենդանի կերպարը ներկայացնող բնորոշ գծեր: Խորապես խորհրդանշական են հերոսագրության վերջին էջերը, ուր նկարագրվում է Մոսկվայի մեծ թատրոնում տեղի ունեցող սովետների համագումարը, որտեղ Տելեգինը, Դաշան, Կատյան ու Ռոշչինը լսում են Ռուսաստանի էլեկտրիֆիկացման՝ լենինյան մեծ պլանին նվիրված զեկուցումը: Քաղաքացիական պատերազմը մոտենում էր ավարտին, մեր հայրենիքի պատմության մեջ սկսվում էր նոր դարաշրջան՝ նոր կյանքի կառուցման դարաշրջանը:

Սովետական գրականության ոսկե ֆոնդի գանձերից մեկը՝ **Տառապանքի ուղիներով** վեպը համոզիչ վկայությունն է այն բանի, որ Ա. Տոլստոյն ամենայն խորությամբ յուրացրել էր նոր, առաջավոր աշխարհայացքը:

**Պետրոս Առաջին** պատմավեպի ստեղծագործական պատմությունը ցայտուն օրինակն է այն բանի, թե ինչպես մարքս-լենինյան տեսության տիրապետումն օգնում է ո՛չ միայն ժամանակակից, այլև վաղուց անցած դարաշրջանի խոր գեղարվեստական ըմբռնմանը և ճշմարտացի արտացոլմանը:

Պետրոս Առաջինի անձնավորությունն ու գործունեությունն ավելի քան երկու հարյուր տարի գրավել են ռուս, և ո՛չ միայն ռուս, պատմագրության, գրականության, արվեստի ուշադրությունը: Այդ ժամանակաընթացքում ստեղծվել են պոեզիայի, դրամատուրգիական և արձակ բազմաթիվ ստեղծագործություններ, որոնցում, հեղինակի քաղաքական ու գեղարվեստական դիրքորոշման համապատասխան, Պետրոսի նկատմամբ դրսևորվել է ամենատարբեր վերաբերմունք— զուտ ջատագովականից մինչև խիստ բացասականը: Ինչի՞ց էր բխում Ալեքսեյ Տոլստոյի հետաքրքրությունը Պետրոսի դարաշրջանի նկատմամբ: Այսպես է պատասխանել գրողն այդ հարցին. «Ինձ հրապուրում էր «չհարդարված» և ստեղծագործական ուժի լեփ-լեցունության զգացումն այն կյանքի, երբ հատուկ ցայտունությամբ էր բացահայտվում ռուսական բնավորությունը... Ռուս ժողովրդի գաղտնիքը, նրա մեծությունը հասկանալու համար պետք է լավ ու խորապես իմանալ նրա անցյալը. մեր պատմությունը, նրա արմատական հանգույցները, ողբերգական և արարման դարաշրջանները...»:

Պետրոսի թեմային առաջին անգամ Ա. Տոլստոյը դիմեց 1917 թվականին՝ գրելով **Պետրոսի օրը** վիպակը: Այդ ժամանակ գրողի վերաբերմունքը Պետրոսի և նրա ռեֆորմների նկատմամբ հակասական էր: Մի կողմից հեղինակն ընդունում էր Պետրոսի վերափոխիչ գործունեության պրոգրեսիվ բնույթը, ցույց տալիս դրա վիթխարի մասշտաբը, միապետի անհելի եռանդն ու կամքը: Մյուս կողմից՝ այդ գործունեությունը ներկայացվում էր անհեռանկարային, ռուսական կյանքի պայմաններին անհարիր, ժողովրդի համար անհասկանալի ու անընդունելի, սոսկ իբրև արյունարբու բռնակալի անձնական կամայականության թելադրանք: Վիպակում Պետրոսը՝ մեն-մենակ հակադրված է ողջ ժողովրդին:

Ողբերգականորեն մենակ է ներկայացված Պետրոսը նաև Ա. Տոլստոյի **Դրկարանի վրա** պիեսում: Չնայած պիեսը գրվել է 1928 թվականին, սակայն գրողի աշխարհայացքի զարգացման այդ փուլում նա դեռևս լիովին չէր ձերբազերծվել պատմական սխալ հայացքներից: Ճիշտ է, պիեսում Պետրոսի ռեֆորմներն արդեն չեն բացատրվում անձնական շարժառիթներով, այլ Ռուսաստանի, պետության հանդեպ հոգածությամբ, սակայն այդ հոգածությունն ուժից վեր դուրս եկավ: Ո՛չ ժողովուրդը, ո՛չ Պետրոսի զինակիցներն ու մերձավորները չէին հավատում նրա գործին: Իսկ տանջանքի ու մահապատժի տեսարանների նկարագրությունները, թեպետ այդ դաժանությունը համարվում էր պետական անհրաժեշտություն, ըստ էության, նատուրալիստական բնույթ են կրում: Հետագայում, արդեն 30-ական թվականներին, գրողը լուրջ փոփոխություններ կատարեց պիեսում:

**Պետրոս Առաջին** վեպի առաջին գիրքը տպագրվել է 1930 թվականին, երկրորդը՝ 1934-ին, երրորդը մնացել է անավարտ: Այդ ժամանակաընթացքում երկրում տեղի ունեցան քաղաքական, սոցիալ-տնտեսական կարևորագույն իրադարձություններ, որոնք նոր աշխարհայացքի հետ մեկտեղ օգնեցին Ա. Տոլստոյին՝ գտնելու անցյալի բուն էությունը հասկանալու, Պետրոսի դարաշրջանը պատմական ճշմարտացիությամբ արտացոլելու բանալին: Ինքը՝ Տոլստոյը, գրել է. «Վաղուց, դեռ փետրվարյան հեղափոխության սկզբից եմ ես նպատակ ունեցել անդրադառնալու Պետրոս Առաջինին: Ես տեսնում էի նրա բանկոնի բոլոր բծերը, բայց Պետրոսն առեղծվածի պես միշտ մնում էր պատմության մշուշում: Վեպի նախնական աշխատանքները համընկնում են հնգամյա պլանի իրականացման սկզբի հետ: «Պետրոս» վեպը գրելը ամենից առաջ ներթափանցումն է պատմության մեջ՝ մարքսիստաբար ընկալված արդիականության միջոցով: Ամենից առաջ գեղարվեստական ողջ աշխարհզգացման վերափոխում: Արդյունքը եղավ այն, որ պատմությունն սկսեց բացահայտել անձեռնամուխ հարստություններ: Մարքսիստական վերլուծության շնորհիվ պատմությունը վերակենդանացավ իր ողջ վառ բազմակերպությամբ, դասակարգային պայքարի դիալեկտիկական ողջ օրինաչափությամբ»:

Գրողն ամբողջովին վերանայել է իր վերաբերմունքը Պետրոսի թեմայի նկատմամբ, մարքսիստաբար մոտեցել պատմության մեջ անհատի խաղացած դերի հարցի լուծմանը: Վեպի առաջին իսկ էջերից հեղինակն ընթերցողին տանում է Ռուսաստանի՝ XVII դարի վերջի իրականության մթնոլորտը, ներկայացնում հասարակության տարբեր խավերի կյանքը, նկարագրում պետության թուլացումը, աղքատացումը՝ խուլ գյուղից սկսած մինչև թագավորական Մոսկվան, և վերափոխման պատմական անհրաժեշտությունը դառնում է ակնբախ: Ռուսաստանն այլևս չի կարող հին ձևով ապրել: Ամենից լավ այդ հասկանում էր Պետրոսը: Եվ վեպում նա ներկայացված է ամենից առաջ որպես պետական գործիչ, երկրի և ազգի խոշորագույն շահերի արտահայտիչ, պայծառ խելքով, անկոտրում կամքով վերափոխիչ, որն իր կրքոտ հոգու ողջ ուժով փըշրում է ողջ հինը, այն ամենը, ինչ խանգարում է Ռուսաստանի դարավոր հետամնացության հաղթահարմանը:

Գրողը ցույց է տալիս Պետրոսի և՛ մարդկային թուլությունները, և՛ դաժանությունը: Սակայն դրանք այստեղ չեն մթագնում գլխավորը՝ նրա հայրենասիրությունը, նպատակասլացությունը, պետական իմաստնությունը, նրա կամքի խորտակիչ ուժը: Հեղինակը հատկապես շեշտում է Պետրոսի այս վերջին հատկանիշը: Հենց այդ անկոտրում, երկաթյա կամքի շնորհիվ Պետրոսին հաջողվեց իրականացնել իր ռեֆորմները: Պետական գործչի համար բնավորության այդ հատկության կարևորությունն է ցույց տալիս Պետրոսի համադրությունը իշխան Վասիլի Գոլիցինի հետ: Բացառիկ կրթություն ստացած, մեծ խելքի, առաջավոր գաղափարների տեր այդ մարդը վաղուց է հասկացել պետական վերափոխությունների անհրաժեշտությունը և գրում է նախագծեր, որոնք շատ բանով առաջ են անցնում Պետրոսի սոցիալական ծրագրից: Տիրակալուհի Սոֆիայի ֆավորիտը՝ Գոլիցինը, փաստորեն մի քանի տարի շարունակ պետության գլուխն էր: Այնուամենայնիվ, և՛ խոր միտքը, և՛ փայլուն կրթությունը, և՛ անսահման իշխանությունը ապարդյուն, անօգուտ դուրս եկան: Նա չկարողացավ կենսագործել իր պրոգրեսիվ գաղափարներն ու նախագծերը: Ի՞նչն էր պակասում նրան: Կամքը, վճռականությունը, սկզբունքայնությունը: Այս հատկություններից զերծ լինելն էլ Գոլիցինին տարավ Պետրոսի հակառակորդների բանակը, չնայած իր բոլոր տվյալներով պետք է լիներ նրա զինակիցը:

Վասիլի Գոլիցինի, ինչպես և վեպի շատ այլ հերոսների կերպարները կերտված են հոգեբանորեն ճիշտ, գեղարվեստորեն համոզիչ, խորապես հավաստի:

Ալեքսեյ Տոլստոյի մեծ վարպետությունը դրսևորվում է ո՛չ միայն մարդկանց, նրանց գործերն ու արարքները ներկայացնելիս, այլև կենցաղը, բնությունը նկարագրելիս: Ինչ էլ նկարագրի, ընթերցողն զգում է, որ գրողը պարզ ու հստակ, բոլոր մանրամասներով տեսնում է իր ներկայացրածը: Այդ պայմանավորված է ո՛չ միայն գրողի գեղարվեստական տեսունակության ինքնատիպությամբ, այլև իրականության խորիմացությամբ: «Կարծում եմ,— ասել է Ա. Տոլստոյը,— եթե ես ծնվեի քաղաքում և ոչ թե գյուղում, հազարավոր բաների մանկուց ծանոթ չէի լինի— ձմեռային այս բուքը տափաստաններում, լքված գյուղերում, ջրօրհնեքը, խրճիթները, գուշակությունները, հեքիաթները, մարխը, խրձանոցները, որ առանձնահատուկ հոտ ունեն, հավանաբար ես

չէի կարողանա այդպես նկարագրել հին Մոսկվան: Հին Մոսկվայի տեսարանները հընչում էին իմ հոգում խոր մանկական հիշողություններով: Այստեղից էլ ձևավորվում է դարաշրջանի, դրա իրեղենության զգացումը... Հենց դրանում է ազգային արվեստը— հայրենի հողի բույրի մեջ, մայրենի լեզվում, որի բառերն ասես թե ունեն կրկնակի գեղարվեստական իմաստ— և՛ այժմեական, և՛ այն՝ մանկութ ներծծված, հուզաթաթավությամբ, բառեր, որոնք հարազատ են համով, տեսքով ու հոտով: Դրանցից է հենց ծնվում կատարյալ արվեստը»:

Կերպարների ճկունությունն ու արտահայտչականությունը, պատմական մտքի ճշմարտացիությունն ու խորությունը, սերը հայրենի երկրի, ժողովրդի նկատմամբ, որով ներծծված է ողջ գիրքը, **Պետրոս Առաջինը** դարձրել են սովետական գրականության լավագույն և ամենամասսայական գրքերից մեկը: Մաքսիմ Գորկու բնորոշմամբ, այն «առաջին իսկական պատմավեպն է մեր գրականության մեջ»:

Տոլստոյի հետաքրքրությունը պատմության, ռուսական ազգային բնավորության նկատմամբ հատուկ ուժով դրսևորվել է Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Այդ ժամանակաշրջանում նա գրել է **Իվան Ահեղ** դրամատիկական եռագրության երկու մասերը, փոքրիկ նովելների մի շարք՝ **Իվան Սուդարևի պատմվածքները** ընդհանուր խորագրով, ուր հուզիչ անկեղծությամբ բացահայտում է սովետական մարդու՝ պատերազմի փորձություններում դրսևորվող գեղեցկությունն ու ուժը, նրանց քաջությունն ու սխրանքները, պատասխանատվությունն ու անսահման սերը հայրենիքի նկատմամբ:

Պատերազմի առաջին իսկ օրերից սովետական պարբերական մամուլի էջերում հրապարակվում են Ա. Տոլստոյի հոդվածներն ու ակնարկները՝ տոգորված հաղթանակի նկատմամբ խոր հավատով, ցասման պաթոսով, ֆաշիստական զավթիչների դեմ անողոք պայքարի կոչով:

Մեծ հայրենականին նվիրված լավագույն ստեղծագործություններից է նրա **Ռուսական խառնվածք** պատմվածքը, որտեղ խորապես բացահայտված է ծանր փորձություններում թրծված ռուս մարդու հայրենասեր ու խոր հումանիզմը: Միշտ անմոռաց են մնում պատմըվածքի վերջին, ընդհանրացնող տողերը. «Ահա նրանք՝ ռուսական խառնվածքները: Թվում է՝ պարզ է մարդը, բայց վրա է հասնում դաժան փորձությունը՝ մեծ թե փոքր, և նրա հոգում արթնանում է մեծ ուժը՝ մարդկային գեղեցկությունը»:

ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ակադեմիկ-գրող Ալեքսեյ Տոլստոյը վախճանվեց 1945 թվականի փետրվարի 23-ին, ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակից երկուս ու կես ամիս առաջ...

Ալեքսեյ Տոլստոյի գործերը թարգմանվել են Սովետական Միության և արտասահմանյան երկրների շատ ժողովուրդների լեզուներով: Նրա ստեղծագործության զգալի մասը դարձել է հայ ընթերցողի սեփականությունը: Գրողի առանձին երկեր հայերեն թարգմանությամբ առաջին անգամ լույս են տեսել 30-ական թվականների կեսերին. դրանք են՝ **Նիկիտի մանկությունը** վիպակը, **Հացը** վեպը և **Պետրոս Առաջին** պատմավեպը: Հետագայում հրատարակվել են **Տառապանքի ուղիներով** եռագրությունը, **Ինժեներ Գարինի հիպերբոլոիդը** և **Աելիտա** վեպերը: Բազմիցս լույս են տեսել **Ոսկե բանալի կամ Բուրատինոյի արկածները** և գրողի այլ հեքիաթներ: Անտարակույս, ապագայում հայ ընթերցողը կծանոթանա սովետական գրականության ականավոր դասականի ստեղծագործությունների նոր թարգմանություններին:

Ալեքսեյ Տոլստոյը վաստակել է սովետական ժողովրդի սերն ու համակրանքը՝ իր լավագույն ստեղծագործություններով հարստացնելով նրա հոգևոր կուլտուրայի գանձարանը:

---



# ՀԱՅՐԵՆԻ ՄՇԱԿՈՒՅԹԻ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐՈՒՄ

**ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ** զարգացման գործում երգչախմբային կոլեկտիվների ներդրումն արժանի է ամենաբարձր գնահատանքի: Դժվար է նույնիսկ նշել մարդկային գործունեության մի այլ բնագավառ, որն այդքան գործուն ձևով, ինչպես խմբերգային արվեստն է, ծառայի մարդկանց փոխըմբռնման ու բարեկամության ամրապնդմանը: Եվ միշտ շահող են երկու կողմերն էլ՝ թե՛ տվողը և թե վերցնողը:

Խոսելով երգչախմբային արվեստի հայ գործիչների, բարեկամության ու խաղաղության ճշմարիտ համբավաբերների մասին, առաջինների շարքում պետք է հիշեմ իմ վաղեմի կոլեգա ու բարեկամ Հովհաննես Չեքիջյանին, որի գործունեությանն արդեն հետևում եմ ահա տարիներ շարունակ: Նա դրսևորել է իրեն որպես նպատակասլաց դիրիժոր, կատարողներին իր ստեղծագործական կրակով համակող վարպետ: Նրա ղեկավարած երգչախմբի հատկանիշներից են՝ կատարողական խիստ կարգապահությունը, հուզականությունը, հիանալի հընչողությունը, վոկալի արտակարգ բարձր մակարդակը և, իհարկե, անթերի ինտոնացիան:

Մի խոսքով, ինչպես դիրիժորը, այնպես էլ նրա երգչախումբը լիովին բավարարում են ժամանակակից խմբերգային արվեստի գեղարվեստական բարձր պահանջները:

Առողջություն, կորով, ստեղծագործական հաջողություններ:

**ԳՈՒՍՏԱՎ ԷՌՆԵՍԱՔՍ**



Սովետական երաժշտական մշակույթի ականավոր գործչի այս ողջույնը ևս մեկով ավելացնում է Հայաստանի պետական ակադեմիական երգչախմբի և նրա գեղարվեստական ղեկավար ու գլխավոր դիրիժոր Հովհաննես Չեքիջյանի բազում ելույթների առիթներով հրապարակված կարծիքների թիվը: Սակայն ուշագրավն այն է, որ դրանք բոլորն էլ, պտտվելով նույն առանցքի շուրջը, ստեղծում են Չեքիջյանի կատարողական արվեստի համընդհանուր գնահատականը, որի «բաղադրիչները» ներկայանում են մեզ գերադրականի ու եզակիության պիտակով՝ «ժամանակակից դարաշրջանի ցայտուն ֆենոմեն», «տաղանդավոր կոլեկտիվ», «շնորհալից ընդունելություն», «մարդկային զգացումների երանելի աշխարհ», «համերգային ռումբ» և այլն:

Այսօր, համընդհանուր սավածի ու ստեղծված բարձր կարծիքի պայմաններում, անշուշտ, այդ կոլեկտիվի ու նրա ղեկավարի մասին մի նոր բան ասելու հավակնությամբ գրելը թե՛ դյուրին է և թե դժվար: Եվ, այդուհանդերձ...

Ճիշտ է ընտրվել ամենից առաջ Հովհաննես Չեքիջյանի կյանքի ուղին, ըստ բնատուր տաղանդի ու կոչման, այսինքն՝ պահպանվել է արվեստում կատարյալին հասնելու նախապայմանը: Մանկուց նա լսել է հոր ջութակի նվագը և առավել տպավորիչ երգեցողությունը, որը և նրա հոգում մշակել է կոմիտասյան երաժշտական ազնիվ ճաշակ ու հոգեհարազատ վերաբերմունք հայ երգի նկատմամբ (հայրը Կոմիտասի երգչախմբի անդամներից

էր): Հինգ տարեկանից դասեր է առել պրոֆ. Բաբելյանից, որն իր փոքրիկ սանիկին ազգայինին զուգընթաց հաղորդակից է դարձրել նաև համամարդկայինին: Այսպես, ազգայինի ու համամարդկայինի փոխհարաբերությունն իբրև մտածողություն Չեքիջյանի մոտ սկզբնավորվել է դեռևս մանուկ հասակից:

Ի հեճուկս հոր՝ որդուն նույնպես կաշեվաճառ դարձնելու ցանկության, նախախնամությունը Չեքիջյանին տարավ երաժշտության ասպարեզ: Նա սովորեց ու ավարտեց Ստամբուլի պետական կոնսերվատորիայի դիրիժորական ֆակուլտետը (1944—1951), պրոֆեսոր Ժան Ֆուռնեի դասարանում կատարելագործեց նվագախմբային դիրիժորի արվեստը Փարիզի «Էկոլ նորմալ դը մուզիկ» կոնսերվատորիայում (1951—1953), ապա ավարտեց Ստամբուլի պետական կոնսերվատորիայի ասպիրանտուրան (1958—1961), որով բոլորվեցին Չեքիջյանի՝ դիրիժորական բարդ արվեստի տարբեր (նվագախմբային, խմբավարական և օպերային) ոլորտների տեխնիկային տիրապետելու ուսումնառության տարիները:

Ուսումնառությանը զուգընթաց սկիզբ է առնում Հովհաննես Չեքիջյանի աշխատանքային կյանքը: 1944—1951 թվականներին, անընդմեջ, Հ. Չեքիջյանը ղեկավարել է Ստամբուլի «Մխիթար», «Գողթան» և «Չեքիջյան» անվանակոչյալ երգչախմբերը, իսկ 1954—1961-ին՝ քաղաքի պետական պրոֆեսիոնալ երգչախումբը, այսինքն՝ նրա խմբավարական գործունեությունն սկսվել է 15 տարեկանից, երբ նա դեռ կոնսերվատորիայի առաջին կուրսի ուսանող էր: 1947-ից մինչև Փարիզ մեկնելը (1951) միաժամանակ ղեկավարել է Թուրքիայի պետական սիմֆոնիկ նվագախումբը:

1958—1961 թվականներին Հ. Չեքիջյանը Ստամբուլի օպերային թատրոնի գեղարվեստական ղեկավարն էր: Այստեղ նա խմբավարի գործունեությունը զուգորդում է օպերային դիրիժորի աշխատանքի հետ, իսկ 1960—1961 թվականներին համատեղում է այն պետական կապելլայի խմբավարի պարտականությունների հետ: Այսպես, տարիների ընթացքում Չեքիջյան-դիրիժորի գործունեությունն ընդլայնվել, ընդգրկել է մասնագիտական նոր ոլորտներ, բերել նրան լայն պրոֆիլ ունեցող արվեստագետի ճանաչում ու համբավ:

1961 թվականից Հովհաննես Չեքիջյանը Սովետական Հայաստանի քաղաքացի է, Երևանի բնակիչ: Պատմական իրադարձությունների բերումով ծնվել ու գործել էր նա օտար ափերում, բայց վերադարձավ հայրենիք, գըտավ իր արմատը «արյան ձայնով», որը և զորացրեց նրան իր արվեստում:

Հ. Չեքիջյանի տունդարձը հայրենասիրության ու քաղաքացիականության մի գեղեցիկ օրինակ էր. նրա տաղանդը հայրենիքում առկայծեց բազմազան դրսևորումներով՝ համամարդկային և ազգային երաժշտության բարձրարվեստ կատարմամբ, որակյալ կադրերի պատրաստմամբ, հասարակական եռանդուն աշխատանքով, այսինքն՝ մի գործունեությամբ, որը հավաստում է հայրենասիրություն բառի բովանդակության տարողունակությունը:

Կատարված բոլոր աշխատանքների կենտրոնում, անշուշտ, ինքը՝ խմբավար Հովհաննես Չեքիջյանն է:

Երգչախումբը հաճախ դիտվում է որպես երաժշտական գործիք. չէ որ այն ևս մարդկային ներաշխարհի տարբեր տրամադրություններ ու հոգեվիճակներ արտահայտելու միջոց է: Ի դեպ, «Յումանիտե»-ի երաժշտական քննադատներից մեկը Հայաստանի կապելլայի փարիզյան հյուրախաղերից հետո իր հոդվածն այդ կոլեկտիվի մասին այդպես էլ վերնագրել էր՝ «Երգչախումբը՝ գործիք», այսինքն՝ նշել կոլեկտիվի ձայնական մարզվածության բարձր աստիճանը: Գործիքայնության հասցված կատարելությունն է Չեքիջյանին հնարավորություն ընձեռում զարմանալիորեն ազատ վարվելու երգչախմբի հետ, ի կատար ածելու իր երբեմն խիստ համարձակ ու հնարամիտ մըտահղացումները, ինչպիսին էր, ասենք, Ռոսինիի «Սևիլյան սափրիչ» օպերայի իրենց կատարած հատվածում մեներգիչների դերերը երգչախմբին հանձնելը: Քանի որ երգչախումբը Չեքիջյանի ձեռքին «գործիք» է, ապա նրա կատարողական արվեստի մասին խոսելիս, բնականաբար, ուժի մեջ են մտնում «գործիքին տիրապետել», «տեխնիկայի կատարելագործում», «երգչախմբի հավասար ու հյութեղ հնչողություն՝ ամբողջ հնչյունածավալում», «հնչյունային երանգապնակ» և նման հասկացություններ ու արտահայտություններ: Հայտնի է, սակայն, որ հավաքական առումով «երաժշտական տեխնիկան» մեծ արվեստագետի համար ընդամենը գեղարվեստական կերպար, գունեղ պատկեր ստեղծելու, հույզ առաջացնելու միջոց է: Հենց այստեղ է, որ երևում է արվեստագետի «առաստաղի» բարձրությունը: Այդ «առաստաղի» բարձրության գնահատականն են տալիս մասնագետներն ու երաժշտասեր լայն հասարակայնությունը, երբ Հովհաննես Չեքիջյանին համարում են «երաժըշտության ու հնչյունների կախարդ»՝ կապելով «կախարդանքի» գաղտնիքները տարբեր հիմքերի հետ: Այսպես, ոմանք դա բացատրում են նրա ձեռքերի արտահայտչականությամբ, ժեստի ու դիմախաղի կոնկրետությամբ, ոմանք՝ գիտելիքների մեծ պաշարով, ավանդութային խոր արմատների հետ պահ-



վող սերտ կապով, Հովհաննես Չեքիջյանի ստեղծագործական խառնվածքին բնորոշ տեմպերամենտով, մյուսները՝ երաժշտական տեխնիկային քաջատեղյակությամբ, վոկալի՝ ներազդման արտակարգ զորեղությամբ օժտված մարդկային ձայնի գաղտնիքների տիրապետմամբ, վերջապես ուրիշները՝ այն ջանադիր աշխատանքով ու պահանջների խստությամբ, որ Հ. Չեքիջյանը ներկայացնում է երգչախըմբին:

«Չեքիջյանի կրակոտ երևակայությունը և ստեղծագործական կամքը, բազմապատկված կուլտուրայի և զարգացածության բարձր աստիճանով, նպաստում են իսկական գլուխգործոցներ ստեղծելուն...

Չեքիջյանի ժեստը կայծակնային արագությամբ տարածության մեջ գծագրում է այդ ակնթարթում իրեն անհրաժեշտ հնչման նըրբագիծը» («Սովետսկայա մուզիկա», № 10, 1978, Մոսկվա):

«Հովհաննես Չեքիջյան. կայծակի նման փայլատակող մարդ, որի փոթորկուն շարժումներին անշեղորեն հետևում է Սովետական Հայաստանի պետական կապելլան...

«Ստաբատ մատերի» կատարման մեջ մեզ ներկայացան այն ավանդույթների գանձերը, որոնք ձեռք են բերվում պրոֆեսիոնալ կարգապահության և մանրակրկիտ կոլեկտիվ աշխատանքի միջոցով» («Ֆիգարո», 17 սեպտեմբերի 1974, Փարիզ):

Նրա տաղանդի բազում երկրպագուներից խմբավար Կ. Կաստորսկայան և կոմպոզիտոր Ա. Սոբոլևը գրել են. «Նրա դիրիժորական ձեռքը, Պագանինիի աղեղի նման, երգչախըմբից կորզում է խմբերգային հնչողության այնքան անսովոր ու անսպասելի, բայց միշտ ըստեղծագործականի առումով համոզիչ գույներ՝ մտահղացման հստակության ու կատարվող ստեղծագործությունների մանրամասների նուրբ հաղորդման պայմաններում, որ ակամա խոնարհվում ես նրա տաղանդի առաջ»:

Ավելի քան ճշմարիտ են բոլոր գրախոսողներն էլ, որովհետև բարձր արվեստն արդյունք է գրավականների կոմպլեքսի՝ և՛ կըրթության, և՛ ընդհանուր էրուդիցիայի, և՛ համառ աշխատանքի, և՛ կենսափորձի, և, ամենից առաջ, տաղանդի՝ այս բառի բուն նշանակությամբ:

Հովհաննես Չեքիջյանը պատշաճ կրթություն ստացած, համակողմանի զարգացած, ստեղծագործական աշխատանքի կարգապահության նորմերով դաստիարակված երաժիշտ է, մեծ երաժիշտների արվեստին հաղորդակցված մի արվեստագետ, համաշխարհային և ազգային ժողովրդական ու պրոֆեսիոնալ երաժշտական գրականության գիտակ, ստեղծագործական բեղմնավոր կյանք ապրած մըշակութային գործիչ: Եվ այս ամենը՝ կշեռքի նժարներից մեկում, իսկ մյուսում՝ նրա բնատուր տաղանդը: Դրանց երջանիկ հավասարակշռությունը պայմանավորում է ամեն մի արվեստագետի մեծությունը, ապահովում ամենուր նրա արվեստի արտակարգ ընդունելությունը:

Խմբերգային բարձր արվեստի գոյությունն ինքնին նշանակում է՝ վոկալի հաղթահարված գաղտնիքներ, երգչախումբն իբրև ամբողջական ու միաձույլ օրգանիզմ, ձայների ներդաշնակություն ու համաձայնեցում, անկաշկանդ ձայնատարություն, հստակ առոգանություն և լեզվական կուլտուրա, լեզվիմացությունից բխող և իմաստալից երգեցողություն ապահովող ճիշտ շեշտադրություն, անթերի ու հարուստ ինտոնացիա, որոշակի ու ցայտուն ռիթմ, նյութի հղկվածություն, մեկնաբանվող մեծ կամ փոքր երկի սահմաններում ներքին դրամատուրգիայի ստեղծում: Այս ամենը երաժըշտական լեզվի ու տեխնիկայի գումարելիներն են, բացի վերջինից՝ ստեղծագործության ներքին զարգացման օրինաչափությունների բացահայտումից, բովանդակության մեկնաբանումից, այն երաժշտականորեն մարմնավորելուց, այսինքն՝ բացի այն պրոցեսից, որը խիստ անհատական է և ուղիղ համեմատական արվեստագետի ներաշխարհի հետ, նրա ընկալումների խորությանն ու ինքնօրինակությանը: Ոչ պատահականորեն, հաճախ նշում են ստեղծագործող—կատարող—ունկնդիր եռանկյան գոյությունը՝ համահեղինակային, բայց ոչ նույնության հիմքով: Արվեստի զարմանահրաշության առանցքը հենց արարչությունն է՝ դրա ստեղծման, կատարման ու ընկալման ընթացքում:

Հովհաննես Չեքիջյանը, անշուշտ, ունի նախասիրություններ, որոնցով առաջնորդվում է համերգային երկացանկեր կազմելիս, երկեր ընտրելիս, բայց դրանք այնքան բազմազան են ու տարաբնույթ, բազմառճ ու բազմաժանր, տարբեր դարաշրջաններ ու ստեղծագործական ուղղություններ ընդգրկող, որ կարևորվում է ոչ թե նրա նախասիրությունը, այլ ստեղծագործական երևակայության հարստությունը, յուրաքանչյուր երկում որևէ հետաքրքրական ու արժեքավոր բան լսելու, տեսնելու կարողությունը: Այդպես են ծնվում Չեքիջյանի համերգներում իրար «բացառող», մեկը՝ քնարականությամբ կամ ողբերգականությամբ շնչող, մյուսը՝ պատմողական էպիկականությամբ երանգավորված, երրորդը՝ կրակոտ ու հզոր հնչող, հակադրության սկզբունքով իրար հաջորդող երկերը: Սկզբունքը, ընդ որում, գործում է մշտապես. ամենից առաջ՝ երբ մաս-

տրոն կյանք է պարգևում վիթխարի մի երկի (որի նկատմամբ, ի դեպ, տածում է՝ իր մասշտաբային մտածողությունից բխող «թուլություն»): Նման ստեղծագործությունների թիվը բավական մեծ է և կազմված ինչպես ամենուր ու հաճախ կատարվող հայտնի երկերից (Վերդիի, Մոցարտի, Բեռլիոզի «Ռեքվիեմները», Բեթհովենի Իններորդ սիմֆոնիան, Բախի «Լյա մաժոր Մեսսան» և այլն), նույնպես և Չեքիջյանի կողմից Երևանում, հաճախ նաև Սովետական Միությունում առաջին անգամ կատարվող գործերից (Ռոսսինի «Ստաբատ մատեր», Գ. Ֆորե «Ռեքվիեմ», Շուբերտ «Մերիամի հաղթերգը», Գունո «Մահ և կյանք», Բեռլիոզ «Ռոմեո և Ջուլիետ» և այլն): Սկզբունքը գործում է նաև այն դեպքերում, երբ համերգային ծրագրով ունկնդրին ներկայացվում են տարբեր ստեղծագործություններ: Այստեղ կարող է Հենդելի «Մեսիա» օրատորիայի խստաշունչ ֆուգային հաջորդել Գունոյի թեթևասահ վալսը «Ֆաուստ» օպերայից, ոգեշունչ ու կենսահաստատ նեգրական գեղեցիկ սպիրիչուելսին կամ ռուսական հզորությունը խորհրդանշող աշխատանքի հիմն «Էյ ուխնեմ» երգին՝ Շ. Ազնաուրի «Կարողանալ սիրել» հուզաթաթավ երգը, արտասահմանյան դասական երաժշտության փոքրածավալ կտավներին՝ ժամանակակից սովետական երաժշտական գրականության ու Սովետական Միության եղբայր հանրապետությունների ազգային ժողովրդական ու պրոֆեսիոնալ երաժշտության նմուշներ, և այսպես՝ 24 լեզուներով երգվող 700 ստեղծագործություններ, որոնք կազմում են այսօր երգչախմբի ամբողջական երկացանկը:

Հանգույց և հանգուցալուծում, սլացք դեպի գագաթ և վայրէջք, լարվածք և պարպում. Չեքիջյանի համար զարգացման այս հիմնական սկզբունքը կարող է գործել նույնիսկ մի փոքրածավալ երգի սահմաններում: Դժվար է մոռանալ, օրինակ, կոմիտասյան «Հովն անուշ» երգի կատարումը. այն սկիզբ առավ «անցյալից», ապա ընդամենը մի քառյակում զարգացում ապրելով դարձավ «շոշափելի ներկա» և ունկնդրի համար աննկատ սահունությամբ կորավ հեռուներում, դարձավ, կարծեք, հուշ:

Դինամիկ զարգացման, ուժգին և մեղմ հնչողության, իմաստավորված երաժշտական ֆրազների տրամաբանված համադրման կամ հակադրման սկզբունքի օգտագործման, Գ. Էռնեսաքսի արտահայտությամբ՝ «ո՛չ միայն տեքստի, այլև ենթատեքստի, ո՛չ միայն տողերում, այլև տողամիջերում թաքնվածը» երևան բերելու կարողությամբ Չեքիջյանն ստեղծում է վառ պատկերներ, կրքերի բախում, անկրկնելի կերպարներ, որոնք և նրա համերգներից ստացված տպավորությունը դարձնում են անանց:

«Հնչյունները մեկ տարածվում են, մեկ ցրիվ գալիս ինչպես ուլունքներ, ֆրազները մեկ ծայրահեղ զուսպ են, մեկ էլ սկսում են հնչել այնպիսի պլաստիկ ճկունությամբ, որի մասին մենք ոչ մի պատկերացում չունենք Եվրոպայում»,— գրում է Փարիզի «Ֆիգարո» թերթը (1974, 17-ը սեպտեմբերի):

«Խոստովանում եմ, ինձ հաջողվել է ապրածս դարում լսել աշխարհի տարբեր երկրներում բազմաթիվ երգչախմբերի, բայց հայկական կապելլան՝ Չեքիջյանի փայլուն մեկնաբանություններով, ինձ ներկայանում է որպես նրանցից լավագույնը, ինքնօրինակը և նուրբը, նվագախմբային սիմֆոնիզմին մոտեցողը: Ամբողջ երեկոյի ընթացքում կարելի է նրան լսել առանց հոգնելու. այդ աստիճան խորթ են նրան միօրինակությունն ու սովորական երգչախմբային ավանդականությունը»,— գրել է Մարիետա Շահինյանը:

«...Չեքիջյանի ղեկավարած կապելլայի արվեստն այնպես անօրինակ է, որ այս ասպարեզում շփոթել այն ինչ-որ մեկի հետ՝ անհնար է»,— հայտարարել է ՍՍՀՄ ժողովրդական արտիստ, դիրիժոր Նաթան Ռախլինը երգչախմբի 1000-րդ համերգի օրը՝ 1971 թ. հոկտեմբերի 24-ին:

Կատարվող երկի առաջին վերապրողն ինքն է՝ մեծ խմբավարը: Դրանով է նա կարողանում իր հույզերի ներաշխարհն ընդգրկել ունկնդրին՝ անկախ ազգությունից ու սեռից, տարիքից ու կրթությունից...

Առանձին վերաբերմունք ունի Հովհաննես Չեքիջյանն ազգային երաժշտության պրոպագանդման նկատմամբ: Նախ՝ հայ ազգային երաժշտության նմուշներն իրենց արժանի տեղն ունեն նրա համերգային բոլոր ծրագրերում, ընդ որում սկսած դասականներից՝ Կարա-Մուրզայից ու Եկմալյանից մինչև ժամանակակից կոմպոզիտորներ Ա. Բաբաջանյանի, Է. Հովհաննիսյանի և ուրիշների ստեղծագործությունները, ապա ձգտում է, և դա հաջողվում է նրան, ազգայինը դիտել լայն շրջանակներում, բեմ հանել այն նույնպիսի չափանիշներով, որպիսիք ցուցաբերվում են համաշխարհային երաժշտական մշակույթի հուշարձանները մեկնաբանելիս, երևան բերել ազգի աշխարհընկալման այն խորքը, արվեստի կատարելության այն աստիճանը, որը հավաստում է հայ ժողովրդի հզոր դարավոր հարստության արմատները: Եվ ոչ մի զիջում գավառայնությանը:

Հարազատ ժողովրդի հուզաշխարհից բխող զգացմունքների ազնվությամբ ու արտահայտության ողջախոհությամբ, հոգեկան ելևէջների հարստությամբ ու խորախորհուրդ նրբությամբ, այդ ամենից բխող լեզվաոճական ինքնուրույն մտածողությամբ ազգային երաժշտության նմուշներն իբրև հայտնություն ապշեցնում են օտարին: Հատկապես արտակարգ ընդունելության են արժանանում կոմիտասյան խմբերգերը: Դրանք պոլիֆոնիկ բազմաձայնության սկզբունքներով հայ ժողովրդական երգերի մշակումներ են՝ հասցված ինքնուրույն հորինումների, որոնք կատարելիս Չեքիջյանը կշիռ է տալիս ո՛չ միայն իրենց զարգացման մեջ կատարելապես հղկված ամեն մի ձայնի, այլև ամեն մի հնչյունի:

Թերևս տեղին է պատմել տողերիս հեղինակի հետ պատահած մի իրական դեպք՝ կապված կոմիտասյան երկերի ունեցած արտակարգ ներգործության հետ. երեք տասնյակ տարիների ստեղծագործական ու բարեկամական կապերի մեջ ենք երաժշտագետ, արվեստի վաստակավոր գործիչ Ռ. Վ. Գլեզերի հետ, որն ապրում և աշխատում է Մոսկվայում: Հերթական հեռախոսազանգերից մեկի ժամանակ նա խիստ ոգևորված էր Հայաստանի երգչախմբի համերգից ստացած տպավորությունից: Իմ զանգը ճիշտ ժամանակին էր՝ «կիսվելու» համար: «Գիտես,— ասաց նա,— մի շաբաթ առաջ ես, և շատերն ինձ հետ, նույնպիսի բարձր տրամադրության մեջ էինք, երբ լսում էինք Սվեշնիկովին. նա ղեկավարում էր Վերդիի «Ռեքվիեմը»: Այսօր ձեր Չեքիջյանը Գաբրիել Ֆորեի «Ռեքվիեմի» իր կատարումով մեզ մոռացնել տվեց թե՛ Վերդիին և թե Սվեշնիկովին: Բայց երբ համերգի երկրորդ բաժնում նա կատարեց Կոմիտաս, մենք անմիջապես մոռացանք Ֆորեին: Ասաց ու ծիծաղեց, թե՝ տեսնում ես ինչ մեծությունների հետ ենք «խաղ անում»...»:

Իմ բարեկամը հաղորդվել էր Չեքիջյանի արվեստի բուն էությանը, որի հիմքով, ինչպես ՍՍՀՄ ժողովրդական արտիստ, դիրիժոր Եվգենի Մռավինսկին է ասում՝ «պրոֆեսիոնալ երաժիշտն էլ ակամա դառնում է սովորական խանդավառ ունկնդիր և երջանիկ զգում իրեն գերագույն հաճույք ապրելու համար»:

«Ջավարածեծ», «Գութանի երգը», «Սոնա յար», «Գարուն ա» և հայ ժողովրդական գողտրիկ երգերի հիմքով կոմիտասյան բազմաթիվ հորինումները չեքիջյանական կատարումով դեպի օտար սրտերն անցնում են ավելի քան հարթ ու հանգիստ ճանապարհներով, որովհետև շեշտը դրվում է ոգու հաղորդակցման, երաժշտության ու երաժշտականության վրա: Ազգային երկացանկով Չեքիջյանն այլազգիներին ներկայացնում է նախ՝ հայ դարավոր մշակույթի ու ստեղծագործության ինքնությունը, ապա՝ հայ կատարողական արվեստի բարձր մակարդակն ու վարպետությունը, ինչպես նաև շարունակում մեծն Կոմիտասի առաքելությունը, այն է՝ հայ երգը հնչեցնել աշխարհե աշխարհ՝ ի ճանաչումն բոլորի: Այո՛, դեռ այսօր էլ շատերի համար հայ երգն ու նաև դրա օգնությամբ մեր Հայաստան երկիրը հայտնություն են: Այս առաքելության կատարմանը նվիրվել են անցյալի համարյա բոլոր խմբավարները— Կարա-Մուրզա, Կոմիտաս, Ռոմանոս Մելիքյան, Թաթուլ Ալթունյան, Արամ Տեր-Հովհաննիսյան: Սովետահայ երգչախմբի տարեգրության մեջ իրենց հաստատուն տեղն ունեն վերջին երկուսը. Ալթունյանն այս կոլեկտիվի հիմնադիրն է (1937), իսկ Տեր-Հովհաննիսյանի անվան հետ կապվում են նրա զարգացման ամենաբուռն տարիները: Չեքիջյանն այն արվեստագետն է, որը Ա. Տեր-Հովհաննիսյանից հետո երգչախումբը հասցրեց նորանոր բարձունքների, նոր կյանք ու փառահեղ անուն պարգևեց նրան, ինքն էլ հայրենիքում տված առաջին իսկ համերգի օրվանից (1961 թ. նոյեմբերի 27) դարձավ այդ կապելլայի անփոփոխ գեղարվեստական ղեկավարը, սովետական երաժշտական մշակույթի անվանի գործիչը՝ մեր երկրի համար իր աշխատանքով վաստակած բոլոր բարձր տիտղոսներով՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ՍՍՀՄ և ՀՍՍՀ ժողովրդական արտիստ, ՍՍՀՄ և ՀՍՍՀ պետական մրցանակների դափնեկիր...

«Մեծ երջանկություն է ապրել հայրենի երկրում,— ասաց Հովհաննես Չեքիջյանը ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված ՍՍՀՄ և ՌՍՖՍՀ ստեղծագործական միությունների ու կազմակերպությունների միացյալ պլենումում,— երկիր, ուր անսահման բարձր է գնահատվում արվեստը, ուր կուսակցությունն ու կառավարությունն այնպես հոգատար, ուշադիր են արվեստագետների նկատմամբ: Կարո՞ղ էի արդյոք այնտեղ՝ օտարության մեջ երազել անգամ իմ համեստ աշխատանքի նման բարձր գնահատման մասին...

...Մենք հպարտ ենք կոմունիստական շինարարության գործին մեր մասնակցությամբ, նրանով, որ ծառայում ենք արվեստին, սովետների երկրի ժողովրդին»:

Յուրատեսակ լիցք է Չեքիջյանի համար ստեղծագործական աշխատանքի զուգորդումը երաժշտական-հասարակական լայն գործունեության հետ: Նրա ակտիվ խառնվածքի բազմազան դրսևորումները ստեղծում են այն «խճանկարը», որն ամբողջացնում է մաեստրոյի ստեղծագործական դիմանկարը: «Խճանկարի» կենտրոնում է մանկավարժ Չեքիջյանը: Մանկավարժական գործունեությամբ

Հ. Չեքիջյանն սկսել է զբաղվել Ռ. Մելիքյանի անվան երաժշտական ուսումնարանում 1962 թվականից: Այժմ նա Երևանի Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայի պրոֆեսոր է:

Փորձառու երաժիշտը չի զլանում հաղորդել իր վարպետության գաղտնիքները յուր սաներին: Կոնսերվատորիայում աշխատած վեց տարիների ընթացքում Հ. Չեքիջյանը տվել մի շարք շրջանավարտներ, որոնք որպես խըմբավարներ այսօր աշխատում են երաժշտական և ուսումնական տարբեր հաստատություններում: Նրանք հպարտորեն են արտասանում իրենց ուսուցչի անունը: Դա արժե շեշտել: Այն հարցին, թե «ովքե՞ր են նրա աշակերտները», մեծահամբավ ռեժիսոր Գ. Տովստոնոգովը պատասխանել է. «Ես կարող եմ ասել, թե ովքեր են իմ ուսուցիչները... Բայց չեմ կարող ասել, թե ովքեր են իմ աշակերտները: Այդ նրանք պետք է ինձ ընդունեն իբրև իրենց ուսուցիչ»:

Դասավանդման մեթոդիկան՝ մանկավարժության այդ կարևոր միջոցը, ավելի քան անհատական է. յուրաքանչյուրի մոտ գործում է իր սեփականը: Եվ, եթե Հ. Չեքիջյանին հաջողվել է Գ. Ֆորեի «Ռեքվիեմը» երգչախմբում յուրացնել ընդամենը մեկ ամսում, կամ եթե մաեստրոն կարողանում է իր արվեստի բնորոշ գծերը հիմնավոր ձևով փոխանցել իր իսկ աշակերտներին, ապա կնշանակի գործում է նրա ինքնատիպ մեթոդիկան, և այն արժանի է հատուկ ուսումնասիրության:

Խմբավարական արվեստի գաղտնիքների հետ մեկտեղ Հովհաննես Չեքիջյանն ուսանողների հոգում դաստիարակում է ճաշակ, ստեղծագործական նախաձեռնություն, պատկերավոր մտածողություն, նուրբ երաժշտականություն, հայրենասիրության հետ մեկտեղ՝ մասշտաբային մտածողություն և աշխարհընկալման լայնություն, կարողանում է նրանց առաջադրել ստեղծագործական բարդ խնդիրներ, սեր արթնացնել համամարդկային երաժշտական արվեստի և, իհարկե, հայ ազգային երաժըշտական գրականության նկատմամբ:

Այս ամենը նա անում է մեծ պահանջկոտությամբ, իսկ որ կարևորն է, այն բանի գիտակցմամբ, որի մասին դիպուկ գրել է Կոմիտասը. «Երգեցողությունը սրտին հետ կապ ունի, որ ուղղակի հոգին կերթա: Ուսուցիչ պարոններ ու քույրեր, զգուշությամբ և երկյուղածությամբ մոտեցեք դաստիարակության գործին: Խիստ փափուկ պաշտոն մըն է ձերը: Դաստիարակելու կոչված եք սերունդ մը, որ ապագա ազգն է...»:

Արդյունքի հասնելու համար Հովհաննես Չեքիջյանը բարձրության վրա է այս բարդ գործի բոլոր օղակներում— ընդունելության քննական հանձնաժողովի նախագահի պարտականությունները կատարելիս, դասարանում, ուսանողների կատարողական պրակտիկան Ակադեմիական կապելլայում անցկացնելիս և այլուր: Խմբավարությունն ու մանկավարժությունը հանձին Չեքիջյանի սերտորեն կապված են իրար. նա մանկավարժ է խմբավարելիս և խմբավար՝ մանկավարժելիս:

«Խճանկարը» կամբողջանա, եթե նշենք, որ Չեքիջյանը մասնակից է բազմաթիվ փառատոների, որ, իր համերգներին մասնակից դարձնելով մեր Միության տարբեր հանրապետությունների ու արտասահմանյան երկրների կատարողական ուժերին, ամրապնդում է բարեկամական կապերը, դառնում խաղաղության ու ժողովուրդների բարեկամության մունետիկ, որ ըստ արժանվույն գնահատում է գրավոր պրոպագանդայի ուժը՝ թողարկելով ձայնապնակներ (դրանցից մեկը՝ «Հայաստանի երգեր» վերնագրով, 1970-ին արժանացել է Փարիզում Մեծ մրցանակի) կամ թղթակցելով հանրապետական ու համամիութենական թերթերին ու ամսագրերին, որ սատարում է երիտասարդ կատարողների աճին՝ տրամադրելով նրանց մեներգիչների դերերգեր, տնօրենն է, իր արտահայտությամբ, «ամենայն հայոց օպերային թատրոնի» և, որպես այդպիսին, ձգտում է թատրոնի ստեղծագործական կյանքը դնել ավանդույթների պահպանումը նորարարությանը սինթեզելու հունի մեջ, որ մշտապես պատշաճ բարձրության վրա է պահում ազնիվ և դասական երաժշտության հեղինակությունը և, վերջապես, պատմությանը թողնում է Հայաստանի պետական ակադեմիական վաստակավոր կոլեկտիվ կապելլայի ստեղծագործական կյանքի հարուստ արխիվը՝ նախանձելի կանոնավորությամբ, որը մեծ կուլտուրայի արտահայտություն է: Հիրավի, դժվար է տալ Հովհաննես Չեքիջյանի ամբողջական դիմանկարը, արվեստագետ, որ անդուլ որոնումների ու պրպտումների մեջ է՝ գործունեության լայն շրջանակներ ընդգրկող ոլորտներում:

Երիցս իրավացի է Արամ Խաչատրյանը. «Հայաստանի պետական երգչախումբը կարելի է համերգների ուղարկել ուզածդ երկիրը: Նա հպարտորեն կտանի սովետական մշակույթի դրոշը»:

**ՄԱՐԳԱՐԻՏ ԲՐՈՒՏՅԱՆ**
**պրոֆեսոր**

# ԳԼԽԱՎՈՐ ԹԵՄԱՆ

ՍՍՀՄ ՊԱՐԵՆԱՅԻՆ ծրագրի կատարման, կուսակցության առաջադրած խնդիրների հաջող իրականացման ասպարեզում մեծ ու կարևոր պահանջներ են ներկայացվում նաև շըրջանային մամուլին, որի խնդիրն է հետևողականորեն պրոպագանդել ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և նոյեմբերյան, ՀԿԿ Կենտկոմի հունիսյան և դեկտեմբերյան պլենումների որոշումները, ցույց տալ, թե որքան կարևոր է պարենային ծրագրի իրականացումը: Լրագրերը պետք է խորապես ու նպատակասլաց լուսաբանեն կոլեկտիվ ու պետական տնտեսությունների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ձեռնարկությունների առօրյան, օգնեն նրանց կուսկազմակերպություններին՝ ակտիվ կազմակերպչական, գաղափարադաստիարակչական աշխատանք ծավալելու աշխատավորների շրջանում: Անհրաժեշտ է, որ լրագրերն ավելի ակտիվորեն նպաստեն արտադրության ներքին ռեզերվների ու հնարավորությունների հայտնաբերմանը, ընդհանրացնեն ու տարածեն առաջավոր փորձը, պաշտպանեն օգտակար նախաձեռնությունները, ցույց տան հաջողության հասնելու ուղիները:

Շատ կարևոր է, որ լրագրերում ինչպես հարկն է արտացոլվեն նաև գյուղում կատարված սոցիալական վերափոխումները, խորապես վերլուծվեն բնակչության բնակարանային-կենցաղային և սոցիալ-կուլտուրական պայմանների բարելավման հարցերը, որոնք սերտորեն առնչվում են պարենային ծրագրի կենսագործման հետ:

Այդ խնդիրների համակողմանի լուսաբանումը, կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների գործունեության մեջ տեղ գտած թերությունների ու թերացումների բացահայտումը շրջանային լրագրերի հրատապ խնդիրն է: Այս առնչությամբ անդրադառնանք դրանցից մի քանիսին:

«ԳԱՐՈՒՆ»

Ղուկասյանի շրջանում անասնապահությունը արտադրության գլխավոր ճյուղն է և հետևողական աշխատանք է տարվում դրա բարձր արդյունավետության ապահովման, կուսակցության ագրարային քաղաքականության կենսագործման նպատակով: Այստեղ ստեղծվել են միջտնտեսային յոթ ձեռնարկություն, որոնք նպաստել են անասնապահության ինտենսիվ զարգացմանը, հնարավորություն ընձեռել, որպեսզի պետական տնտեսությունները միաժամանակ մասնագիտանան կաթի արտադրության ասպարեզում:

Ջեռնամուխ լինելով ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների կատարմանը՝ շրջանի գյուղատնտեսության աշխատողները սոցիալիստական մրցություն են ծավալել մըթերքների արտադրության հնգամյա պլանը չորս տարում կատարելու, պարենային ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար:

Այդ կարևորագույն հարցերի լուսաբանումն է «Գարուն» շրջանային լրագրի ուշադրության կենտրոնում: Նրա էջերից չեն իջնում **ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումները գործողության մեջ, Կենսագործում ենք ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումները, Պարենային ծրագիրը համաժողովրդական գործ է, Բոլոր ուժերը պարենային ծրագրի իրականացմանը** և այլ մըշտական խորագրերը: Լրագրի հրապարակումներում սկզբնական կուսկազմակերպությունների, գյուղական սովետների, բոլոր աշխատավորների ուշադրությունը բևեռվում է պարենային պրոբլեմի լուծման, սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման, աշխատանքի որակի և արտադրության արդյունավետության բարձրացման վրա: Այդ առումով հետաքրքրական են շրջանի խոշոր գյուղերից մեկի՝ Ղազանչիի պետտնտեսության կոլեկտիվի աշխատանքին նվիրված նյութերը: Տնտեսության դիրեկտոր Ջ. Մուրադյանի և մյուս հեղինակների հոդվածներից ու թղթակցություններից տեղեկանում ենք, որ այստեղ շահագործման է հանձնըվել անասնապահական խոշոր, մեքենայացված համալիրը: Հանրային հոտը համալրվում է Սմոլենսկի մարզից, Լիտվայից և Բելոռու-

սիայից բերված բարձր մթերատու տոհմային կովերով: Համալիրն ապահովված է համապատասխան կադրերով՝ կթվոր օպերատորներով, փորձառու անասնապահներով: Առաջին արդյունքներն ակնհայտ են: Խրախուսելի է Գ. Մխիթարյանի ղեկավարած բրիգադի կատարած աշխատանքը: Կթվորուհի Մ. Մուրադյանը վեց ամսվա 221 ցենտներ կաթի արտադրության պլանը գերազանցել է 31 ցենտներով: Այդպիսի արդյունքի են հասել նաև Ք. Ղալաչյանը և մյուսները:

Սիզավետի տնտեսության երեքհազարական կթվորուհի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ամալյա Պողոսյանը **Արժանավայել գործերով** վերնագրով թղթակցությունում գրում է, որ ի պատասխան ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների, ֆերմայում նորովի է ծավալվել սոցիալիստական մրցությունը:

«Գարունում» հրապարակված նյութերում կոնկրետ կերպով ցույց են տրվում տնտեսություններում և միջտնտեսային ձեռնարկություններում եղած այն ռեզերվներն ու հնարավորությունները, որոնց արդյունավետ օգտագործումը կարևոր երաշխիք է պարենային ծրագրի իրականացման գործում: Անդրադառնալով այդ հարցին՝ լրագիրը տպագրել է Ջրաշենի պետտնտեսության դիրեկտոր Հ. Ծաբոյանի **Ռեզերվներ էլի կան** հոդվածը: Հեղինակը պատմում է, թե կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական իրականացումն ինչպիսի էական տեղաշարժեր է առաջացրել տնտեսությունում, ինչպես են կարողացել նախորդ տարիների համեմատ դրամական եկամուտներն ավելացնել 318 հազար ռուբլով: Նշելով հաջողությունները՝ հոդվածագիրը գրում է, որ իրենց մոտ դեռևս լրիվ չեն օգտագործվում եղած հնարավորությունները. ֆերմայում այնքան էլ բարեհաջող չէ սեփական հոտի վերարտադրությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումներում կուսակցական, սովետական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացվեց ագրոարդյունաբերական կոմպլեքսի ձեռնարկությունների բարձր արդյունավետության ապահովման վրա: Լրագրի խմբագրությունը, ճիշտ ըմբռնելով այդ խնդրի կարևորությունը, հաճախակի անդրադառնում է միջտնտեսային ձեռնարկությունների աշխատանքի և սոցպարտավորությունների կատարման ընթացքի լուսաբանմանը, դրվատում առաջավոր կոլեկտիվների լավ գործերն ու ընդհանրացնում նրանց աշխատանքի փորձը:

Այդ կարևորագույն հարցը համակողմանի լուսաբանված է կուսշրջկոմի առաջին քարտուղար Շ. Ալեքսանյանի **Առաջընթացի գործնական քայլերը** ծավալուն հոդվածում: Հեղինակը ցույց է տալիս, որ միջտնտեսային ձեռնարկություններն ակտիվ մասնակցում են մսի արտադրության ավելացման գործին: Այդ առումով ուսանելի է մասնավորապես Փոքր Սեպասարի արու մատղաշի աճեցման ու բտման միջտնտեսային ձեռնարկության փորձը: Այստեղ պահվում է 2.500 գլուխ անասուն: Այժմ կառուցվում է 5.000 տեղանոց նոր համալիր, այն շահագործման հանձնվելուց հետո տարեկան կարտադրի 15—16 հազար ցենտներ միս:

Անասնապահական մթերքների արտադրության ավելացումը հիմնականում պայմանավորված է բազմապիսի և բարձրորակ կերի առկայությամբ: Ահա թե ինչու լրագիրը հատուկ ուշադրություն է նվիրում դաշտային կերարտադրության հարցերի խոր ու նպատակային լուսաբանմանը: Լրագրի առանձին հոդվածներում քննադատական խոսք է ասվել Ջույգաղբյուրի, Մեծ Սեպասարի և Ղուկասյանի տնտեսությունների հասցեին, որտեղ հարկ եղած ուշադրությունը չի նվիրվում սպիտակուցներով հարուստ կերային կուլտուրաների արմատավորմանը:

Կոլեկտիվ ու պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությամբ են պայմանավորված առողջ մթնոլորտը կոլեկտիվներում, կազմակերպվածության ու կարգապահության մակարդակը, աշխատանքային հատույցը, ուրեմն և՝ վերջնական արդյունքը: Այդ կարևոր հարցին են նվիրվում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների, առանձին կոմունիստների բովանդակալից հոդվածները:

1982 թ. հուլիսի 17-ի համարում տպագրված հոդվածում Մուսայելյանի պետտնտեսության կուսբյուրոյի քարտուղար Հ. Գրիգորյանը կոնկրետ փաստերով տեղեկացնում է, թե իրենց մոտ ինչ է արվում մարդկանց հետ տարվող աշխատանքները բարելավելու, ընդհանուր գործին նրանց ակտիվ մասնակցությունն ապահովելու համար: Հեղինակը գրում է. 105 կոմունիստներ ու անկուսակցական ակտիվիստներ ընդգրկվել են կուսակցական ուսուցման ցանցում, իսկ բոլոր կթվոր-անասնապահները՝ կոմունիստական աշխատանքի դպրոցներում: Բրիգադներում ու ֆերմաներում քաղաքական աշխատանք են ծավալում 12 ագիտատորներ ու քաղինֆորմատորներ:

Մի այլ համարում «Գարունը» տպագրել է Սարիարի պետտնտեսության կուսկոմիտեի քարտուղար Հ. Պետրոսյանի թղթակցությունը, ուր խոսվում է այն մասին, թե կուսկազմակերպությունը, նրա ստորին օղակներն ինչպես են զբաղվում աշխատավորների քաղաքական գիտելիքների հարստացմամբ, ագիտացիոն-մասսայական աշխատանքների կազմակերպմամբ:

Սակայն հարկ է նշել, որ «Գարուն» լրագրում դեռևս անբավարար են լուսաբանվում գյուղատնտեսական տեխնիկայի պահպանության, դաշտերի քիմիացման, հացահատիկային և կերային կուլտուրաների բերքատվության բարձրացման հարցերը: Սիստեմատիկաբար նյութեր չեն հրապարակվում այն մասին, թե տնտեսություններում ինչպես է կազմակերպվում գյուղատնտեսական մեքենաների տեխնիկական խնամքը, ինչ է արվում դրանց բարձրարտադրողական աշխատանքն ապահովելու համար:

Թերթելով անցած 5—6 ամիսներում լույս տեսած «Գարունի» համարները, ընթերցողը չի կարող քիչ թե շատ պատկերացում կազմել այն մասին, թե ինչպես են աշխատում շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունները: Անհրաժեշտ է, որ «Գարունը» ավելի հետևողական լինի իր սկսած լավ գործում, ավելի խորությամբ պրոպագանդի առաջավորների փորձն ու գիտության նվաճումները, աշխատանքի կազմակերպման արդյունավետ ձևերն ու մեթոդները և, որ շատ կարևոր է, հետևի իր բարձրացրած խնդիրների լուծման ընթացքին:

### «ԼՈՌԻ»

Թումանյանի շրջանային «Լոռի» լրագիրն իր էջերում բարձրացնում է գյուղատնտեսության հետագա զարգացմանը վերաբերող կարևոր հարցեր, հրապարակելով արտադրության կազմակերպիչների, կուսակցական, սովետական ղեկավար աշխատողների հետաքրքրական, բովանդակալից հոդվածներ ու թղթակցություններ: Դրանցում բացահայտվում, դրվատվում են հանրային արտադրության տարբեր բնագավառներում դրսևորվող արժեքավորն ու առաջավորը: Լրագիրն ընթերցողներին շարունակ հիշեցնում է, որ պարենային ծրագրի հաջող իրականացման համար հարկավոր է համառ ու հետևողական աշխատանք, պետական տնտեսությունների աշխատողների ուժերի մոբիլիզացում, հանրային գործի նկատմամբ բարեխիղճ ու ազնիվ վերաբերմունք:

**Հետագա առաջընթացի ակնկալիքով** հոդվածում Ծաթեր գյուղի պետտնտեսության դիրեկտոր Ռ. Ղալայանը ցույց է տալիս, թե գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար որքան մեծ նշանակություն ունեն շրջանացված բարձր բերքատու սորտերի արմատավորումը, հանքային ու օրգանական պարարտանյութերի ճիշտ օգտագործումը:

Մի շարք հոդվածներում «Լոռին» անդրադարձել է այգեգործության ինտենսիվ զարգացման հարցերին: Շնողի պետական տնտեսության դիրեկտոր Հ. Սահակյանը ընդարձակ հոդվածում գրում է, որ, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի պլենումների պահանջներից, միջոցներ են իրականացվում ինտենսիվ այգիներ հիմնելու նպատակով: Այդ հնարավորություն կընձեռի տասնմեկերորդ հնգամյակում պտղի արտադրությունը հասցնելու 3.500—4.000, իսկ տասներկուերորդում՝ 10 հազար տոննայի: Հոդվածից միաժամանակ տեղեկանում ենք, որ տնտեսությունում գործնական քայլեր են արվում անասնապահության ինտենսիվ զարգացումն ու բարձր մթերատվությունն ապահովելու համար:

Շրջանի էկոնոմիկայում մեծ է այգեգործության տեսակարար կշիռը. եկամուտների զգալի մասն ստացվում է այդ ճյուղից: Լրագրում լայնորեն լուսաբանվում են այգեգործության զարգացման հարցերը, հանդես են գալիս այգեգործներ, տնտեսությունների ղեկավարներ...

**ՍՍՀՄ պարենային ծրագիրը համաժողովրդական գործ է** ընդհանուր խորագրի տակ ծավալուն հոդված է նվիրվել Ծոճկանի պետտնտեսության կուսակցական կազմակերպության ժողովին: Կոմունիստները, քննարկելով իրենց խնդիրները ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների կենսագործման ասպարեզում, հանրագումարի են բերել հասումները, միաժամանակ նշել թերացումներն ու առաջիկա անելիքները: **Ուղին ինտենսիվացումն է** հոդվածում Շ. Ամիրջանյանը գրում է, որ տնտեսությունում դեռևս ամբողջովին կյանքի չեն կոչվում պտղի արտադրության ռեզերվները: Անհրաժեշտ է սևեռուն ուշադրություն նվիրել այգիների վերակառուցմանը, ստեղծել ինտենսիվ այգիներ, ունենալ տնկարանային տնտեսություն, վերացնել պտղատու և խաղողի այգիների նոսրությունը: Տնտեսությունում օրակարգի հարց է դարձել նաև ոռոգման ներքին ցանցի կառուցման անհրաժեշտությունը, որով հնարավորություն կընձեռվի կանխելու ջրի կորուստները: **Բնագիծը՝ 57 միլիոն տուփ** ծավալուն հոդվածում Հ. Նազարեթյանը գրում է, որ այդ բնագիծը նվաճելու համար կուժողովը հարց է բարձրացրել համապատասխան կազմակերպությունների առջև՝ Ախթալայի պահածոների գործարանը հասցնել նախագծային կարողության, կատարելագործել տեխնոլոգիան, մեքենայացնել հումքի ու պատրաստի արտադրանքի բեռնաթափման, բարձման, ներգործարանային փոխադրումների աշխատանքները:

«Լոռին» հաճախ է արծարծում անասնապահության զարգացման հարցերը, ներկայացնում Աթանի, Օձունի, Արևածագի, Ճոճկանի ֆերմաների աշխատողների սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, մասսայականացնում առաջավորների փորձը:

Թերթն անդրադառնում է նաև տնտեսություններում առկա թերություններին ու վրիպումներին: Ահա, օրինակ, **Սայլը տեղից կըշարժվի, եթե...** թղթակցությունը Մղարթ գյուղի պետտնտեսության մասին: Հանգամանորեն արծարծվում է այն հարցը, թե ինչու է տնտեսությունը վնասով աշխատում, հետևողական պայքար չի տարվում հողերի բերքատվությունն ու անասունների մթերատվությունը բարձրացնելու համար:

Ջերմորեն պաշտպանելով օժանդակ տնտեսությունները զարգացնելու, գյուղին շեֆական օգնությունն ուժեղացնելու երկրի առաջավոր ձեռնարկությունների հայրենասիրական նախաձեռնությունը, Ալավերդու Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր լեռնամետալուրգիական կոմբինատում զգալի աշխատանք է ծավալվել օժանդակ տնտեսություն ստեղծելու, բանվորներին թարմ բանջարեղենով ապահովելու նպատակով:

Խմբագրությունը մեծ ուշադրություն է նվիրում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը, ժողովուրդների լենինյան բարեկամության ու համագործակցության ամրապնդմանը: **Եղբայրական հանրապետությունների միասնական ընտանիքում** ընդհանուր խորագրի տակ թեմատիկ էջեր են նվիրվել միութենական հանրապետություններին: Երկար տարիներ է, ինչ Թումանյանի և եղբայրական Վրաստանի Ջեստաֆոնիի շրջանների աշխատավորները մրցում են միմյանց հետ: Լրագրում պարբերաբար լուսաբանվում է մրցության ընթացքը:

ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի առթիվ «Լոռին» համար է նվիրել Ջեստաֆոնիի շրջանին: Հրապարակվել է ֆերրոձուլվածքների գործարանի հերթափոխի վարպետ, սոցիալիստական աշխատանքի հերոս Գ. Նանիլաշվիլու բաց նամակը՝ ուղղված Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի ավագ ձուլող, սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Ղազարյանին:

**Օրինակելի գերդաստանը** հոդվածում Գ. Աբաշիձեն պատմում է Գաբրիելիձեների մեծ գերդաստանի, նրա հարուստ ու բովանդակալից կյանքի մասին: Լրագրող Ս. Փոցխերաշվիլին իր հոդվածում ներկայացրել է Ջեստաֆոնիի արվարձանը՝ Նոր Կվալիտին, որն ըստեղծվել է ամայի տարածության վրա և հետըզհետե բարեփոխվում, գեղեցկանում է:

Ջեստաֆոնիի շրջանային լրագիրը ևս թեմատիկ բաժիններ է նվիրել Թումանյանի շրջանին:

Մի քանի դիտողություններ. «Լոռիի» էջերում սակավ ենք հանդիպում այնպիսի հոդվածների, որոնցում խորապես վերլուծվի տնտեսությունների արտադրական գործունեությունը, ցույց տրվի, թե ինչ է արվում արտադրության բոլոր նյուղերի արդյունավետությունն ու շահութաբերությունը բարձրացնելու համար: Գյուղատնտեսության աշխատողներն իրենց նյութերում պատմում են աշխատանքի նոր մեթոդների, արտադրության կազմակերպման ու կառավարման կատարելագործված ձևերի մասին, բայց միշտ չէ, որ դրանք տարածվում են մյուս տնտեսություններում: Ցավոք, առաջավոր փորձին նվիրված նյութերում երբեմն իշխում է մակերեսայնությունը և ընդհանուր դատողությունների տակ կորչում է ուսանելի փորձը:

«ԱՅԳԱԲԱՑ»

Խաղողագործությունը դարձել է Շամշադինի շրջանի գյուղատնտեսական արտադրության առաջատար ու եկամտաբեր նյուղերից մեկը: Տասներորդ հնգամյակում պլանով նախատեսված 43 հազարի փոխարեն կոլեկտիվ ու պետական տնտեսություններում արտադրըվել է 47.500 տոննա խաղող: Արդյունքներն ավելի ակնհայտ էին 1980 թվականին, խաղողի մթերման առաջադրանքը 173 տոկոսով կատարելու համար խաղողագործները հաղթող ճանաչվեցին սոցիալիստական մրցության մեջ և արժանացան ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին: Ընթացիկ հնգամյակի մեկնարկային տարում կոլեկտիվ ու պետական տնտեսությունները պետությանը վաճառեցին 11.300 տոննա խաղող:

Ինչպե՞ս են ձեռք բերվել այդ նվաճումները: Այդ հարցին են պատասխանում շրջանային «Այգաբաց» լրագրում հրապարակված բազմաթիվ նյութեր:

Ուշագրավ են **Խաղողի բարձր բերքի համար, Այգիների մշակության աշխատանքների մեքենայացումը, Վերացնել նոսրությունը, հեկտարը դարձնել լիարժեք** հոդվածները:

Բարձր ու կայուն բերքի ապահովմանը մեծապես նպաստում են առաջավոր փորձի ուսումնասիրումն ու կիրառումը: «Այգաբացը» զգալի տեղ է հատկացնում այդ հարցերին, մշտապես պրոպագանդելով առանձին տնտեսությունների ու խաղողագործների աշխատանքի ուսանելի փորձը և նախաձեռնությունը:



Նվաճումներն առանձնապես ակնհայտ են Պառավաքարի՝ շրջանի խաղողագործական ամենախոշոր պետտնտեսությունում:

**Համաժողովրդական գործին ամենայն պատասխանատվություն** հոդվածում պետտնտեսության դիրեկտոր Ն. Միրզոյանը կոնկրետ փաստերով ցույց է տվել, թե իրենք ինչպես են կենսագործում ՀԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրը ինտենսիվ այգեգործության զարգացումն ապահովելու վերաբերյալ. Հախումի ջրամբարի գործարկումով հիմնվելու են նոր այգիներ: Դրանք հնարավորություն կընձեռեն հնգամյակի վերջում պտղի արտադրությունն ավելացնել 900, խաղողինը՝ 560 տոննայով:

Այգեգործ Ռ. Վանեսյանն իր հոդվածում գրում է, որ Մովսես գյուղի կոլտնտեսականները որոշել են առավել արդյունավետ օգտագործել ներքին ռեզերվները, վերացնել այգիների նոսրությունը, ծերացած վազերը փոխարինել նոր սորտերով և ապահովել հեկտարից 200 ցենտներ խաղող:

Այգեգործության ինտենսիվ զարգացմանը գործուն օգնություն է ցույց տալիս գյուղատնտեսական կուլտուրաների սորտափորձարկման շրջանային փորձադաշտը, որը հետաքըրքրական գիտափորձեր է կատարում 120 հեկտարի վրա: Ընթերցողը տեղեկանում է, որ այստեղ փորձարկվում են խաղողի ու պտղի 267 նոր սորտեր, որոնց մի մասն արդեն ներդրվում է արտադրության մեջ: Անվանի գիտնական Ս. Պողոսյանի ստեղծած խաղողի կարմրահյութ սորտը Շամշադինի պայմաններում հեկտարից ապահովում է 220—250 ցենտներ բերք: Այդ սորտն արմատավորվում է Այգեձորի, Թովուզի, Մովսեսի և Վարագավանի տնտեսություններում: Փորձարկվում են դեղձի 35 սորտեր:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումներից հետո «Այգաբացն» սկսել է ավելի խոր լուսաբանել անասնապահության զարգացման, դրա արդյունավետության բարձրացման հարցերը: Բերդ գյուղի պետական տնտեսության դիրեկտոր Խ. Թումանյանը **Որոշակի և հստակ ծրագիր** վերնագրով հոդվածում ընթերցողներին տեղեկացնում է, թե ինչպես են կենսագործում կուսակցության ագրարային քաղաքականությունը: Քիչ բան չի արված, բայց չօգտագործված ռեզերվներ դեռ շատ կան:

Հետաքրքրությամբ է ընթերցվում Ս. Ասլիբեկյանի և Ա. Խոջոյանի **Նրանց մասին, ովքեր հերոսանում են սարերում** ակնարկաշարը: Ուշագրավ է գյուղի զարգացման, պարենային ծրագրի կենսագործման, առկա դժվարությունների ու թերությունների հաղթահարման ուղիների քննարկմանը նվիրված **«Այգաբացի» կլոր սեղանի շուրջը** էջը, որը կրում է **Մեծ խնդիրների կատարումը մեծ ջանքեր է պահանջում** խորագիրը: Զրույցի մասնակիցներն են Չորաթանի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Կ. Բաղմանյանը, Մովսես գյուղի կոլտնտեսության բրիգադավար Ա. Վանեսյանը, Ն. Կարմիրաղբյուրի կոլտնտեսության գլխավոր գյուղատընտես Ս. Փարսյանը, Պառավաքարի պետտընտեսության բրիգադավար Վ. Եսայանը և Վ. Կարմիրաղբյուրի կոլտնտեսության ֆերմայի վարիչ Ա. Ավագյանը:

Բերքահավաքի և կերի կուտակման օրերին շրջանի տնտեսություններում լայն տարածում է գտել Սարատովի մարզի ժողովրդական դեպուտատների նախաձեռնությամբ ծավալված «Պահպանենք ամբողջ աճեցրածը» շարժումը: **Ո՛չ միայն աճեցնել, այլև պահպանել ամբողջ բերքը** ընդհանուր խորագրի տակ Ծաղկավանի գյուղսովետի գործկոմի նախագահ Ս. Խաչատրյանը, շրջսովետի գործկոմի գյուղվարչության սերմնաբույծ-գյուղատնտես Կ. Ադամյանը, Վ. Կարմիրաղբյուրի կոլտնտեսական Ն. Մելյանը, Այգեձորի կոլտնտեսության նախագահ Ս. Բաբայանը պատմում են այն մասին, թե, հետևելով սարատովցիների օրինակին, ինչ են անում հոբելյանական տարվա բերքն արագ ու անկորուստ հավաքելու և պահպանելու համար:

Սակայն պետք է ասել, որ «Այգաբացը» դեռևս անբավարար է անդրադառնում այգեգործության վարման կուլտուրայի բարձրացման հարցերին, նրա էջերում չեն բացահայտվում այդ գործում նկատվող լուրջ թերությունները, ինչպես հարկն է չեն լուսաբանվում գյուղատնտեսության մասնագիտացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, գյուղերում բնակելի տների, ակումբների, կենցաղային ծառայության և այլ օբյեկտների շինարարության հետ կապված հարցերը: Նկատելի է քննադատական հոդվածների պակասը: Դա վերաբերում է հատկապես այգեգործության զարգացմանը, այդ ասպարեզում շրջանը նկատելիորեն զիջել է դիրքերը:

Նոր պահանջներին համապատասխան վերակառուցելով իր գործունեությունը՝ «Այգաբացի» խմբագրությունը պետք է ավելի խորությամբ ու գործիմացությամբ լուսաբանի այգեգործության և անասնապահության զարգացման հարցերը, որով մեծապես կօգնի շրջանային կուսակցական և սովետական կազմակերպություններին:

**ՀՐ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

# ԿԱՆՏԱՏ ԲԱՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿԻ

— Մեր տունը հրապարակից երկու քայլի վրա է, իմ ամենօրյա ճամփան է, գնանք ոտքով: Ինչպե՞ս կարելի է անընդհատ օգտվել տրանսպորտից,— ասաց Աստղիկ Դրամփյանը՝ լենինականցի իննսունամյա բժշկուհին, և վերցնելով պայուսակը՝ դուրս եկավ աշխատասենյակից, վերջին հանձնարարությունները տվեց բժիշկներին ու սկսեց քայլել, առանց սպասելու իմ պատասխանին:— Ժամանակին ինձ մեքենա էր սպասարկում,— կարծես ինքն իր հետ երկխոսելով քայլում էր նա,— դարձյալ չէի նստում: Պետք չէ խախտել մարդու բնական վիճակը: Եվ, այսպես, ոտքով աշխատանքի եմ գալիս, դեղեր էլ չեմ օգտագործում: Այո՛, ինչո՞ւ եք ծիծաղում, թեև բժշկուհի եմ, բայց դեղեր չեմ օգտագործում: Փորձում եմ հաղթահարել հիվանդությունը: Չեմ հոգնում, շատ քայլում եմ և, ամենակարևորը, անընդհատ չլուծված հարցեր ունեմ, անընդհատ կիսատ թողած գործեր: Օգնում եմ հիվանդներին, երիտասարդ բժիշկներին, տան գործն էլ, գիտեք, կնոջ համար անպակաս է: Գագիկին պետք է շուտով ամուսնացնեմ: Գագիկին գիտե՞ք: Ինչպե՞ս թե ոչ: Լենինականի պոլիտեխնիկական ինստիտուտի 5-րդ կուրսում է, ծոռս է. ի՜նչ տղա է, է՜... Հասնենք տուն, ես նրա գրադարանն ու գծագրերը ցույց կտամ:

Վերջապես անցանք «5 րոպեանոց» ճանապարհը, որ մի քանի կիլոմետր էր, և հասանք տուն...

— Ի՛րա, աղջիկս, այս ի՞նչ սփռոց ես գցել սեղանին: Փոխի՛ր, նորը գցիր, նո՜-րը...

Իրան համբուրեց մորը և հանգստացրեց.

— Ես ուզում էի փոխել սփռոցը, բայց չհասցրի, հիմա կփոխեմ:

Սփռոցը փոխվեց, տանտիրուհին հանգստացավ:

— Ա՛յ, այսպես, ապրում ենք. մեծ աղջիկս՝ Հասմիկը, Մոսկվայում է, մյուսը՝ Լիլիկը, Արթիկում: Նա էլ իմ ճանապարհով գնաց. մանկաբույժ է: Ունեմ թոռներ, ծոռներ, ինժեներնե՜ր, ուսանողնե՜ր, ուսուցիչնե՜ր: Գոհ եմ իմ ընտանիքից, բոլորը հիանալի երեխաներ են, ջերմ, իրար սիրող: Ե՛վ խելացի, և՛ բարի, և՛ շատ: Երբ տուն ես մտնում, պետք է քեզ դիմավորի մարդկային աղմուկը: Չեմ սիրում մենակություն: Երբ շատ մարդ է լինում, ուրեմն շատերի հետ ես հաղորդակցվում, տալիս նրանց քո փորձը, կիսում քո հոգսը: Դա հիանալի է: Ի՛րա, ի՞նչ ես հանգիստ նստել, դատարկ սփռոցը ի՞նչ պետք է անենք, սեղան բաց մարդավարի, Գագիկին գտիր, թող տուն գա, ասա հյուրեր ունենք, հյուրերին հյուրասիրիր: Այսօր մենք հյուր ունենք, մեզ համար իսկական տոն է:

Այդպե՛ս...

Իսկ նա ոչ մի երեխա չի ունեցել...

Հնկայածավալ լուսանկարից, որ արված է 1914 թվականին, մեզ է նայում Թիֆլիսի 3-րդ իգական գիմնազիայի շրջանավարտը՝ ճերմակ գոգնոցով, գեղեցիկ, ժպտադեմ հայացքով քսանմեկամյա Աստղիկը: Ծանր ժամանակներ էին: Խառը, անհասկանալի իրավիճակ: Էրիվանյան հրապարակից մի քանի քայլի վրա զորավարժություններ էին անում կազակները: Հայկական թերթերն ու հանդեսները կոչեր էին տպագրում կամավորական խմբեր ստեղծելու և արևմտահայերին զենքով, զորքով օգնելու. հարուստները հանգանակություն էին անում, աղքատները վիճում նրանց ժլատության շուրջը, հրապարակներում օր-օրին ավելանում էին գաղթականների խմբերը, իսկ բանաստեղծները հայրենասիրական ոտանավորներ էին գրում ի պաշտպանություն անապաստան եղբայրների...

Դամբարանային լռություն էր, սակայն, Սոլոլակում: Փակ դարպասներ, փակ փեղկերով պատուհաններ, լուռ բակեր: Կարծես ամենօրյա Թիֆլիսը չէր: Բեյբութովյան փողոցի հայկական առևտրական գիմնազիայի տղաներն այդ օրը արտակարգ ուրախ էին: Հիմա ուր որ է կհնչի զանգը, ու նրանք կշրջապատեն փողոցի սկզբին՝ գոթական ոճով կառուցված աղյուսե շենքը՝ 3-րդ իգական գիմնազիան, որտեղից դուրս կգան ուսմանը հրաժեշտ տվող քսանամյա աղջիկները: Նրանցից ամեն մեկը հանդիսավոր պարահանդեսից հետո կգտնի ընտրյալին ու, ով գիտե, ի՜նչ կընհրամցնի նրանց ճակատագիրը:

Ճակատագիրը Աստղիկին բերեց Մոսկվա՝ կանանց բժշկական ինստիտուտ: Ավարտեց 1917 թվականի մայիսին ու անմիջապես մեկնեց ռազմաճակատ. Տրապիզոն, Կարս... Ռուսական գործող բանակի բժշկուհի Աստղիկ Դրամփյանն ստացավ իր իսկական բժշկական մկրտությունը: Այստեղ, ռազմաճակատի թոհուբոհի մեջ, որքա՜ն պետք էին նրա աղջկական քնքշությունն ու անսահման բարությունը: Դա երբեմն զենքից էլ ուժեղ էր, դա ամեն օր մի փրկված կյանք էր նշանակում: Մոռացած հանգիստ ու մոսկովյան տաք բնակարանը, մոռացած անձնական վայելքներն ու անձնական երջանկություն, Աստղիկը ուրիշներին կյանքի էր վերադարձնում:

— Ի՞նչ բան է այդ անձնականը,— հիմա էլ անընդհատ կրկնում է նա,— որտե՞ղ է սկսվում, որտե՛ղ վերջանում,— ուզում է ընսպառիչ պատասխան գտնել, սահմանել երջանկության ֆորմուլան, բայց հիշողությունը, բժշկի մասնագիտական բնազդը, արածը վերապրելու ցանկությունը նրան կրկին ընկղմում են հիշողության ծովի մեջ...

1918 թվականն էր, ռուսական բանակը Կովկաս էր վերադառնում: Աստղիկը նորից Թիֆլիսում է, այս անգամ Արամյանցի հիվանդանոցում: Սակայն շուտով, հիվանդների սպասարկման ու խնամքի գործը բարելավելու նպատակով կազմակերպված գործադուլին մասնակցելու համար, նա հեռացվում է աշխատանքից:

Մոսկովյան բարձրագույն կրթության դիպլոմով բժշկուհուն գրկաբաց չընդունեցին և Երևանում:

— Բժշկի կարիք շատ կա, միջոցներ չկան,— ասացին նրան:

Երևանը մի հսկա գաղթավայրի էր վերածվել: Քաղաքում կազմակերպված բազմաթիվ որբանոցները տեղ չէին անում Արևմտյան Հայաստանից եկող քարավաններին: Սով, համաճարակ, անապահովություն: Թուրքական բանակն սպառնում էր Երևանին՝ հայոց վերջին հանգրվանին: Այդ խառը ու ողբերգական մթնոլորտում թեկուզ մեկ կյանք փրկելը հերոսություն էր, ժողովրդի ու հայրենիքի ապագայի մտահոգության կոնկրետ դրսևորում: Քսանհինգամյա Աստղիկն իր նախաձեռնությամբ սկսում է այցելել որբանոցից որբանոց, օգնել հիվանդներին, բուժել, ոտքի կանգնեցնել:

— Սարսափելի՜ է հիշելը: Դրանք երեխաներ չէին, այլ հյուծված, հիվանդ, խամրած աչքերով, անժպիտ ու անհույս շարժվող էակներ, որ ամեն մի այցելուի ու անծանոթի նայում էին օգնություն հայցող հայացքով:

Որբերի մեծ մասին տեղափոխեցին Ալեքսանդրապոլ: Այնտեղ մեկնեց և Աստղիկը: Նույն սարսափելի տեսարանն էր սպասում նրան և այստեղ: Որբերի թիվը հասնում էր տասնյակ հազարների: Քաղաքում չկար պարեն, վառելիք, հագուստ, դեղորայք: Ի՞նչ էր լինելու դրա վերջը, ո՞ւր էր տանում կյանքը այս խեղճ որբերին: Հուսահատ ու միայնակ Աստղիկ Դրամփյանը ինքն էլ կանգնած էր անորոշության ու երկընտրանքի առաջ: Ո՞ւր գնալ... Բոլոր ճամփաները անհույս էին թվում...

— Մի օր որբանոցից տուն էի վերադառնում,— շարունակեց պատմությունը, և այս անգամ դեմքը պայծառացավ, ոգևորվեց, փակեց հնաոճ լուսանկարների ալբոմը, հանեց ակնոցը, խնամքով դրեց սեղանին, զգուշորեն հրեց այն սեղանի եզրից ու...:

— Հա՛, պատրաստվում էի որբանոցից տուն վերադառնալ, մեկ էլ տեսնեմ մի աղջիկ մոտեցավ ինձ, բռնեց վերարկուիս փեշը և՝

— Ես ուզում եմ քեզ հետ տուն գալ:

Մենք տուն եկանք: Դա 1920 թվականի աշնանն էր: Նստեցինք, միասին որոշեցինք իր ծննդյան օրը, ճշտեցինք անունը: Այո՛, դա մեծ աղջիկս է՝ Հասմիկը: Երբ մի քանի օր հետո իմացա, որ նա որբանոցում եղբայր ունի, գնացի, որ նրան էլ տուն բերեմ: Սովից մահացել էր... Այդպես Հասմիկը կորցրեց եղբորը: Ամեն րոպե ինձ մամա էր ասում և ուրախանում: Տարիներ անցան, մեծացավ, լրջացավ Հասմիկը, մի օր էլ թե.

— Մամա, ես չեմ ուզում մենակ ապրել: Ինչքա՜ն որբեր կան, ինձ համար մի քույրիկ ճարիր:

Ծիծաղեցինք, բայց Հասմիկին մերժել չէի կարող. մենակ երեխան, գիտեք, վատ բնավորություն է ձեռք բերում, դառնում է ինքնամփոփ, եսասեր: Մի խոսքով, միասին գնացինք, որբանոցից տուն բերեցինք մի փոքրիկ աղջնակի. ո՛չ ազգ ուներ, ո՛չ անուն, ո՛չ հասցե. եկանք տուն. հավաքվեցինք երեքով և հենց իր՝ նորեկի ակտիվ մասնակցությամբ որոշեցինք անվանակոչել Լիլիկ: Անունը դուր եկավ: Այդպես մեծացան միասին Հասմիկն ու Լիլիկը:

— Իսկ ինձ երեք տարեկան հասակից է որդեգրել,— զրույցին միջամտում է Իրան:— Ես չորրորդն եմ, Գագիկը՝ հինգերորդը:

— Բա ինչպե՞ս կարելի է մենակ ապրել,— նորից զարմանում է Աստղիկ Դրամփյանը:

Նա կյանքում մենակ չմնաց և ո՛վ գիտե, գուցե ճակատագրական եղան նրա համար Հասմիկի «Ուզում եմ քեզ հետ տուն գալ» աղերսագին խոսքերը: Նման մարդիկ երբեք մենակ չեն մնում: Շռայլ բարությունը, որով լցվել է այս տունը, այս բնակարանը, վկայում է նրա տիրոջ՝ մեծ մայրիկի իսկական մեծ հոգու մասին: Վաթսուներեք տարի է արդեն, որ բժշկուհի Աստղիկն իր կյանքը կապել է Լենինականի հետ ու 63 տարի անընդմեջ ու այսօր էլ քաղաքի «գլխավոր տատմերն է»

նա, ինչպես սիրով ու երախտագիտությամբ կոչում են նրան լենինականցիները:

Հնչում է հեռախոսազանգը. կոլեգաներն են... Տմբտմբացնում է գլուխը Աստղիկ Դրամփյանը ու տղամարդու խստությամբ պատասխանում. «Արե՛ք ինչպես ես եմ ասել, ինքնագլուխ ոչ մի բան, կատարե՛ք իմ հանձնարարականները և նորից տեղյակ պահեք հիվանդի վիճակի մասին. պա՞րզ է»:

Դնում է ընկալիչը և նորից նույն բարի, խոհական, ակնոցի տակից կկոցած աչքերով նայող կինն է: Անկյուններում շարված հնաոճ կահ-կարասիի վրա զգացվում են խնամքոտ ձեռքի հետքերը: Ամենուր զարդատուփեր են, ծաղկամաններ, ալբոմներ ու գրքե՛ր... գրքե՛ր...

— Դա մի տոկոսն էլ չի իր ունեցածի,— շշնջում է ականջիս տեղացիներից մեկը:

Լենինականում նոր էր ստեղծվել քաղաքային գրադարանը: Գրադարանը կար, հաստիքներ կային, գրքեր համարյա չկային: Աստղիկ Դրամփյանը մի քանի հարյուր կտոր գեղարվեստական գրականություն նվիրեց գրադարանին:

— Այդպե՞ս է,— ուզում եմ ճշտել լսածս ու հարցնում եմ բժշկուհուն:

— Ո՞վ է ձեզ պատմել այդ մասին,— վրդովվում է նա: Ախր այնպիսի՜ մանրուք է:

Լենինականի բժշկական ուսումնարանում մասնագիտական գրականության կարիք էր զգացվում: Աստղիկ Դրամփյանը մի ավտոմեքենա մասնագիտական գրքեր, հանդեսներ նվիրեց ուսումնարանի գրադարանին:

— Այդպե՞ս է,— կրկնում եմ հարցս ու նույն պատասխանը.

— Դե՛, դա մանրո՜ւք է, կարևորություն մի՛ք տա:

Քաղաքում միջոցներ են հավաքվում խաղաղության ֆոնդի համար: Ու դարձյալ առաջինների շարքում է նա, նվիրում է իր մեկամսյա համեստ աշխատավարձը:

— Այդպե՞ս է,— ժպտում եմ ու չսպասելով արդեն որերորդ անգամ կրկնվող պատասխանին, նորանոր հարցեր եմ տալիս: Ու նույն պատասխանը՝ մանրո՜ւք է:

**ՓՈՐՁԻՐ ԱՊՐԵԼ ԱՅԴՊԵՍ ԱՄԲՈՂՋ ԿՅԱՆՔՈՒՄ:** Կատարիր թեկուզ մանր թվացող զոհողություններ ու բարություններ, այդ բոլորը հավաքիր հատիկ-հատիկ, ինչպես գեղեցիկ մի մարգարտաշար: Հավաքիր հենց այնպես, քեզ համար, քո խղճի համար, քո սեփական կենսագրության համար: Ու երբ կանցնեն 90 տարիները, դու կզգաս, որ զուր չես ապրել ու որ դու դեռ էլի պետք ես աշխարհին, մարդկանց ու կյանքին: Ախր դեռ էլի որքա՜ն մանրուքներ կան, որ քեզ են սպասում: Եվ պիտանիության այդ զգացումն է, որ թոթափում է տարիների բեռը, հաղորդում մարդուն ապրելու կորով, նոր ուժ ու եռանդ:

Դա է հաղթանակը՝ իսկական բարության հաղթանակը:

ՎԼԱԴԻՄԻՐ ՄՈՒՐԱԴՅԱՆ




Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 24.01.83 թ.: Ստորագրված է տպագրության՝ 15.02.83 թ.: ՎՖ 06743: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16000: Պատվեր՝ 259:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении. Ереван-23. пр. Орджоникидзе, 2